Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5 ՄԱՅԻՍ · 1965
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении



## Բովանդակություն



---

# Содержание




ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար


# ՄԵՐ ՀՐԱՏԱՊ ԵՎ ԱՆՀԵՏԱՁԳԵԼԻ ԽՆԴԻՐԸ

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումը, որը հանգամանորեն քննարկեց մեր երկրի գյուղատնտեսության զարգացման անհետաձգելի միջոցառումների հարցը, անկասկած, կարևոր իրադարձություն է ինչպես պարտիայի, նույնպես և ամբողջ ժողովրդի կյանքում: Այն ունի տնտեսական ու քաղաքական մեծ նշանակություն և ամբողջովին բխում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման՝ պարտիայի ծրագրի պահանջից:

Սովետական ժողովրդի կենսամակարդակի և բարեկեցության անընդհատ բարելավումը հրամայաբար թելադրում է գյուղատնտեսության զարգացման այնպիսի տեմպեր, որոնք իրոք կապահովեն պարտիայի առջև դրված այդ կենսական խնդրի լիակատար լուծումը: Գյուղատնտեսության անընդհատ վերելքը մեզ համար թե՛ կենսական և թե հրատապ խնդիր է: Ուստի և հասկանալի է այն առանձնահատուկ հոգատարությունը, որ ցուցաբերում է մեր պարտիայի Կենտրոնական կոմիտեն այդ պրոբլեմի իրական լուծման նկատմամբ: Առանց գյուղատնտեսության բավարար զարգացման հնարավոր չէ հաջողությամբ ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազան:

Ահա թե ինչու ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի նախագահությունը Կենտկոմի անցյալ տարվա հոկտեմբերյան և նոյեմբերյան պլենումներից հետո բազմակողմանիորեն մշակեց և պլենումի քննարկմանը դրեց երկրի գյուղատնտեսության զարգացման հանգուցային հարցերը: Ահա թե ինչու անցած վեց ամիսները պետք է գնահատել որպես Կենտկոմի և մեր ամբողջ պարտիայի ստեղծագործական լարված գործունեության ժամանակաշրջան:

Հիրավի, նշված ժամանակամիջոցում կազմակերպական ու քաղաքական լուրջ աշխատանք ծավալվեց անցյալում մեր տնտեսական և հասարակական գործունեության ասպարեզներում տեղ գտած սխալներն ուղղելու և ղեկավարման գործում պարտիական ու սովետական օրգանների դերն ավելի բարձրացնելու ուղղությամբ: Այդ առումով պետք է նշել, որ, ՍՄԿՊ կանոնադրության համապատասխան, պարտիական օրգանների կառուցվածքի, ինչպես նաև սովետական, արհմիութենական և կոմերիտական միասնական օրգանների վերահաստատումը՝ լիակատար հնարավորություն է ընձեռում առավել հաջողությամբ լուծելու պարտիայի նախագծած մեծ խնդիրները:

Ուստի և բնական է այն փրոդուրմը, երբ երկրի բոլոր պարտիական
կազմակերպությունները միահամուռ հավանությամբ և գոհունակությամբ
ընդունեցին մեր պարտիայի Կենտկոմի ինչպես հոկտեմբերյան ու նոյեմբեր-
յան, նույնպես և մարտյան պլենումի որոշումները։ Գաղտնիք չէ, որ վերջին
տարիներում կոմունիստները ոչ միայն զգում, այլև հասկանում էին, որ պար-
տիական օրգանների կառուցման տերիտորիալ սկզբունքի խախտումը ամե-
նուր բազմաթիվ լուրջ հակասություններ էր հարուցել պարտիական և տնտեսա-
կան օրգանների գործունեության ոլորտում, նկատելիորեն նսեմացրել պար-
տիայի ղեկավար դերը մեր ամբողջ հասարակական կյանքում։
Այժմ ամենուրեք վերջ է տրված այդ վնասակար խառնաշփոթությանը։
Պարտիան, լիակատար պարզություն մտցնելով իր գործունեության կազմա-
Պարտիան, լիակատար պարզություն մտցնելով իր գործունեության կազմա-
կերպական ոլորտում, անկասկած, ստեղծեց բոլոր օբյեկտիվ պայմանները
ինչպես իր, նույնպես և արհմիութենական ու կոմերիտական օրգանների ար-
դյունավետ գործունեության համար։ Կազմակերպական այս լուրջ քայլին հե-
տևեց ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումը՝ երկրի գյուղատնտեսու-
թյան զարգացման անհետաձգելի հարցերը լուծելու մասին։ Աներկբա է, որ
պլենումի որոշումը խորապես արտացոլում է երկրի ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման ուղղությամբ մեր պարտիայի իրական ձգտումներն ու մտո-
րումները։
Բացառիկ գործարարության, սկզբունքային ու կոնկրետ քննարկման մթ-
նոլորտում ընդունած իր որոշումներով ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումը,
անկասկած, ճիշտ կերպով սահմանեց այն ուղիները և մեթոդները, որոնց կի-
րառմամբ երկիրը մոտակա տարիներին մեծ չափով կբարելավի աշխատավո-
րության կենսամակարդակը և արդյունաբերությունը կապահովի պահանջվող
հումքով։ Անցյալում թույլ տրված սուբյեկտիվ բնույթի սխալները բավակա-
նին թանկ նստեցին ժողովրդական տնտեսության զարգացման վրա։ Կենտ-
կոմի պլենումը ամենայն շիտակությամբ ու հետևողականությամբ բացահայ-
տեց այդ սխալներն ու թերությունները և միաժամանակ նշեց դրանց հաղթա-
հարման կոնկրետ ելքը։
Հիրավի, վերցնենք թեկուզ մեր երկրում գործող գյուղատնտեսական
մթերքների գնման գների հարցը։ Չէ՞ որ իրականում հացահատիկի գնման
գներն ամենևին չէին ծածկում դրա արտադրական ծախսերը։ Նույնպիսի էա-
կան անհամամասնություններ գոյություն ունեին անասնաբուծության բնա-
գավառում։ Ստացվում էր այնպես, որ այն կոլտնտեսություններն ու սովխոզ-
ները, որոնք համեմատաբար շատ միս էին արտադրում ու վաճառում պետու-
թյանը, ավելի մեծ վնաս էին կրում։ Հետևաբար մսի գնման գները փոխանակ
նպաստելու արտադրության ընդլայնմանը, գնալով նեղացնում էին դրա սահ-
մանները։
Ինչ խոսք, որ տնտեսավարման այս եղանակը հիմնովին հակասում է սո-
ցիալիստական տնտեսության ընդլայնված վերարտադրության և համամաս-
նական զարգացման օրենքներին։ Այդպիսի անհամամասնություն գոյություն
ուներ նաև մեր ռեսպուբլիկայում։ Այսպես, օրինակ, միայն անցյալ տարի
ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների՝ պետությանը վաճառած հացահատիկի
և անասնապահական մթերքների վաճառքից կրած վնասը կազմում է 6,7 մի-
լիոն ռուբլի, իսկ սովխոզներինը՝ ավելի քան մեկ միլիոն ռուբլի։ Դրա հետևան-
քով վերջին տարիներս մեր ռեսպուբլիկայում ևս նկատելիորեն նվազեցին խո-



շոր եղջերավոր անասունների ու ոչխարների գլխաքանակի աճման տեմպերը.
զգալիորեն պակասեց նաև խոզերի գլխաքանակը։ Եթե 1958 թվականին, 1954
թվականի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն
ավելացել էր մոտ 22 տոկոսով, ապա անցյալ տարի, 1958 թվականի համեմա-
տությամբ, աճը կազմում է ընդամենը մեկ տոկոս։ Իսկ ոչխարների ու այծերի
գլխաքանակի աճը, համապատասխանաբար 46,5 տոկոսից իջավ 10 տոկոսի։
Պետք է նշել, որ վերջին տարիներում շոշափելիորեն նվազել է նաև անա-
սունների մթերատվությունը։ Իսկ որոշ շրջաններում դրությունն ավելի վատ
է։ Օրինակ, Աշտարակի շրջանում անցյալ տարի, 1958 թվականի համեմատու-
թյամբ, ցանքատարածությունները կրճատվեցին 26,5, իսկ խոշոր եղջերավոր
անասունների գլխաքանակը՝ 10 տոկոսով։ Այստեղ գործերը վատ են նաև ոչ-
խարաբուծության ու խոզաբուծության ասպարեզում. շրջանի կոլտնտեսու-
թյուններում ու սովխոզներում բոլորովին վերացվեցին խոզաբուծական ֆեր-
մաները։ Նույնպիսի անմխիթար վիճակում են այսօր նաև Գուգարքի ու մի
քանի այլ շրջանների անասնաբուծությունն ու դաշտավարությունը։
ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումում հատկապես ընդգծվեց այն հան-
գամանքը, որ վերջին տարիներում գյուղատնտեսական արտադրության ոլոր-
տում խախտված էր նյութական շահագրգռվածության կարևորագույն սկզբուն-
քը, որի հետևանքով տնտեսության բազմաթիվ ճյուղերում մենք ականատես
ենք ինչպես արտադրության միջոցների վատ օգտագործման, նույնպես և աշ-
խատանքի արտադրողականության անբավարար աճի։ Բավական է ասել, որ
1958 թվականի համեմատությամբ, նկատելիորեն կրճատվեց մեկ ընտանիքին
հասնող հացահատիկի և կաթնամթերքների չափը։ Պարզ է, որ տնտեսության
զարգացման այս վճռական գործոնի անբավարար կիրառումը, իսկ որոշ տեղե-
րում ուղղակի անտեսումը, իր բացասական կնիքը դրեց գյուղատնտեսական
արդյունքների արտադրության վրա։
Մեր երկրում անասնապահության ետ մնալու գլխավոր պատճառն
այն է, որ տակավին թույլ է կերի կայուն բազայի ստեղծման ուղղությամբ
տարվող աշխատանքը։ Մեր ռեսպուբլիկայում խիստ ետ է մնում ոչ միայն
դաշտային, այլև արոտամարգագետնային կերի արտադրությունը։ Մինչդեռ
վերջինս մեզ մոտ եղել և մնում է անասնաբուծության զարգացման գլխավոր
ու հաստատուն բազան։ Դժբախտաբար, արոտավայրերն ու խոտհարքներն ան-
տնտեսվար օգտագործելու հետևանքով, վերջին տարիներս ակնհայտորեն վա-
տացել է դրանց վիճակը և հսկայական տարածություններ արդեն վարակված
են անպետք ու վնասակար բույսերով՝ մոլախոտերով։ Մյուս կողմից, ռես-
պուբլիկայի մշակվող հողերի մի շոշափելի մասը ենթարկվել է էռոզիայի, որը
խիստ անթույլատրելի է մեր ռեսպուբլիկայի սակավահողության պայմաննե-
րում։ Բարձիթողի վիճակում են գտնվում Գեղամա, Արագածի, Զանգեզուրի և
Ալրիջայի ընդարձակ արոտավայրերն ու մարգագետինները։
Սխալ կլիներ գյուղատնտեսության անբավարար զարգացումը բացատրել
միայն տնտեսական օրենքների պահանջների, հասարակական և անձնական
շահերի զուգորդման սկզբունքների և այլ գործոնների խախտմամբ։ Իրակա-
նում դրանց հետ մեկտեղ, գյուղատնտեսության մեջ մեր հաջողությունները
մեծ չափով պայմանավորված են նաև պարտիական, սովետական ու գյուղա-
տնտեսական օրգանների գործունեությամբ։ Մինչդեռ այդ օրգանները բնավ
էլ լրիվ չեն օգտագործել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավե-

լացման ռեալ հնարավորությունները։ Այս իմաստով մեր աշխատավորության
առջև բարոյական պատասխանատվություն են կրում այն կոլտնտեսություն-
ների ու սովխոզների ղեկավարները, ինչպես նաև գյուղատնտեսության մի
շարք այնպիսի ղեկավար աշխատողներ, որոնք անտնտեսավարություն են
ցուցաբերել իրենց գործունեության ընթացքում։
Ինչպես ընդգծվեց ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումում, մեր կոլտնտե-
սությունների ու սովխոզների նյութատեխնիկական բազան ետ է մնում
գյուղատնտեսության զարգացման առջև ծառացած խնդիրների լուծման բարդ
պահանջներից։ Չնայած սոցիալիստական գյուղատնտեսության տեխնիկական
խոշոր զինվածությանը, այսօրվա մեր աշխատավորության կենսամակարդակի
բարձրացման համար, համենայն դեպս, այդ բազան անբավարար է։ Դրա հետ
մեկտեղ, պետք է նշել, որ ՄՏԿ-ների չհիմնավորված և վաղաժամ վերակառու-
ցումն ավելի խարխլեց գյուղատնտեսական մեքենաների նորոգման տեխնիկա-
կան բազան։ Դրանից հետո ՄՏԿ-ների սարքավորված արհեստանոցների մի
մասը ցաքուցրիվ եղավ, նրանց շենքերը դարձան զանազան պահեստներ, կամ
օգտագործվեցին երկրորդական կարիքների համար։ Այդ միջոցառման հետե-
վանքով մեր գյուղատնտեսությունը լուրջ վնասներ կրեց։
Սակայն այս հարցի մի կողմն է։ Բացի դրանից, վերջին տարիներին մեծ
չափով իջել է գյուղատնտեսական մեքենաների արտադրողականությունը՝
դրանց վատ շահագործման և անբավարար նորոգման պատճառով։ Չնայած այն
հանգամանքին, որ վերջին յոթ տարիներում կրկնապատկվել է ռեսպուբլիկա-
յի գյուղատնտեսության մեքենա-տրակտորային պարկը (ուժային կարողու-
թյամբ), բայց և այնպես մեքենայացված աշխատանքների ծավալը այդ ժա-
մանակամիջոցում ավելացել է միայն 24 տոկոսով, մինչդեռ տրակտորների
հերթափոխային արտադրողականությունը նվազել է գրեթե երկու անգամ։
Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրության ներկա բազայի անբավա-
բար վիճակը թելադրում է բոլորիս ո՛չ միայն լուրջ մտածել, այլև գործնական
միջոցներ ձեռնարկել դրությունն արագ բարելավելու համար։ Ուսումնասիրու-
թյունը ցույց է տալիս, որ ռեսպուբլիկայի մոտ 300 կոլտնտեսություններ այժմ
ի վիճակի չեն ձեռք բերելու գյուղատնտեսական մեքենաներ, ինչպես և ապա-
հովելու դրանց հերթական նորոգումը։
Ո՞րն է ելքը։ Ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի վերջին պլենումի որոշումից, մենք
պետք է կարճ ժամանակամիջոցում կազմակերպենք մեքենաշահագործական
կամ մեքենավարձակալական կայաններ՝ տնտհաշվարկի հիմունքներով։ Այս
կայանները պայմանագրային հիմունքներով հնարավորություն կընձեռեն կոլ-
տնտեսություններին՝ ծավալելու աշխատանքների մեքենայացումը, որի
շնորհիվ զգալիորեն կբարձրանա գյուղատնտեսական մեքենաների արտադրո-
ղականությունը։ «Հայգյուղտեխնիկա» ռեսպուբլիկական միավորումն այս
ուղղությամբ արդեն լուրջ քայլեր է արել։ Այժմ պետք է հասնել այն բանին,
որ առաջիկայում լրիվ ծանրաբեռնվածությամբ աշխատեն գյուղատնտեսու-
թյան մեջ գտնվող բոլոր մեքենաները և առավելագույն չափով բարձրացվի
դրանց օգտագործման գործակիցը։ Առանց այս միջոցառման դժվար է հասնել
գյուղատնտեսական արդյունքների ինքնարժեքի շոշափելի իջեցման։
Եթե մեզ հաջողվի առաջիկա մի քանի տարում գյուղատնտեսական ար-
տադրության մեջ պատշաճ չափով կիրառել էլեկտրաէներգիան և դրա հետ
միասին գյուղատնտեսությունն ապահովել մեխանիզատորների, ինժեներների



ու տեխնիկների բարձրորակ կադրերով (որը գլխավորն է), ապա մոտակա տա-
րիներին, հիրավի, պատվով կկիրագործենք պարտիայի Կենտկոմի մարտյան
պլենումի որոշումները՝ գյուղատնտեսությունը կբարձրացնենք կոմունիստա-
կան հասարակարգի կառուցման պահանջների ռեալ մակարդակին։
Այստեղից էլ բխում է գյուղը մասնագիտական լավագույն կադրերով ա-
պահովելու հրամայական պահանջը, որի կենսագործումը ռեսպուբլիկայի
գյուղատնտեսության մինիստրության և «Հայգյուղտեխնիկայի» միավորման
անմիջական պարտականությունն է։ Այս առումով ժամանակն է լրացուցիչ
միջոցներ ձեռք առնելու, որպեսզի միջնակարգ ու բարձրագույն գյուղատնտե-
սական կրթության հաստատությունները մեր կոլտնտեսություններն ու սով-
խոզները լիովին ապահովվեն բարձրորակ մասնագետներով։
Գյուղատնտեսության զարգացման արդի էտապի կարևորագույն խնդիր-
ներից մեկն էլ սովխոզներում ու կոլտնտեսություններում ընդհանուր տնտե-
սական և ներտնտեսական հաշվարկի արմատավորումն է։ Այժմ տնտհաշվար-
կի սկզբունքները վատ են կիրառվում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության
ոլորտում։ Եվ բուն տնտհաշվարկի, ռուբլով վերահսկողության բացակայու-
թյամբ պետք է բացատրել նաև մեր սովխոզների, հատկապես, անասնապա-
հական սովխոզների վնասաբերությունը։ Կասկածից վեր է, որ տնտեսական
այդ լուրջ միջոցառման հետևողական կիրառումը մեծապես կնպաստի գյու-
ղատնտեսական արտադրանքի ավելացմանը։ Սրա հետ մեկտեղ, մեր
գյուղատնտեսության զարգացմանը մեծ չափով կնպաստեն ՍՄԿՊ Կենտկոմի
մարտյան պլենումի որոշմամբ սահմանված գյուղատնտեսական մթերքների
գնման բարձր գները։ Սովետական պետության՝ այս ճանապարհով գյուղա-
տնտեսությանը ցույց տված խոշորագույն օգնությունը պետք է խելացի օգտա-
գործեն գյուղատնտեսության ասպարեզի մեր կադրերը։
Այժմ արդեն ստեղծվում են բոլոր պայմանները, որպեսզի առաջիկայում
կոլտնտեսություններն ու սովխոզներն իրականում իրենք որոշեն ցանքատա-
րածությունների կառուցվածքը, ցանքաշրջանառության եղանակները, միջո-
ցառումներ մշակեն անասնաբուծությունն արագ զարգացնելու և տնտեսության
բոլոր ճյուղերում համարձակորեն կիրառեն գիտության, ինչպես և առաջավոր
փորձի նորագույն մեթոդները։ Միայն այդ ճանապարհով մեր կոլտնտեսու-
թյուններն ու սովխոզները կդառնան իսկապես եկամտաբեր ու շահութաբեր և,
դրա հետ մեկտեղ, իրոք հնարավոր կլինի լուծել աշխատավորների նյութական
շահագրգռվածության հարցը, ավելացնել մթերքների արտադրությունը՝ իջեց-
նելով դրանց ինքնարժեքը։
Արմատական և խոշոր քաղաքական նշանակություն ունեցող վերոհիշյալ
հարցերի հետ միասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը խնդիր դրեց՝ ամենամոտ
ժամանակներում հրաժարվել սովխոզներին տրվող կապիտալ ներդրումների և
դոտացիաների բաշխման ներկա կարգից և անցնել լրիվ տնտհաշվարկի։ Գյու-
ղատնտեսության մինիստրությունը և ֆինանսական օրգանները պետք է կոնկ-
րետ օգնություն ցույց տան շրջաններին՝ լուծելու այդ բարդ խնդիրները։ Միա-
ժամանակ հարկավոր է հասնել այն բանին, որ մոտակա երկու-երեք տարում
ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսություններն արմատավորեն ներտնտեսական
հաշվարկը։ Ժամանակն է, որ պարտիական ու պետական օրգանները յուրա-
քանչյուր կոլտնտեսության ու սովխոզի տնտեսական գործունեության գնա-

հատման օբյեկտիվ չափանիշը համարեն տվյալ տնտեսության բարձր եկամտաբերությունն ու շահութաբերությունը:

Գյուղատնտեսության արագ զարգացման կարևորագույն պրոբլեմներից է հողի ռացիոնալ օգտագործումը, որից մեծ չափով կախված է գյուղատնտեսության արագ վերելքը: Մինչդեռ այս ասպարեզում մեր ռեսպուբլիկայում կան խոշոր թերություններ: Այսուհետև չպետք է անտնտեսավար օգտագործման հետևանքով դուրս գրվեն զգալի հողատարածություններ: Ընդհակառակը, մենք պետք է տնտեսական ու տեխնիկական բոլոր միջոցները գործադրենք՝ վերացնելու մեր հողերի զգալի մասի էռոզիան: Անհանդուրժելի է, երբ ռեսպուբլիկայի 250 հազար հեկտար ոռոգելի հողատարածությունից, յուրաքանչյուր տարի մոտ 40 հազար հեկտարը չի օգտագործվում: Մինչդեռ փոքր ծախսեր կատարելով հնարավոր կլիներ լրիվին օգտագործել նշված տարածությունը: Հետևաբար, անհրաժեշտ է ամենայն խնամքով և գիտության պահանջների համեմատ օգտագործել մեր հողերի անփոխարինելի ոսկե ֆոնդը:

Կենտկոմի պլենումը բացահայտեց մեր կոլտնտեսությունների ու սովխոզների ֆինանսավորման ու վարկավորման գործի անկանոն վիճակը և, հատկապես, մի շարք տնտեսությունների ֆինանսական ծանր դրությունը: Այդ իսկ նկատառումով, գյուղատնտեսության հետագա արագ զարգացման շահերից ելնելով, պլենումը անհրաժեշտ գտավ դուրս գրել մի շարք կոլտնտեսությունների ու սովխոզների պետության պարտքը, իսկ որոշ մասի համար երկարաձգեց վճարման ժամկետը: Այս միջոցառումը ևս լուրջ օգնություն է պետության կողմից՝ գյուղատնտեսական արտադրությունը ճիշտ կազմակերպելու և աշխատանքի արտադրողականությունը պահանջվող չափով բարձրացնելու համար: Դրա հետ միասին առաջիկայում պետք է լրջորեն կարգավորել կոլտնտեսությունների հարկման սիստեմը, հիմք ընդունելով կոլտնտեսության մաքուր եկամուտը և ոչ թե համախառն արտադրանքը, որպեսզի ետ մնացող կոլտնտեսություններն իրենց զարգացման մակարդակով կարողանան հետագայում հավասարվել առաջավորներին:

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը իրավամբ նշեց, որ գյուղատնտեսական արտադրության արագ զարգացման գլխավոր ազդակը, ընդհանուր մի շարք գործոնների հետ միասին, գյուղատնտեսական արտադրության աշխատողների անձնական շահագրգռվածության բարձրացումն է: Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մինիստրությունը, նրա գիտական հիմնարկները պետք է ընդհանրացնեն եղած առաջավոր փորձը և դրա հիման վրա մշակեն թե՛ կոլտնտեսականների և թե սովխոզների բանվորների նյութական շահագրգռվածության առավել կատարյալ ձևեր: Ժամանակն է՝ Կենտկոմի պլենումի որոշումներին համապատասխան մշակել և արմատավորել կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության տարեկան կամ ամենամսյա երաշխավորված սիստեմ: Այս նպատակով կոլտնտեսություններում պետք է ստեղծել համապատասխան հասարակական ֆոնդեր:

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը պարտկազմակերպությունների ուշադրությունն է հրավիրում այն փաստի վրա, որ տեղերում հաճախ խախտվում է կոլտնտեսային դեմոկրատիան: Մեր ռեսպուբլիկայում ևս եղել են գյուղատնտեսական արտելի դեմոկրատական հիմունքների կոպիտ խախտման մի շարք դեպքեր: Կոլտնտեսությունների առանձին ղեկավարներ հաճախ անտեսում են կոլտնտեսականների ընդհանուր ժողովների նշանակությունը, այդպի-



սիք հազվադեպ են գումարում, իսկ երբեմն էլ իրենք են կատարում ժողովների ֆունկցիաները. կոլտնտեսականների իրավունքների անտեսումը կամ ոտնահարումը հիմնովին հակասում է կոլտնտեսային կարգի սկզբունքներին:

Կյանքը ցույց է տալիս, որ այժմ գործող գյուղատնտեսական արտելի կանոնադրությունը մեծ մասամբ հնացել է և արդեն հակասում է մեր առջև ծառացած խնդիրներին: Ուստի, Կենտկոմի մարտյան պլենումը հանձնարարեց մշակել գյուղատնտեսական արտելի նոր օրինակելի կանոնադրության նախագիծ, որն առավել բազմակողմանի պետք է արտացոլի կոլտնտեսային արտադրության և գյուղի ժամանակակից հասարակական կյանքի նոր հարաբերությունները: Այդ կանոնադրությունը քննարկման կդրվի կոլտնտեսականների երրորդ համագումարում, որը նախատեսված է հրավիրել 1966 թվականին:

Կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական զարգացումն ապահովելու և գյուղատնտեսական արտադրության աշխատավորների կենսամակարդակը բարձրացնելու նպատակով ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը սահմանեց գյուղատնտեսական մթերքների մթերման նոր գներ և, որ կարևորն է՝ տևական ժամանակաշրջանի համար. բոլոր կոլտնտեսությունները և սովխոզներն այժմ ստանում են մթերվող արդյունքների վեց տարվա հաստատուն պլան, որը կարգ ու կանոն կմտցնի տնտեսավարման ոլորտում: Դաշտավարության և անասնաբուծության հիմնական մթերքների պետական գների բարձրացումը ռեալ հնարավորություններ կընձեռի սովխոզներին ու կոլտնտեսություններին՝ զուգորդելու համապետական և ներտնտեսական շահերը:

Հացահատիկային և անասնապահական հիմնական մթերքների գնման նոր գները սահմանված են, հաշվի առնելով մեր անծայրածիր երկրի տարբեր գոտիների առանձնահատկությունները: Բացի այդ, ՍՍՌՄ-ում այս տարվա հացահատիկի գնումների ավելի վաղ հաստատված պլանը նվազեցված է 600 միլիոն փթով: Մեր ռեսպուբլիկայի հացահատիկի հանձնման այս տարվա պլանը պակասեցված է երեք անգամ: Մինչև 1970 թվականը ռեսպուբլիկան յուրաքանչյուր տարի պետությանը վաճառելու է 20 հազար տոննա հացահատիկ: Մեկ տոննա հացահատիկի նախկին արժեքի՝ 78 ռուբլու փոխարեն, այսուհետև պետությունը գնելու է 90 ռուբլով: Այն կոլտնտեսություններն ու սովխոզները, որոնք պլանից դուրս պետությանը հավելյալ ցորեն և հացահատիկային այլ կուլտուրաներ կհանձնեն, յուրաքանչյուր տոննայի դիմաց՝ լրացուցիչ վարձ կստանան գնման գնի կեսի չափով:

Կենտկոմի պլենումի սահմանած մթերումների պլանի նվազեցումը թույլ կտա մեծ քանակությամբ հացահատիկ թողնել կոլտնտեսությունների և սովխոզների տրամադրության տակ՝ սեփական պահանջմունքների բավարարման և որպես անասնակեր օգտագործելու համար:

Պարտիան ելնում է այն բանից, որ մթերումների և մթերման գների սահմանման նոր կարգը ռեալ հնարավորություններ կընձեռի դաշտավարության և անասնաբուծության նորմալ զարգացման համար: Կենտկոմի պլենումի որոշմամբ սահմանված է նաև անասնապահական մթերքների գնման հաստատուն պլան՝ 5 տարվա համար: Հաշվի են առնված տնտեսությունների զարգացման հեռանկարները, նրանց մասնագիտացումը և յուրաքանչյուր գոտու առանձնահատկությունները: Ըստ որում, պակասեցված է նաև անասնաբուծական մի շարք մթերքների գնման պլանը: Այս նոր միջոցառմանը համապատասխան կոլտնտեսություններում ու սովխոզներում գործող գնման և մթերման գների

հավելումները կկազմեն՝ խոշոր եղջերավոր անասուններինը՝ 20—55, խոզերինը՝ 30—70, ոչխարներինը՝ 10—70 տոկոս, իսկ լեռնային շրջաններում՝ մինչև 100 տոկոս։

Նախնական հաշվարկումների համաձայն արդեն այս տարի, պետությանը հացահատիկի և մսի վաճառքի համար սահմանված պլանները կատարելու դեպքում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները լրացուցիչ կստանան ավելի քան 23 միլիոն ռուբլի։ Բացի այդ, արդյունաբերական ու պարենային ապրանքների գների համահարթման շնորհիվ, ռեսպուբլիկայի գյուղի աշխատավորությունը տարեկան կշահի ավելի քան 5 միլիոն ռուբլի։

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների ճիշտ կիրառումը հնարավորություն կընձեռի բազմակողմանիորեն հաշվի առնելու տեղական առանձնահատկությունները, նախապես սահմանելու ցանքատարածությունների կառուցվածքը, վերականգնելու խախտված ցանքաշրջանառությունը, տնտեսության բոլոր ճյուղերում համարձակորեն ներդնելու գիտության և առաջավոր փորձի ստուգված արդյունքները և, այդպիսով, հասնելու գյուղատնտեսական արտադրության բարձր վերելքի։

Հանուն այդ վերելքի, Կենտկոմի պլենումը նախատեսեց ամբողջ գյուղատնտեսության տեխնիկական բազայի նշանակալից ընդլայնում և ամրապնդում։ Որոշված է մեծ չափով ավելացնել տրակտորների, կոմբայնների, ավտոմեքենաների և գյուղատնտեսական տեխնիկայի արտադրությունը՝ բարելավելով դրանց որակը։ Արտադրության վերելքի, նրա մասնագիտացման և գյուղատնտեսության հետևողական ինտենսիվացման խնդիրները հաջողությամբ լուծելու նպատակով՝ Կենտկոմի պլենումը որոշեց խոշոր չափով ավելացնել կապիտալ ներդրումները գյուղատնտեսության մեջ։ Նոր հնգամյա պլանով գյուղատնտեսության մեջ ներդրվելու է 71 միլիարդ ռուբլի։ Առաջիկա հինգ տարում երկրի կապիտալ ներդրումները գյուղատնտեսության բնագավառում կկազմեն այնքան, որքան ներդրվել է հետպատերազմյան 19 տարիներում։

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումը հատկապես ընդգծեց քիմիական արդյունաբերության մեծագույն դերը գյուղատնտեսության զարգացման գործում։ Այդ նկատառումով միջոցառումներ են մշակվում բարձրորակ հանքային պարարտանյութերի, թունաքիմիկատների, հերբիցիդների արտադրության ու մատակարարումների տեմպերն արագացնելու համար։

Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների մեջ հատուկ տեղ է գրավում ոռոգման պրոբլեմը։ Նախատեսվում է առաջիկա հնգամյակում ոռոգել ավելի քան երեք միլիոն հեկտար տարածություն և չորացնել 6 միլիոն հեկտար ճահճուտ։ Համեմատության համար ասենք, որ առաջիկա հնգամյակում ոռոգվող հողերը և ճահճուտները բարեբեր դարձնելու ուղղությամբ ավելի շատ գործ կարվի, քան վերջին քսան տարում։ Այս նշանակում է, որ գյուղատնտեսությունը կունենա զարգացման նոր ռեզերվներ։

Մենք համոզված ենք, որ ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի ծրագրային միջոցառումների կենսագործումը, անտարակույս, հնարավորություն կտա կազմակերպորեն և տնտեսապես հիմնովին ամրապնդելու կոլտնտեսություններն ու սովխոզները, բարձրացնելու գյուղական աշխատավորների կենսամակարդակը և անընդհատ ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Անչափ մեծ է կոմունիստական պարտիայի և նրա կադրերի ղեկավար դերը



տնտեսական շինարարության և ամբողջ աշխատավորության կուլտուրական մակարդակի բարձրացման մեծ խնդիրների լուծման գործում։ Կենտկոմի մարտյան պլենումում առաջադրված խնդիրների հաջող լուծման համար պահանջվում է պարտիական և սովետական օրգանների կազմակերպական, քաղաքական ու տնտեսական գործունեության առավել կատարելագործում և ուժերի մաքսիմում լարում։ Ճիշտ է որ այժմ բարենպաստ պայմաններ են ստեղծվում գյուղատնտեսության նորմալ զարգացման համար, բայց գործի հաջողությունը պայմանավորված է բացառապես ղեկավարման մակարդակով, նրանով, թե պարտիական կազմակերպություններն ինչպիսի եռանդով ու հմտությամբ կմոբիլիզացնեն մասսաներին՝ լուծելու իրենց առջև ծառացած խոշոր, բարդ խնդիրները։

Պարտիական կազմակերպություններն այժմ մեծ պատասխանատվություն են կրում նոր խնդիրների հաջող լուծման համար։ ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշման մեջ ասված է. «Կենտկոմի պլենումը գտնում է, որ կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի հետագա ամրապնդման, աշխատանքի արդյունքներով գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացման՝ պարտիայի նախատեսած միջոցառումների հաջող կենսագործումը պահանջում է արմատապես բարելավել պարտիական, սովետական, տնտեսական, կոմերիտական և արհմիութենական բոլոր կազմակերպությունների աշխատանքը։ Նրանց գործունեության մեջ գլխավորը և վճռականը ամենօրյա հոգատարությունն է մարդկանց նկատմամբ, կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի զարգացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, դրանց ինքնարժեքի իջեցման և արտադրության բոլոր ճյուղերի շահութաբերության ապահովման նկատմամբ»։

Այս ամենը հաջողությամբ կատարելու համար մեզնից պահանջվում է՝ ամենից առաջ կատարելագործել պարտիայի շրջկոմների աշխատանքի ոճն ու մեթոդները, մեկընդմիշտ հրաժարվել վարչարարությունից, հրամաններ տալուց, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներին, ինչպես և մասնագետներին փոխարինելու պրակտիկայից։ Եվ, վերջապես, ժամանակն է՝ մեր գործունեության բոլոր ոլորտներից արմատախիլ անել այն պարադայնությունն ու աղմկարարությունը, որը միահամուռ կերպով դատապարտվեց պլենումում։ Գաղտնիք չէ, որ պարտիական կոմիտեների որոշ ղեկավարներ դեռևս չեն ձերբազերծվել աշխատանքի հին ոճից ու սովորույթներից, դեռևս հաճախ շարունակում են փոխարինել տնտեսավարներին, փոխարինել սովետական օրգաններին, հանդես բերելով մանրախնդիր խնամակալություն։ Ինչպես պլենումն ընդգծեց, գործունեության այս արատավոր ոճը թուլացնում է պետական կարգապահությունը և նվազեցնում սովետական ու տնտեսական կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Պարտիական օրգանները տեղերում ոչ թե պետք է փոխարինեն, այլ կոորդինացնեն սովետական, տնտեսական, հասարակական կազմակերպությունների գործունեությունը և նրանց ջանքերն ուղղեն առաջադրված խնդիրների կենսագործման նպատակին, ինչպես հարկն է ղեկավարեն ամբողջ քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքը։

Ինչպես նշված է ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշման մեջ, այժմ հատուկ ուշադրություն պետք է նվիրել կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպությունների հետագա ամրապնդմանն

ու նրանց դերի բարձրացմանը: Հարկավոր է խորապես ըմբռնել, որ պարտիա-
յի յուրաքանչյուր շրջանային կոմիտեի գործունեության հաջողության գրավա-
կանը սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակությունն
ու բանիմացությունն է: Ներկայումս գյուղական 1880 սկզբնական պարտիա-
կան կազմակերպություններում ընդգրկված են մոտ 45 հազար կոմունիստ-
ներ: Սա մեծ ուժ է, որի ճիշտ օգտագործումից ու ղեկավարությունից են կախ-
ված մեր հաջողությունները գյուղում: Շրջկոմներն ու սկզբնական պարտիա-
կան կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի բարձրացնեն յուրա-
քանչյուր կոմունիստի պատասխանատվությունն իրենց հանձնարարված գործի
նկատմամբ: Բայց հարցը միայն սրանով չի լուծվում: Հույժ կարևոր է կոմու-
նիստների ճիշտ տեղաբաշխումը նյութական արտադրության կարևոր տեղա-
մասերում, այնտեղ, ուր իրոք վճռվում է գյուղատնտեսության վերելքի հարցը:

Մինչդեռ փրակտիկում պարտիական գործունեության այս կարևոր նախա-
պայմանը խախտվում է շատ կազմակերպությունների կողմից: Փոքր չէ այն
կոլտնտեսությունների ու սովխոզների թիվը, որտեղ կոմունիստները մեծ
մասամբ զբաղված են ոչ թե արտադրության վճռական օղակներում, այլ երկ-
րորդական տեղամասերում: Էլ չենք խոսում այն մասին, որ շատ տնտեսու-
թյուններում շատ կոմունիստներ վատ են կատարում իրենց կանոնադրական
պարտականությունները: Պարտիայի շրջկոմները կոչված են արմատապես ու
մեկընդմիշտ լուծելու այս հարցը՝ կոմունիստներին գործի կարգելու այնտեղ,
ուր պահանջում է տնտեսության և աշխատանքի շահը: Այս չափանիշով պետք
է գնահատել յուրաքանչյուր սկզբնական պարտիական կազմակերպության
գործունեությունը:

Չպետք է մոռանալ, որ կադրերի ճիշտ տեղաբաշխման, նրանց գնահատ-
ման և առաջքաշման գործը բարդ արվեստ է: Այս բնագավառում ևս պետք է
մինչև վերջ կիրառել աշխատանքի լենինյան ոճը, ըստ որի՝ յուրաքանչյուր
անհատի արժանիքների միակ չափանիշը նրա գործն է և ոչ թե խոսքը, նրա
գործունեության արդյունքը շոշափելի ձևով, և ոչ թե բանավոր կամ գրավոր
խոստումները: Եվ եթե մենք առաջիկայում անշեղորեն կենսագործենք լենին-
յան ոճի այս պահանջը, անկասկած, զգալի արդյունքի կհասնենք:

Այժմ, ինչպես երբեք, պարտիական կազմակերպությունները պետք է
ավելի լավ գլխավորեն աշխատավորների ստեղծագործական եռանդն ու ակ-
տիվությունը, ավելի հմուտ կազմակերպեն մարդկանց գործունեությունը, ուղ-
ղելով այն գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնա-
պահության մթերատվության բարձրացման խիստ կարևոր խնդրի կենսագործ-
մանը: Այն միջխարի գումարները, որոնք այս հինգ տարում պետք է ծախսվեն
գյուղատնտեսական արտադրության զանազան ոլորտներում, պարտիական
ղեկավար կադրերից պահանջում են գործի կատարյալ իմացություն, սովետա-
կան կոպեկի լիակատար խնայողություն: Չպետք է հանդուրժել ֆինանսների
վատնման որևէ դեպք առօրյա կյանքում:

Գյուղատնտեսության հետագա արագ զարգացման հարցը համաժողո-
վրդական բնույթ ունի: Այդ իսկ առումով Կենտկոմի պլենումի որոշումների
պարզաբանումը և դրանց կենսագործումը բոլոր պարտիական կազմակերպու-
թյունների և գաղափարական ճակատի՝ մամուլի, ռադիոյի, հեռուստատեսու-
թյան, կինոյի, ագիտատորների ու պրոպագանդիստների և կուլտուր-լուսավո-
րական հիմնարկների աշխատողների անմիջական պարտականությունն է:



Կազմակերպական ու քաղաքական այն մեծ աշխատանքի սկիզբն է այդ, որը
պետք է ծավալեն պարտիական կազմակերպությունները գյուղատնտեսության
հաստատուն վերելքն ապահովելու նպատակով: Իսկ այդ պահանջում է ո՛չ
միայն պարտիական ու պետական օրգանների, այլև տնտեսական, արհմիու-
թենական և կոմերիտական կազմակերպությունների ղեկավարների անձնական
մասնակցությունը: Մեր ամբողջ պրոպագանդան ու ագիտացիան պետք է ծա-
ռայեն այն կարևոր խնդրի լուծմանը, որ արդյունավետ օգտագործվի պետու-
թյան՝ գյուղատնտեսությանը ցույց տված միլիարդավոր օգնությունը: Պետք է ձեռ-
նարկել կազմակերպական, տնտեսական և տեխնիկական բոլոր միջոցները,
որպեսզի արգասաբեր, շահավետ լինի ինչպես տնտեսության մեջ ներդրված
մարդկային աշխատանքի յուրաքանչյուր րոպեն, նույնպես և ամեն մի ռուբ-
լին:

Պարտիայի շրջանային կոմիտեների կարևորագույն խնդիրն է՝ կոլտնտե-
սականների ու սովխոզների բանվորների շրջանում լայնորեն մասսայակա-
նացնել ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները, հաստատ հիշելով,
որ դրանց կատարումը հնարավոր է միայն այն դեպքում, երբ իրենք՝ աշխա-
տավորները, խորապես գիտակցեն իրենց առջև դրված խնդիրների համապե-
տական և հասարակական մեծ նշանակությունը: Չպետք է մոռանալ, որ այս
օրերին ռեսպուբլիկայի դաշտերում դրվում են առատ բերքի հուսալի հիմքերը:
Բայց միայն հիմքերը: Անհրաժեշտ է անդուլ աշխատանք և գործիմացություն,
որպեսզի ռեսպուբլիկան աշնանը կարողանա առատ բերք ստանալ:

Անշեղորեն կենսագործելով երկրի գյուղատնտեսության հետագա զար-
գացման անհետաձգելի միջոցառումների մասին Կենտկոմի պլենումի որո-
շումները՝ այս տարի արդեն մենք պետք է զգալիորեն ավելացնենք գյուղա-
տնտեսական մթերքների արտադրությունը և դրանց վաճառքը պետությանը:
Սակայն այդ կախված է նրանից, թե որքան արագ և ինչպիսի որակով մենք
կկատարենք այս տարվա գարնանացանը: Մեր գարնանային աշխատանքների
թերությունները ցայտուն երևան կգան աշնանը: Այս մասին պետք է լրջորեն
հոգան գյուղական շրջանների պարտիական կոմիտեները, որոնք, կարծես թե,
ավելի կազմակերպված ու եռանդով են սկսել գյուղատնտեսական նոր տարին:
Անցյալ տարի կատարված 142 հազար հեկտար ցրտահերկը այս տարվա հա-
ջող բերքի լուրջ նախապայմանն է: Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու
սովխոզներում երբեք այդքան ցրտահերկ չէր կատարվել: Ցրտահերկի վրա
կատարվող գարնանացանը բարձր բերքի հաստատուն երաշխիքն է: Բոլոր
կոլտնտեսություններն ու սովխոզներն այս տարի ապահովված են սերմա-
ցուով: Ուրեմն, մեզ մնում է այնպես կազմակերպել գործը, որ այս առավե-
լությունները ամենուրեք խելացի օգտագործվեն: Այն հանգամանքը, որ այս
տարի զգալիորեն ընդարձակվել է ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային
պարկը, որ 50 հազար տոննայով ավելի պարարտանյութ է հատկացվելու
գյուղատնտեսությանը, հիմք է տալիս ասելու, որ գյուղական պարտիական
կազմակերպությունները պատվով կկատարեն իրենց վրա դրված պարտակա-
նությունները:

Պետք է լուրջ միջոցներ ձեռք առնել՝ ապահովելու կաթի, մսի և գյուղա-
տնտեսական այլ մթերքների արտադրության և դրանք պետությանը վաճա-
ռելու կիսամյա և տարեկան պլանները:

Պլենումի որոշումներում առանձնապես ընդգծված է պողաբուծության և

*այգեգործության առավել զարգացման անհրաժեշտությունը մեր երկրում։*
*Պետք է նշել, որ այս տարի հաջող կազմակերպվեց խաղողի այգիների ձմե-*
*ռումը. լուրջ երաշխիքներ կան բարձր բերք ստանալու և պետությանը 150—*
*160 հազար տոննա խաղող վաճառելու համար։ Այժմ ամեն ինչ կախված է*
*խաղողի և պտղատու այգիների հմուտ ու բարեխիղճ մշակումից, նրանց խնամ-*
*քից ու բերքահավաքից։*

*Այս տարի մեր կոլտնտեսություններում ու սովխոզներում սպասվում է*
*բանջարա-բոստանային կուլտուրաների բարձր բերք։ Գյուղի աշխատավորներն*
*ի վիճակի կլինեն լիուլի բավարարելու ռեսպուբլիկայի քաղաքների աշխատա-*
*վորների պահանջմունքները։ Այժմ, գարնանային աշխատանքների այս թեժ*
*օրերին, մեր գյուղական պարտիական կոմիտեները, կոլտնտեսությունների ու*
*սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է դրսե-*
*վորեն իրենց ողջ ուժն ու կարողությունը՝ հետևողականորեն կենսագործելու*
*ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի առաջադրած մեծ ու պատասխանատու*
*խնդիրները։ Չենք կասկածում, որ ռեսպուբլիկայի պարտիական կազմակեր-*
*պությունները ամեն ինչ կանեն՝ արմատապես բարելավելու կոլտնտեսություն-*
*ների ու սովխոզների գործունեությունը, օգնելու այդ տնտեսություններին*
*բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու արտադրան-*
*քի ինքնարժեքը, տնտեսության բոլոր ճյուղերը դարձնելու գերազանցապես*
*շահավետ. այս է մեր առաջիկա հրատապ և անհետաձգելի խնդիրը, որի լու-*
*ծումը մեծապես կախված է գյուղական պարտիական կազմակերպությունների*
*գործունեությունից և բանիմացությունից։*



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԵՐԿՐԻ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՀԶՈՐ ՈՒԺՆ Է

Հերոսական փառահեղ ուղի է անցել սովետական ժողովուրդը։ Նա իր
հայրենանվեր գործերով մեր երկրում ստեղծում է արտադրողական հզոր
ուժեր, հաջողությամբ լուծում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կա-
ռուցման խնդիրը, կերտում նոր հասարակարգի հոյակապ շենքը։ Սովետական
Միությունում կառուցվող ամեն մի նոր գործարան ու էլեկտրակայան, երկաթ-
ուղի ու ջրանցք, քաղամաս ու ավան, երկինք սլացող ամեն մի արբան-
յակ ու տիեզերանավ մեծ ուրախություն է պատճառում սովետական մարդուն։

Անժխտելի է, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման
գործում ձեռք բերված հաջողություններն անխզելիորեն կապված են այն մեծ
աշխատանքի հետ, որ պարտիան տանում է սովետական մարդկանց կոմունիս-
տական դաստիարակության ուղղությամբ, որովհետև որքան բարձր է աշխա-
տավորների «...գիտակցականությունը,—ասված է ՍՄԿՊ ծրագրում,—այնքան
ավելի լրիվ ու լայնորեն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվու-
թյունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի
կոմունիստական ձևերի և մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգաց-
ման մեջ և, հետևապես, այնքան ավելի արագորեն ու հաջողությամբ են լուծ-
վում կոմունիզմի կառուցման խնդիրները» (էջ 140)։

Պարտիան կոմունիստական շինարարության ղեկավարման գործում գլխա-
վոր շեշտը դնում է աշխատավորական լայն զանգվածների ստեղծագործական
ձեռներեցությունը զարգացնելու, քաղաքական և արտադրական ակտիվությու-
նը բարձրացնելու վրա, որովհետև ժողովուրդն է կոմունիզմի կառուցման վճռ-
ական ուժը։ Նրա ձեռքի, եռանդի և բանականության գործն է այն։

Սոցիալիզմը մեծ հնարավորություններ է ընձեռում աշխատավորական
զանգվածների շրջանում լայնորեն տարածելու աշխատանքի կոմունիստական
ձևերը և բանվորների, կոլտնտեսականների ու մտավորականության «...մեծա-
մասնությունը ներգրավել այնպիսի աշխատանքի ասպարեզ, որտեղ նրանք
կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևո-
րել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապի-
տալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (Վ. Ի. Լենին,
հատ. 26, էջ 493—494)։

Միայն մասսաների նախաձեռնության և ինքնագործունեության միջոցով
կարելի է հաջողությամբ լուծել կոմունիստական շինարարության խնդիրները։

այգեգործության առավել զարգացման անհրաժեշտությունը մեր երկրում։ Պետք է նշել, որ այս տարի հաջող կազմակերպվեց խաղողի այգիների ձմեռումը. լուրջ երաշխիքներ կան բարձր բերք ստանալու և պետությանը 150—160 հազար տոննա խաղող վաճառելու համար։ Այժմ ամեն ինչ կախված է խաղողի և պտղատու այգիների հմուտ ու բարեխիղճ մշակումից, նրանց խնամքից ու բերքահավաքից։

Այս տարի մեր կոլտնտեսություններում ու սովխոզներում սպասվում է բանջարա-բոստանային կուլտուրաների բարձր բերք։ Գյուղի աշխատավորներն ի վիճակի կլինեն լիուլի բավարարելու ռեսպուբլիկայի քաղաքների աշխատավորների պահանջմունքները։ Այժմ, գարնանային աշխատանքների այս թեժ օրերին, մեր գյուղական պարտիական կոմիտեները, կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է դրսևորեն իրենց ողջ ուժն ու կարողությունը՝ հետևողականորեն կենսագործելու ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի առաջադրած մեծ ու պատասխանատու խնդիրները։ Չենք կասկածում, որ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները ամեն ինչ կանեն՝ արմատապես բարելավելու կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեությունը, օգնելու այդ տնտեսություններին բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը, տնտեսության բոլոր ճյուղերը դարձնելու գերազանցապես շահավետ. այս է մեր առաջիկա հրատապ և անհետաձգելի խնդիրը, որի լուծումը մեծապես կախված է գյուղական պարտիական կազմակերպությունների գործունեությունից և բանիմացությունից։



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԵՐԿՐԻ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՀԶՈՐ ՈՒԺՆ Է

Հերոսական փառահեղ ուղի է անցել սովետական ժողովուրդը։ Նա իր հայրենանվեր գործերով մեր երկրում ստեղծում է արտադրողական հզոր ուժեր, հաջողությամբ լուծում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման խնդիրը, կերտում նոր հասարակարգի հոյակապ շենքը։ Սովետական Միությունում կառուցվող ամեն մի նոր գործարան ու էլեկտրակայան, երկաթուղի ու ջրանցք, թաղամաս ու ավան, երկինք սլացող ամեն մի արբանյակ ու տիեզերանավ մեծ ուրախություն է պատճառում սովետական մարդուն։

Անժխտելի է, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում ձեռք բերված հաջողություններն անխզելիորեն կապված են այն մեծ աշխատանքի հետ, որ պարտիան տանում է սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության ուղղությամբ, որովհետև որքան բարձր է աշխատավորների «...գիտակցականությունը,—ասված է ՍՄԿՊ ծրագրում,—այնքան ավելի լրիվ ու լայնորեն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի և մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման մեջ և, հետևապես, այնքան ավելի արագորեն ու հաջողությամբ են լուծվում կոմունիզմի կառուցման խնդիրները» (էջ 140)։

Պարտիան կոմունիստական շինարարության ղեկավարման գործում գլխավոր շեշտը դնում է աշխատավորական լայն զանգվածների ստեղծագործական ձեռներեցությունը զարգացնելու, քաղաքական և արտադրական ակտիվությունը բարձրացնելու վրա, որովհետև ժողովուրդն է կոմունիզմի կառուցման վճռական ուժը։ Նրա ձեռքի, եռանդի և բանականության գործն է այն։

Սոցիալիզմը մեծ հնարավորություններ է ընձեռում աշխատավորական զանգվածների շրջանում լայնորեն տարածելու աշխատանքի կոմունիստական ձևերը և բանվորների, կոլտնտեսականների ու մտավորականության «...մեծամասնությունը ներգրավել այնպիսի աշխատանքի ասպարեզ, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (Վ. Ի. Լենին, հատ. 26, էջ 493—494)։

Միայն մասսաների նախաձեռնության և ինքնագործունեության միջոցով կարելի է հաջողությամբ լուծել կոմունիստական շինարարության խնդիրները։

Սովետական ժողովրդի նկատմամբ մեր պարտիայի ցուցաբերած մեծագույն ծառայություններից մեկն էլ այն է, որ նա, մշակելով ոգեշնչող և հոյակապ ծրագրեր, միաժամանակ ցույց է տալիս դրանց կենսագործման և դժվարությունների հաղթահարման ուղիները: Իսկ ժողովուրդն իր հարազատ պարտիայի հոգատարությանն արձագանքում է հայրենանվեր գործերով, աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ որոնելով և դրանք արտադրության մեջ ներդնելով:

Մեր երկրում կոմունիստական աշխատանքի ծիլերը երևացել են դեռևս Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի օրերին, երբ երիտասարդ սովետական ռեսպուբլիկան գոտեմարտում էր մինչև ատամները զինված հակառևոլյուցիոն ուժերի դեմ: Այդ ծիլերը կոմունիստական շաբաթօրյակներն էին, որոնց նախաձեռնողները հանդիսացան Մոսկվա-Կազան երկաթուղու բանվորներն ու ծառայողները: Վ. Ի. Լենինն, ընդգծելով կոմունիստական շաբաթօրյակների *պատմական* ու *հսկայական* նշանակությունը՝ դրանք համարեց աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի թարմ ծիլեր և պարտիայի ուշադրությունը հրավիրեց դրանց աճման վրա: Նա հրամայական խնդիր դրեց՝ օգնել հասարակական կյանքում լույս աշխարհ եկած նոր ծիլերի աճմանը և խնամքով պահպանել դրանք: «...Պետք է պաշտպանել նորի բոլոր և ամեն տեսակի ծիլերը,— ասում է Վ. Ի. Լենինը,— որոնցից կյանքը կվերցնի ամենից կենսունակները» (հատ. 29, էջ 522): Եվ իրոք, պարտիայի ցուցաբերած մեծ հոգատարության շնորհիվ կոմունիստական աշխատանքի այդ ծիլերը պատմական կարճ ժամանակաշրջանում արագորեն աճեցին և հետզհետե խոր արմատներ գցեցին մասսաների շրջանում: Երեսնական թվականներին մեր լայնարձակ հայրենիքի բոլոր երկրամասերում՝ արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում լայնորեն ծավալվեց սոցիալիստական մրցության մի նոր, ավելի կատարյալ ձև՝ հարվածայինների շարժումը: Աշխատանքի միլիոնավոր մարդիկ պայքարի ելան՝ ժամկետից շուտ կատարելու ժողովրդական տնտեսության առաջադրանքները: Հարվածային շարժումը, այդ մեծ ուժը պարտիան նպատակամղեց սոցիալիստական շինարարության խնդիրների հաջող լուծմանը: Կոմունիստական պարտիայի ջանքերն ապարդյուն չանցան: Սովետական ժողովրդի հերոսական աշխատանքով սոցիալիզմը հաղթանակեց մեր երկրում, է՛լ ավելի հզորացավ Սովետական Միությունը, ավելի բարձրացավ նրա հեղինակությունը միջազգային կյանքում:

Երբ պարտիան ձեռնամուխ եղավ յոթնամյա պլանի իրագործմանը, սովետական մարդկանց ձեռներեցությամբ պայքար ծավալվեց սոցիալիստական մրցության նոր, նախորդների համեմատությամբ ավելի բարձր ու կատարյալ ձևերի՝ կոմունիստական աշխատանքի բրիգադայի և հարվածայինի կոչման արժանանալու համար:

Պայքարել կոմունիստական աշխատանքի հարվածայինի, բրիգադայի, արտադրամասի, կոլեկտիվի կոչման արժանանալու համար, այդ սոցիալիստական մրցության նոր, ավելի բարձր ձև է՝ կոմունիստական շաբաթօրյակների համեմատությամբ: Վերջիններս առաջացան տնտեսական քայքայվածության պայմաններում, ձեռքի աշխատանքի բազայի վրա, աղքատության ու քայքայվածության, պրիմիտիվ տեխնիկայի տարիներին: Այդ շաբաթօրյակներում բանվորներն աշխատում էին անվճար՝ օգնելով ժողովրդական տնտեսությանը, կուտակելու վառելափայտ, խնայելու ածուխ, երկաթ, հացահատիկ: Կոմունիստական աշխատանքի հարվածայինները, բրիգադաները երևան եկան



կոմունիզմի կառուցման ծավալուն ժամանակաշրջանում, մեր երկրի էկոնոմիկայի բուռն վերելքի և տեխնիկական առաջընթացի պայմաններում: Այդ շարժումն իր ոլորտն առավ տասնյակ միլիոնավոր մարդկանց: Ի դեմս կոմունիստական աշխատանքի հարվածայինների ու բրիգադաների, արտադրամասերի ու կոլեկտիվների, մենք տեսնում ենք մրցության այն բարձրագույն ձևը, որ թելադրել է կյանքը և որն առավելագույն չափով համապատասխանում է մեր երկրի զարգացման տվյալ ժամանակաշրջանին:

Ուրախալին այն է, որ այժմ միմյանց հետ մրցում են ո՛չ միայն առանձին մարդիկ, այլև բրիգադաներ, արտադրամասեր, գործարանների, նորակառույցների կոլեկտիվներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, քաղաքներ ու շրջաններ: Սովետական Ուկրաինայի և Սովետական Հայաստանի մայրաքաղաքները երկար տարիներ մրցում են իրար հետ՝ քաղաքաշինության պլաններն անթերի կատարելու, բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը լավ կազմակերպելու համար: Վաղուց ի վեր մրցում են իրար հետ Արտաշատի շրջանի և Ուկրաինայի Խերսոնի մարզի Բոլշե Ալեքսանդրովսկի շրջանի, Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի և Վրացական ՍՍՌ Մախարաձեի շրջանի Նաթանեբի գյուղի կոլտնտեսականները՝ գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու նպատակով: Լենինականը մրցում է Գորի և Կիրովաբադ քաղաքների, Կիրովականը՝ Բաթումիի հետ:

Կապիտալիստական հասարակարգում մրցությունը տեղի է ունենում մարդու կողմից մարդուն շահագործելու դաժան ձևերով: Իսկ մեզ մոտ՝ սոցիալիստական կարգերում մրցողներն ունեն վեհ նպատակ՝ փոխադարձ օգնությամբ, գիտության նվաճումներն ու աշխատանքի առաջավոր փորձը արտադրության մեջ ներդնելու միջոցով ստեղծել ընդհանուր վերելք, իրենց առջև կանգնած խնդիրները հաջողությամբ լուծելու համար: Մրցողները հաճախ այցելում են միմյանց, փոխադարձաբար ստուգում վերցրած պարտավորությունների կատարման ընթացքը, կազմակերպում հանդիպումներ, որոնք վերածվում են ժողովուրդների բարեկամության ու եղբայրական համերաշխության վառ ցույցերի:

Մեր ռեսպուբլիկայում (1965 թվականի հունվարի մեկի տվյալներով) կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման համար պայքարող ավելի քան 96 հազար մարդուց հարվածայինի կոչման արժանացել են 28 հազար մարդ, կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարող 9925 բրիգադայի, արտադրամասի, հերթափոխի, տեղամասի և ֆերմայի կոլեկտիվներից՝ 2773, իսկ 192 ձեռնարկությունների կոլեկտիվներից չորսը (Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի, Շահումյանի շրջանի տրիկոտաժ ֆաբրիկայի, Երևանի երկրորդ հիվանդանոցի և Կիրովականի տպարանի կոլեկտիվները):

Կոմունիստական աշխատանքի հարվածայինները, արտադրամասերը և կոլեկտիվները ո՛չ միայն պայքարում են արտադրական առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար, այլև ձգտում են անընդհատ բարձրացնել իրենց կուլտուրական ու տեխնիկական մակարդակը, տիրապետել ամենաարդիական տեխնիկան վարելու արվեստին և արտադրության տեխնոլոգիային, տիրապետել մի քանի պրոֆեսիայի, պայքար մղել անցյալի մնացուկները կենցաղից վերացնելու համար: Այսպիսով, կոմունիստական աշխատանքի նոր ձևի կիրառումը ո՛չ միայն առաջ է մղում կոմունիզմի նյութական բազայի կառուցման գործը, այլև վերափոխում է հենց իրենց՝ ստեղ-







ծագործողների հոգեբանությունը, մտավոր աշխատանքը: Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվները նոր մարդու ձևավորման դպրոցներն են:

Վ. Ի. Լենինը նշում է, որ «Աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար» (հատ. 29, էջ 523): Համոզվելով դրանում, կոմունիստական աշխատանքի հարվածայինները, բրիգադաների, արտադրամասերի կոլեկտիվները մեծ ուշադրություն են նվիրում արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացմանն ու ավտոմատացմանը: Նրանք համարձակորեն արմատավորում են նոր սարքավորումներ, մոդեռնացնում գործող հաստոցներն ու մեքենաները, արդյունավետ օգտագործում արտադրական կարողությունը, անխախտ կիրառում տեխնոլոգիական պրոցեսները, գյուղատնտեսությունը վարում ինտենսիվ ձևով:

Մեր օրերում սոցիալիստական մրցության կրակը բորբոքվել է միլիոնների սրտերում և նրանց պայքարի հանել՝ ժամկետից շուտ կատարելու յոթնամյա պլանի վճռական տարվա առաջադրանքները: Սովետական մարդկանց բեղմնավոր գործերը տալիս են լավագույն արդյունք: Անցած վեց տարում, յոթնամյակի այդ ժամանակամիջոցի առաջադրանքներից ավելի արտադրվել է մոտ 42 միլիարդ ռուբլու արդյունաբերական արտադրանք:

Ողջ սովետական ժողովրդի հետ միասին յոթնամյա պլանը հաջողությամբ կատարում են նաև Սովետական Հայաստանի աշխատավորները: Ռեսպուբլիկայում 1964 թվականին արդյունաբերության ընդհանուր ծավալի և արտադրանքի կարևորագույն տեսակների մեծ մասի արտադրության տարեկան պլանը գերակատարված է մինիստրությունների, գերատեսչությունների, ժողտնտխորհի բոլոր ճյուղային վարչությունների ճնշող մեծամասնության և տեղական սովետների արդյունաբերության կողմից:

Վերջին տարիներս պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները որոշակի փորձ կուտակեցին կոմունիստական աշխատանքի մրցությունը ծավալելու և ղեկավարելու գործում: Պարտիական բյուրոները, կոմիտեները և արհեստակցական միությունների գործարկոմներն ու տեղկոմները հաճախակի ստուգում են հարվածայնության համար ծավալված մրցությունը, դրանց արդյունքները քննում իրենց նիստերում ու բանվորական ժողովներում, նշում կոնկրետ միջոցներ մրցությունն ավելի լայն ծավալելու համար:

Կոմունիստական աշխատանքի ձևերը կիրառողների ավանգարդում են ընթանում պարտիայի անդամներն ու թեկնածուները, կոմերիտականները: Հիրավի, որտեղ կոմունիստներն ու կոմերիտականները կանգնած են իրենց կոչման բարձրության վրա, այնտեղ օրըստօրե լայն կիրառում են գտնում աշխատանքի առաջավոր ձևերը:

Հայաստանի ժողտնտխորհը և ՀԱՄԽ-ը, ամփոփելով սոցիալիստական մրցության 1964 թվականի չորրորդ եռամսյակի արդյունքները, առաջին մրցանակ շնորհեցին Երևանի էլեկտրալամպերի գործարանի կոլեկտիվին: Գործարանը անցյալ տարի առաջադրանքները կատարել է 107 տոկոսով՝ տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով: Իհարկե, այդ արդյունք է այն բանի, որ գործարանի պարտիական կոմիտեն ու գործարկոմը մտահոգված են կոմունիստական աշխատանքի ձևերը տարածելու հարցերով: Գրեթե բոլոր արտադրամասերը մրցում են միմյանց հետ՝ ժամկետից շուտ ու բարձր որակով



կատարելու պետական առաջադրանքները: Այստեղ կոմունիստական աշխատանքի հարվածայնի կոչման են արժանացել ավելի քան հիսուն բանվոր-բանվորուհիներ: Այդ կոչմանն է արժանացել նաև պարուրափաթաթման արտադրամասը, ուր գործում են մոտ 250 բանվոր-բանվորուհիներ ու ինժեներա-տեխնիկական աշխատողներ: Նրանք բոլորն էլ պայքարում են շատ և բարձրորակ արտադրանք տալու համար:

Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղի կոլտնտեսությունը մրցում է Կամոյի շրջանի Հացառատ գյուղի կոլտնտեսության հետ: Կոլտնտեսությունը անցյալ տարի պլանով նախատեսված՝ հեկտարից 13 ցենտներ հացահատիկի, 110 ցենտներ կարտոֆիլի, 19 ցենտներ ծխախոտի (միջին հաշվով) դիմաց ստացել է՝ 16,5 ցենտներ հացահատիկ, 200 ցենտներ կարտոֆիլ, 21,5 ցենտներ ծխախոտ: Կոմունիստներ Ա. Շահինյանի, Վ. Գասպարյանի, Ն. Աբգարյանի, Գ. Ավետյանի, Հ. Մանուկյանի բրիգադաները յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել են՝ հացահատիկ՝ 22—25, ծխախոտ՝ 28—32, կարտոֆիլ՝ 220—250 ցենտներ:

Կոլտնտեսությունը գերակատարել է պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու առաջադրանքները: Նրա տարեկան դրամական եկամուտը հասել է 900 հազար ռուբլու, կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիներն իրենց վաստակած ամեն մի աշխօրի դիմաց ստացել են 2 ռուբլի 75 կոպեկ: Կոլտնտեսությունը կառուցել է դպրոցի նոր շենք, ունի իր ակումբը, բուժարանը, ծննդատունը, մանկամսուրն ու մանկապարտեզը, գործում են ցերեկային և գիշերային միջնակարգ դպրոցներ:

Մեր ռեսպուբլիկայում Երևանի էլեկտրալամպերի գործարանի և Վարդենիկի կոլտնտեսության նման օրինակելի, առաջավոր շատ արդյունաբերական ձեռնարկություններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ կան, ուր մրցությունը լայնորեն ծավալելու շնորհիվ հիանալի արդյունքի են հասել:

Սակայն, ցավոք սրտի, սոցիալիստական մրցության ծավալման և նրա ղեկավարման գործում դեռևս գոյություն ունեն լուրջ թերություններ: Առանձին պարտիական ու արհմիութենական կազմակերպություններ, որոնք ձևական վերաբերմունք են ցույց տալիս իրենց գործունեության այդ կարևոր բնագավառին, զբաղվում են աղմկարարությամբ ու ինքնաթմբկահարմամբ: Առանց կազմակերպչորեն ու գաղափարապես նախապատրաստելու, կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարողների շարժման մեջ նրանք երբեմն ներգրավում են առանձին բրիգադաներ, արտադրամասեր ու կոլեկտիվներ: Դրա հետևանքն այն է լինում, որ մրցության մեջ մտնելուց հետո էլ այդ բրիգադաները, արտադրամասերն ու կոլեկտիվներն աշխատում են նախկին ձևով, իսկ նրանց վերցրած պարտավորությունները ոչնչով չեն տարբերվում չմրցող կոլեկտիվներից:

Աններելի է, երբ կոլեկտիվը, արտադրամասը երկար տարիներ մրցում է կոմունիստական աշխատանքի կոչման արժանանալու համար, սակայն չի կատարում իր առաջադրանքը, թողարկում է անորակ արտադրանք: Կամ, երբեմն, կոմունիստական աշխատանքի բրիգադայի, արտադրամասի, կոլեկտիվի կոչում է շնորհվում այնպիսիներին, որոնք բնավ արժանի չեն դրան:

Դեռևս կոմունիստական աշխատանքի ձևերը երևան գալու առաջին օրերին, 1919 թվականին Վ. Ի. Լենինը գրել է. ««Կոմունա» բառը մեզ մոտ սկսել է գործածվել շատ թեթև: Ամեն մի ձեռնարկություն, որը հիմնվում է կոմու-

նիստների կողմից, կամ նրանց մասնակցությամբ, շատ հաճախ իսկույն հայ-
տարարվում է արդեն «կոմունա»,—և շատ անգամ մոռացվում է, որ ա յ դ ք ա ն
պ ա տ վ ա վ ո ր ա ն ու ն ը պետք է ն վ ա ճ ե լ երկար ու համառ աշխա-
տանքով, նվաճել իսկական կոմունիստական շինարարության ասպարեզում
ապացուցված գ ո ր ծ ն ա կ ա ն հաջողությամբ» (հատ. 29, էջ 529):
Մեր հայրենիքը թևակոխել է յոթնամյակի վերջին, ավարտական տարին,
որի պլանների անթերի կատարումը հնարավորություն կընձեռի սոցիալիստա-
կան էկոնոմիկայի հետագա վերելքի և սովետական գիտության ու կուլտուրա-
յի ծաղկման, աշխատավորության կենսամակարդակի առավել բարձրացման
համար և նոր քայլ կհանդիսանա կոմունիզմի առաջընթացի ճանապարհին:
Կոմունիստական պարտիան, սովետական կառավարությունը մեր երկրի
աշխատավորության ուշադրությունը հրավիրում են աշխատանքի արտադրո-
ղականության, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման և ինքնարժեքի
իջեցման հարցերի լուծման վրա, որը մեզ համար խիստ կարևոր նշանակու-
թյուն ունի: Սովետական ձեռնարկության թողարկած ամեն մի հաստոց, սարք,
մեքենա, գործիք, ժողովրդական լայն սպառման առարկա պետք է լինի դի-
մացկուն, գեղեցիկ, ճաշակով: Մեր պարտիան իր բոլոր ջանքերը գործադրում
է մեր երկրի հարստացման, սովետական պետության հզորացման համար,
որպեսզի լավ ապրեն մեր երկրի աշխատավորները, բազմապատկվի նրանց
նյութական ու հոգևոր հարստությունը:
Կոմունիստաբար աշխատելու, սովորելու և ապրելու հզոր շարժումը, որն
ընդգրկել է տասնյակ միլիոնավոր մարդկանց՝ քաղաքում և գյուղում, դար-
ձել է նոր հասարակարգի կառուցման կարևոր ուժը: Անցյալ տարվա վերջին
Մոսկվայի և Լենինգրադի ձեռնարկությունների կոլեկտիվները հանդես բերին
հիանալի նախաձեռնություն՝ կոչ անելով բոլորին՝ պայքարել թողարկվող
յուրաքանչյուր ապրանքի որակը, հուսալիությունն ու դիմացկունությունը
բարձրացնելու համար, արտադրանքի կարևորագույն տեսակները համաշխար-
հային լավագույն ստանդարտների մակարդակին բարձրացնելու համար: Այդ
հայրենասիրական նախաձեռնությունը լայն արձագանք է գտել Հայաստանում:
Այժմ, երբ կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածային-
ների մրցությունը ավելի ու ավելի ակտիվ ուժ է դառնում կոմունիզմի նյու-
թատեխնիկական բազայի ստեղծման և նոր մարդու դաստիարակության հա-
մար մղվող պայքարում, մեծ պատասխանատվություն է դրվում պարտիական
կազմակերպությունների վրա՝ գլխավորելու մասսաների մեջ ծավալված այդ
հայրենասիրական շարժումը և վահանի վրա բարձրացնելու սոցիալիստական
մրցության առաջավորներին:
Սովետական մարդիկ գիտակցում են, որ կոմունիստական պարտիան մըշ-
տական հոգատարություն է ցուցաբերում ժողովրդի բարօրության նկատմամբ:
Այդ են վկայում ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի արդյունքները: Քննար-
կելով գյուղատնտեսության հետագա զարգացման անհետաձգելի միջոցառում-
ների հարցը, պարտիայի Կենտկոմի մարտյան պլենումը որոշեց խոշոր միջոց-
ներ ներդնել ռոռգման սիստեմն ընդարձակելու, աշխատատար պրոցեսները
մեքենայացնելու, քիմիական արդյունաբերությունը զարգացնելու համար: Մեր
երկրի աշխատավորները ջերմորեն հավանություն տալով պարտիայի Կենտ-
կոմի պլենումի որոշումներին, ամենուրեք ծավալում են սոցիալիստական մըր-
ցությունը՝ կոմունիզմի կառուցման գործն առաջ մղելու համար:

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ԲԱՐԵԼԱՎՈՒՄԸ

Մեր սոցիալիստական արտադրության գլխավոր նպատակը հասարակության անընդհատ աճող պահանջմունքների բավարարումն է: Սովետական մարդկանց կենսամակարդակի անշեղ վերելքը կոմունիստական պարտիայի գլխավոր խնդիրն է, որը կարող է իրականանալ միայն սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման հիման վրա: «Միայն սոցիալիզմը հնարավորություն կտա պրոդուկտների հասարակական արտադրությունն ու բաշխումը լայնորեն տարածել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել այն նպատակին, թե ինչպես բոլոր աշխատավորների կյանքը դարձնել առավել հեշտ և այնպես, որ նա բարեկեցության հնարավորություն ընձեռի աշխատավորներին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 27, էջ 511): Ահա թե ինչու սոցիալիստական հասարակության զարգացումը պետք է զուգորդվի ինչպես հասարակության բոլոր անդամների անձնական սպառման պահանջների բավարարման, այնպես էլ նրա՝ աշխատանքի միջոցներով զինվածությունը բարձրացնելու հետ: Միայն աշխատանքի միջոցներով առավել զինվածության շնորհիվ է հնարավոր աշխատանքը դարձնել ավելի արտադրողական, բեղուն, ուստի և նվազագույն ծախսումներով հասնել առավել բարձր արդյունքի: Արտադրության տարբեր ճյուղերի նկատմամբ հասարակության ներկայացրած պահանջին համապատասխան էլ որոշվում են ժողովրդական տնտեսության կառուցվածքը, յուրաքանչյուր ճյուղի դերն ու նշանակությունը երկրի ամբողջ էկոնոմիկայում:

Սոցիալիզմի ժամանակ ժողովրդական տնտեսության կառուցվածքին հատուկ են ոչ թե ինքնաբերաբար գոյացող հարաբերակցությունները, այլ այնպիսիք, որոնք լիովին համապատասխանում են պլանաչափ, պրոպորցիոնալ զարգացման տնտեսական օրենքի պահանջներին և դրսևորվում որպես օպտիմալ համամասնություններ: Ժամանակակից էտապում ժողովրդական տնտեսության կառուցվածքի բարելավման հարցը՝ դա կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ուղիների ու մեթոդների հարցն է: Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ընթացքում պետք է ապահովել ճիշտ կամ օպտիմալ համամասնություններ սոցիալիստական արտադրության երկու ստորաբաժանումների՝ արդյունաբերության և գյուղատնտեսության միջև, հասարակական ամբողջական արդյունքի մասերը կազմող փոխհատուցման ֆոնդի և ազգային եկամտի, սպառման ու կուտակման ֆոնդերի միջև և այլն:

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ներկա մակարդակն այնպիսին է, որ հնարավոր է նշանակալից չափով նվազեցնել ո՛չ միայն արդյունաբերության «Ա» խմբի աճման տեմպերի քանակական գերազանցությունը, այլև այդ խմբի ներսում այնպիսի նոր հարաբերակցություն ստեղծել, որն անմիջականորեն նպաստի սպառման առարկաների արտադրության աճման տեմպերի բարձրացմանը և մասշտաբների ընդլայնմանը։

ՍՍՌՄ ծանր արդյունաբերությունը, նրա տեխնիկական զինվածության աստիճանը այժմ արդեն թույլ են տալիս, որ այդ ձեռնարկությունները մեծ մասամբ չարտադրեն գերազանցապես նույն՝ ծանր արդյունաբերության կողմից սպառվող արտադրանք։ Այժմ ծանր արդյունաբերության ճյուղային կառուցվածքը կարելի է փոխել այն հաշվով, որ նրա ձեռնարկությունները սպառման առարկաներ թողարկող ձեռնարկությունների համար արտադրության միջոցներ արտադրեն ավելի բարձր տեմպերով, քան «Ա» խմբի ձեռնարկությունների համար։ Այսպես, գլխավոր հեռանկարի ժամանակամիջոցում «Ա» խմբի ձեռնարկությունների համար արտադրվող արտադրամիջոցների արտադրությունը, 1960 թվականի համեմատությամբ, ավելանում է մոտ 6, իսկ «Բ» խմբի համար՝ 13 անգամ։ Բացի դրանից, «Ա» խմբի ձեռնարկությունները ևս ավելի լայն չափերով կթողարկեն կուլտուր-կենցաղային իրեր։

Ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածքի բարելավման ու նրա ռացիոնալացման վրա խոր ներգործություն է ունենում գիտության ու տեխնիկայի զարգացումը, որը բնավ չի կարելի անտեսել հեռանկարային և ընթացիկ պլանները մշակելիս։ «Մարդկությունը թևակոխում է գիտատեխնիկական հեղաշրջման ժամանակաշրջանը, որը կապվում է միջուկային էներգիային տիրապետելու, տիեզերքի յուրացման, քիմիայի զարգացման, արտադրության ավտոմատացման և գիտության ու տեխնիկայի մյուս խոշորագույն նվաճումների հետ» (ՍՄԿՊ ծրագիր, Երևան, 1961 թ., էջ 32)։ Գիտության ու տեխնիկայի զարգացման շնորհիվ հասարակական վերարտադրության պրոցեսում այժմ արդեն երևան են գալիս մի շարք նոր երևույթներ ու օրինաչափություններ, որոնք կանխորոշում են ժողովրդական տնտեսության և, առաջին հերթին՝ արդյունաբերության նոր կառուցվածքը։ Տեխնիկական առաջադիմությունը ամենից առաջ դրսևորվում է նրանով, որ մեքենաները փոխարինում են ձեռքի աշխատանքին։

Տեխնիկական առաջադիմության ներգործությամբ փոխվում են հարաբերակցությունները արդյունաբերության վառելիքա-հումքային և վերամշակող ճյուղերի միջև, հօգուտ վերջինի։ Հայտնի է, որ վառելիքի խոշոր սպառողներ են էլեկտրակայանները, տրանսպորտը, սև մետաղաձուլությունը։ Հիշյալ ճյուղերում տեխնիկական առաջադիմության, տեխնոլոգիական նորամուծությունների շնորհիվ զգալի չափով կրճատվել են վառելիքի տեսակարար ծախսերը։ Այսպես, նախապատերազմյան շրջանի հետ համեմատած, ՍՍՌՄ էլեկտրակայաններում 1 կվտ ժամ էլեկտրաէներգիայի վրա ծախսվող պայմանական վառելիքը կրճատվել է 40 տոկոսով։ Շոգեքարշից ջերմաքարշին անցնելու շնորհիվ փոխադրվող բեռի մեկ միավորի վրա ծախսվող վառելիքը կրճատվում է 75 տոկոսով։ Զգալիորեն կրճատվել է 1 տոննա չուգունի արտադրության վրա ծախսվող կոքսի քանակը և այլն։ Այդ ամենի շնորհիվ արդյունաբերական արտադրանքի, ինչպես և հասարակական ամբողջական արդյունքի ու ազգային եկամտի միջին տարեկան տեմպերը $1/3$-ով գերազանցում են վա-



ռելիքի արտադրության աճման տեմպերը. այդ տարբերությունը գնալով ավելի ու ավելի է մեծանում։

Վառելիքային արդյունաբերության զարգացման տեմպերի հարաբերական կրճատվելը արդյունք է մոտորների ու այլ նոր տեսակի շարժիչների արմատավորման, որոնց օգտակար գործողության գործակիցն ավելի բարձր է։ Երկրի վառելիքային բալանսի կառուցվածքի փոփոխությունը, ինչպես և վառելիքի այրման տեխնիկայի առաջընթացը տնտեսում են զգալի չափով հասարակական աշխատանք։

Փոխվել է մետաղաձուլության և մետաղ սպառող ճյուղերի զարգացման տեմպերի հարաբերակցությունը՝ հօգուտ վերջինիս։ Մեքենաշինության մեջ վերջին տասը տարիներում պակասել է մեքենաների մետաղատարողությունը։ Զգալի չափով կրճատվել է շինարարական աշխատանքների մեկ միավորի վրա ծախսվող ցեմենտը։ Բամբակյա և բրդյա գործվածքեղենի արդյունաբերության մեջ ավելի ու ավելի է բարձրանում թեթև կտորների տեսակարար կշիռը։

Սննդարդյունաբերության մեջ առաջավոր տեխնոլոգիայի կիրառմամբ բարձրանում է շաքարի, մսի, բուսական յուղի ելքի տոկոսը։

Տեխնիկական հեղաշրջման շնորհիվ երևան են գալիս նոր արտադրություններ ու ճյուղեր։ Դրանց մի մասը թողարկում է այնպիսի արտադրանք, որոնք փոխարինում են հներին. այսպես՝ էլեկտրաքարշները և ջերմաքարշները փոխարինում են շոգեքարշներին, սինթետիկ մանրաթելերը՝ բնական թելերին, սինթետիկ լվացքի նյութերը՝ բնական օճառին, սինթետիկ ներկերը՝ բնական ներկերին և այլն։

Արտադրանքի նոր, հներին փոխարինող տեսակները պետք է տնտեսապես առավել արդյունավետ լինեն. եթե շոգեքարշի օգտակար գործողության գործակիցը կազմում է 5—6 տոկոս, ապա ջերմաքարշինը հասնում է 28—32 տոկոսի։ Մեկ տոննա արհեստական մանրաթելի արտադրության համար պահանջվում է 10 անգամ քիչ աշխատանք, քան մեկ տոննա բրդի։

Օգտագործելով գիտության ու տեխնիկայի ակնհայտ նվաճումները, պետք է ստեղծել ժողովրդական տնտեսության և, առաջին հերթին, արդյունաբերության այնպիսի կառուցվածք, որը հնարավորություն տա արագ բարձրացնելու հասարակական արտադրության արդյունավետությունը։

Սոցիալիստական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար մեր երկրում այժմ իրականացվում են հետևյալ միջոցառումները։ Նախ՝ գերազանց տեմպերով զարգանում են արտադրության առաջադիմական ճյուղերը, անընդհատ կատարելագործվում նոր տեխնիկան ու տեխնոլոգիան, բարելավվում է թողարկվող արտադրանքի որակը, բարձրանում արտադրական հիմնական ֆոնդերի մեկ միավորին ընկնող արտադրանքի քանակը՝ նվազագույն կապիտալ ծախսումներով։

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ներկա էտապում արդյունաբերության առաջադիմական ճյուղերն են՝ էլեկտրաէներգետիկան, քիմիական արդյունաբերությունը և մեքենաշինությունը, որոնք որոշում են երկրի տեխնիկական դեմքը։

Տեխնիկական առաջադիմության հիմքը ներկայումս ամբողջ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացումն է. կոմունիստական հասարակության էկոնոմիկայի կառուցման կմախքն է այն,— ասված է պարտիայի ծրագրում։ Ժողովրդական տնտեսության համատարած էլեկտրիֆիկացումը հասարակա-

կան աշխատանքի արտադրողականության բարձրացման ամենակարևոր ուղին է, քանի որ այն մեծ հնարավորություններ է ընձեռում՝ ձեռքի աշխատանքը մեքենայականով փոխարինելու։ Երկրում թողարկվող էլեկտրաէներգիայի մեծ մասն օգտագործվում է գործարանների, ֆաբրիկաների մեքենաները, հաստոցները, ապարատները շարժման մեջ դնելու համար։ Թեպետ ժողովրդական տնտեսության գլխավոր հեռանկարի ամբողջ տևողության ընթացքում աճելու է այդ նպատակներով կիրառվող էլեկտրաէներգիան, սակայն դրա սպառման հաշվեկշռում բարձրանալու է տեխնոլոգիական նպատակներով ծախսվող էլեկտրաէներգիայի տեսակարար կշիռը։ Էլեկտրաէներգիան լայնորեն կկիրառվի քիմիական արդյունաբերության մեջ ընդհանրապես, պլաստմասսաների, սինթետիկ նյութերի, ազոտի և քիմիական մի շարք նոր նյութերի արտադրության մեջ՝ մասնավորապես։

Նկատի ունենալով էլեկտրաէներգիայի վիթխարի նշանակությունը, նրա արտադրության գերազանց տեմպեր են նախանշված 1965 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման պլանով։ Այն դեպքում, երբ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքն ավելանալու է 8,1 տոկոսով, էլեկտրաէներգիան կաճի 12,5 տոկոսով։ 1965 թվականին ՍՍՌՄ-ում կարտադրվի 510 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Էլեկտրաէներգիայի գործադրությունը հսկայական հեղաշրջիչ ազդեցություն է գործում արդյունաբերության բոլոր ճյուղերի և ժողովրդական տնտեսության ողջ կառուցվածքի վրա. ուժային ապարատներում ավելանում է էլեկտրամոտորների բաժինը և դրա հիման վրա բարձրանում է առաջինների օգտակար գործողության գործակիցը։ Էլեկտրաարդյունաբերությունն սպառում է մեծ մասշտաբներով հատուկ պողպատներ, գունավոր մետաղներ, մեկուսիչ նյութեր և այլն, դրանով իսկ փոխելով ծանր արդյունաբերության ճյուղային կառուցվածքը։

Հաշվի առնելով էլեկտրաէներգիայի այդ դերը, նրա արտադրության տընտեսական արդյունավետությունը պետք է որոշվի ոչ միայն արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ նրա տեսակարար կշռով կամ աշխատողների թվաքանակով, այլ նրանով, թե ինչ չափով է այն խթանում արտադրության տարբեր ճյուղերի զարգացմանը։

Էլեկտրիֆիկացիան բացառիկ դեր ունի գյուղատնտեսության ու տրանսպորտի զարգացման բնագավառում։ Ահա թե ինչու ՍՍՌՄ ժողովրդական տընտեսության 1965 թվականի զարգացման պլանում գյուղատնտեսության հետագա վերելքի նպատակով նախատեսվում է էլեկտրաէներգիայի սպառումը այդ ասպարեզում ավելացնել 21 տոկոսով։ Գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման կուրսը, որը շարունակվելու է նաև առաջիկա հնգամյա պլանով (1966—1970), կբարձրացնի գյուղատնտեսական աշխատանքների էներգազինվածությունը, այն կդարձնի ինդուստրիալ աշխատանքի մի ձև և կնպաստի քաղաքի ու գյուղի էական տարբերությունների վերացմանը։

Էլեկտրաէներգիայի արտադրության մասշտաբների ընդլայնումը բնավ էլ չի նշանակում, թե այն կարելի է ծախսել ցանկացած ձևով ու չափերով։ Ժողովրդական տնտեսության՝ էլեկտրաէներգիայի պահանջները լավագույն ձևով բավարարելու և էլեկտրաէներգիայի սպառման բալանսի ռացիոնալ կառուցվածք ունենալու համար անհրաժեշտ է էլեկտրաէներգիայի տնտեսում։ Ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պլանով հատուկ ուշադրություն է նվիրվում այդ հարցին։ Սույն տարվա հունվարի մեկից սահ-



մանված կարգի համաձայն, եթե ձեռնարկությունները էլեկտրաէներգիայի գերածախս են տալիս, ապա առաջիկա 10 օրվա ընթացքում այն պետք է կոմպենսացնեն, հակառակ պարագայում կվճարեն հնգապատիկ։ Էլեկտրաէներգիայի ծախսման նորմաները, նախորդ տարվա համեմատությամբ, իջնելու է 1,4 տոկոսով, որը հնարավորություն կտա տնտեսելու մոտ 5 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։

Ժողովրդական տնտեսության կառուցվածքի հետագա բարելավման գործում խոշոր նշանակություն ունի ժողովրդական տնտեսության քիմիացումը։ Ժամանակակից գիտությունն անսահման հնարավորություններ ընձեռեց՝ ստեղծելու սինթետիկ նյութերի նոր տեսակներ, այդ թվում այնպիսիք, որոնք մեծ առավելություններ ունեն մի շարք բնական նյութերի համեմատությամբ։ Սինթետիկ մանրաթելերի, պլաստմասսաների, սինթետիկ կաուչուկի արտադրության մասշտաբների ընդլայնումը էապես փոխեց արդյունաբերության մի շարք ճյուղերի հումքային բազայի բնույթը։ Տեքստիլ, կոշկեղենի արդյունաբերությունը և արդյունաբերության մի շարք այլ ճյուղեր ստացան շատ էժան հումք, որի ռեսուրսներն անսահման են։ Շինարարությունը, մեքենաշինությունը, տարային տնտեսությունը, կաթի արդյունաբերությունը և այլ ճյուղեր օգտագործում են բոլորովին նոր տեսակի նյութեր՝ պլաստմասսաներ։

Բացառիկ է քիմիայի դերը գյուղատնտեսության զարգացման՝ բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման գործում։ Հաշվի առնելով այդ, 1958 թվականից նախատեսվեց քիմիական արդյունաբերության արագացած զարգացում։ Բավական է ասել, որ յոթնամյակի անցած տարիներին ՍՍՌՄ քիմիական արդյունաբերության կապիտալ ներդրումների ծավալը մոտ երկու անգամ մեծ էր, քան սովետական իշխանության անցած 40 տարիներին։ Կառուցվեցին ու գործարկվեցին քիմիական արդյունաբերության բազմաթիվ ձեռնարկություններ։ Քիմիական արդյունաբերությունն ավելի արագ է զարգանալու այս տարի։ Անցյալ տարիների համեմատությամբ մեծ չափերով կավելանան քիմիական արտադրանքի հիմնական տեսակները, հատկապես գյուղատնտեսության և ժողովրդական սպառման առարկաների արտադրության համար։ Նախատեսված է քիմիական արդյունաբերության արտադրանքն ընդհանուր առմամբ ավելացնել 15 տոկոսով, այդ թվում հանքային պարարտանյութերի արտադրությունը՝ 31, բույսերի պաշտպանության քիմիական միջոցներինը՝ 38 տոկոսով։ Քիմիական արդյունաբերության արագ զարգացման նպատակով այս տարի ներդրվում է 2,25 միլիարդ ռուբլի, որը 13 տոկոսով ավելի է նախորդ տարվա ներդրումից։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական վերակառուցման հիմքը մեքենաշինությունն է, որի բաժինը արդյունաբերական արտադրության մեջ գնալով մեծանում է։ Ներկայումս մեքենաների ու սարքավորումների արտադրության մեջ աշխատում են արդյունաբերական բանվորների մոտ $^1/_3$-ը։

Արտադրական պրոցեսների հետագա մեքենայացումն ու ավտոմատացումը նոր խնդիրներ են հարուցում մեքենաշինության զարգացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ձևավորման պրոցեսում նրա դերի առավել բարձրացման գործում։ Արդյունաբերության առաջատար ճյուղերը անհրաժեշտ սարքավորումներով ապահովելու նպատակով 1965 թվականին քիմիական ձեռնարկությունների սարքավորումների թողարկումն ավելանալու է 22,

ավտոմատ և կիսավտոմատ ձուլող մեքենաների արտադրությունը՝ 20 տոկոսով, ծրագրային կառավարող հաստոցներինը՝ 2 անգամ և այլն: Աշխատանքի նոր, ժամանակակից գործիքներ են անհրաժեշտ մեքենաշինությանը: Առանց բազմատեսակ հարմարանքների, այդ թվում չափիչ վերահսկիչ ռադիոէլեկտրոնային ապարատների արտադրության անհնար կլիներ ավտոմատացումը: Մեքենաշինության հետագա զարգացման հիման վրա կիրականացվի արտադրության կոմպլեքսային մեքենայացումը լայն մասշտաբներով՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության գլխավոր հեռանկարի ժամանակամիջոցում:

Ժողովրդական տնտեսության կառուցվածքի հետագա բարելավումը մեծ չափերով պայմանավորված է նրանով, թե ժողովրդական տնտեսության մեջ որ չափով կնորանան կոնստրուկցիոն նյութերը, մի բան, որ կատարվում է մեր աչքի առջև, զարգացած ինդուստրիալ երկրներում: Այսպես, օրինակ, հետպատերազմյան տարիներին ՍՍՌՄ-ում, ինչպես և մի շարք երկրներում, արմատապես փոխվեց ամբողջ արդյունաբերական արտադրության և պողպատի ձուլման հարաբերակցությունը՝ հօգուտ առաջինի, որն արդյունք է այն բանի, որ ալյումինը դուրս է մղել պողպատին: Հեռանկարում, քիմիայի զարգացման, պլաստմասսաների արտադրության առավել աճման շնորհիվ ավելի կփոխվի նշված հարաբերակցությունը: Պողպատի հարաբերական պակասեցման հիմնական ու վճռական պատճառն այն է, որ գնալով կրճատվում է պողպատի ծախսը կարողությունների և արդյունքի միավորի վրա: Էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ այժմ գնալով մեծանում է տուրբինների, գեներատորների տրանսֆորմատորների հզորությունը, դրանով իսկ պակասում է հզորության միավորի վրա ծախսվող պողպատը: Մեծ չափով կրճատվում է մետաղի ծախսը դիզելաշինության մեջ: Եթե մոտիկ անցյալում մեկ ձիաուժ հզորության վրա ծախսվում էր 500 կիլոգրամ մետաղ, այժմ ծախսվում է ընդամենը 2 կիլոգրամ:

Չնայած տեխնիկայի զարգացման և, մասնավորապես, քիմիական նոր նյութերից սև մետաղների փոխարինիչների ստեղծման, դեռ շատ երկար ժամանակ մեքենաշինության, շինարարության և այլ ճյուղերի համար որպես կոնստրուկտիվ նյութ մնալու են սև մետաղները: Ահա թե ինչու ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության և, հատկապես, արդյունաբերության կառուցվածքում իր կարևոր տեղն ունի սև մետաղաձուլությունը: Հաշվի առնելով մետաղաձուլության նշանակությունը՝ այս տարի նախատեսվում է ձուլել 55,7 տոննա չուգուն, 90 միլիոն տոննա պողպատ: Դրա հետ միասին կթողարկվեն առավել խնայողաբեր գլանվածքներ, որի շնորհիվ կիջնի մետաղի տաշեղի տեսակարար կշիռը և կթեթևանա մեքենաների կշիռը:

Ժողովրդական տնտեսության կառուցվածքի բարելավման հարցերից շատ կարևոր է արդյունաբերության և գյուղատնտեսության միջև ճիշտ հարաբերակցություն սահմանելը: Այդ հարաբերակցության մասին խոսելիս անհրաժեշտ է հաշվի առնել տնտեսական այն նոր երևույթները, որոնք տեխնիկական հեղաշրջման, գիտության ու տեխնիկայի զարգացման արգասիքն են:

Տեխնիկական առաջադիմության շնորհիվ գյուղատնտեսական արտադրության մի շարք տեսակներ անցնում են արդյունաբերությանը: Այդ երևույթը աշխատանքի հասարակական բաժանման խորացման արգասիք լինելով, առանձնահատուկ կերպով դրսևորվեց հետպատերազմյան տարիներին, գիտատեխնիկական առաջադիմության անմիջական ներգործությամբ: Փոխվեցին



նաև արդյունաբերության ու գյուղատնտեսության կապերը: Այժմ արդյունա-
բերությունը գյուղատնտեսությանը մատակարարում է ավելի ու ավելի շատ
հանքային պարարտանյութեր, էներգետիկ կարողություններ, գյուղատնտեսա-
կան ինվենտարի ամբողջ կոմպլեքս՝ հողի մշակման, բերքահավաքի, անասա-
նապահության աշխատանքների մեքենայացման, թունաքիմիկատներ՝ վնասա-
տուների դեմ պայքարելու համար և այլն: Արդյունաբերությունն այժմ իր վրա
է վերցնում այնպիսի ֆունկցիաներ, որոնք ոչ վաղ անցյալում բացառապես
գյուղատնտեսությանն էին պատկանում: Արդյունաբերությանն են անցնում
գյուղատնտեսական արտադրանքի վերամշակումը՝ ընդհուպ սպառողին հաս-
ցնելը: Էլևատորները, բամբակազտիչ և յուղամշակման գործարանները ա-
ռանց նախնական վերամշակման ընդունում են հացահատիկ, բամբակ, սոյա,
լոբազգիներ և այլն: Պտուղների և բանջարեղենի զգալի մասը սպառողին է
հասնում արդյունաբերական վերամշակումից հետո:

Գյուղատնտեսության մեջ ինդուստրիալ մեթոդների ավելի լայն կիրառու-
մը արտադրական բազմաթիվ պրոցեսներին տալիս է արդյունաբերական
բնույթ, որը մեծ չափով բարձրացնում է աշխատանքի արտադրողականությու-
նը: Այսպիսով, գնալով պակասում է ձեռքի աշխատանքը գյուղատնտեսության
մեջ, որի մեքենայացումը հանգեցնում է հողագործների թվի կրճատման:

Ժողովրդական տնտեսության կառուցվածքի բարելավման համար անհրա-
ժեշտ է, որ գյուղատնտեսության զարգացման տեմպերը առաջիկա տարիներին
համապատասխանեն արդյունաբերության զարգացման տեմպերին:

Ժողովրդի բարեկեցության բարձրացման պլանների կատարման համար
մեծ նշանակություն ունի գյուղատնտեսության ետ մնալու հաղթահարումը:
Չնայած վերջին տարիներին նյութական ու դրամական շատ միջոցներ ծախս-
վեցին գյուղատնտեսության զարգացման գործում, բայց բավարար արդյունք
չստացվեց՝ գյուղատնտեսության ղեկավարման գործում թույլ տրված սխալնե-
րի, մասամբ էլ 1963 թվականի անբարենպաստ կլիմայական պայմանների
հետևանքով: Գյուղատնտեսության զարգացման տեմպերն արագացնելու նպա-
տակով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պլա-
նով նախատեսվում է ամենից առաջ ամրապնդել գյուղատնտեսության նյու-
թատեխնիկական բազան: Այս տարի գյուղն ստանալու է՝ 240 հազար տրակ-
տոր, 60 հազար կոմբայն և 1,5 միլիարդ ռուբլու գյուղատնտեսական այլ մե-
քենաներ:

Քիմիացումը խիստ կարևոր միջոց է գյուղատնտեսության ետ մնալը լիկ-
վիդացնելու համար: Նախատեսված է 1965 թվականին կոլտնտեսություններին
ու սովխոզներին մատակարարել 29 միլիոն տոննա հանքային պարարտա-
նյութ, որը 31 տոկոսով ավելի է անցյալ տարվանից: Շատ բան է արվելու
ոռոգման ուղղությամբ: Այդ նպատակով նախատեսված է ուժերն ու միջոց-
ները կենտրոնացնել Հյուսիս-Ղրիմյան, Կարակումի ջրանցքների, Սովյալ տա-
փաստանի և մի շարք այլ ոռոգիչ սիստեմների շինարարության վրա: 1965
թվականի պլանով 5,7 միլիարդ ռուբլի կտրամադրվի գյուղատնտեսության
զարգացմանը: ՍՄԿՊ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումից
հետո իրականացվեցին տնտեսական ու կազմակերպական միջոցառումներ,
որոնք դրական ներգործություն կունենան գյուղատնտեսության զարգացման

վրա։ Կառավարության որոշմամբ վերացել են մինչ այդ գոյություն ունեցող չհիմնավորված սահմանափակումները՝ կոլտնտեսականների ու բանվոր ծառայողների օժանդակ տնտեսության նկատմամբ։

* * *

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության կառուցվածքը փրենից ներկայացնում է ոչ միայն նրա ճյուղերի քանակական հարաբերակցությունների, այլև՝ ՍՍՌՄ-ի մեջ միավորված ռեսպուբլիկաների միջև աշխատանքի հասարակական բաժանման հիման վրա ձևավորված տերիտորիալ համամասնությունների մի սիստեմ։ Կոմունիստական պարտիայի տնտեսական քաղաքականության իրականացման գործոնը միութենական ռեսպուբլիկաներից յուրաքանչյուրում ժողովրդական տնտեսության այնպիսի կառուցվածք ստեղծելն է, որը հնարավորություն կընձեռի ռեսպուբլիկայի աշխատանքային ու նյութական ռեսուրսների խելացի օգտագործմամբ հասնելու տնտեսական բարձր արդյունավետության։ Այստեղից հետևում է, որ միութենական առանձին ռեսպուբլիկաների և ամբողջ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության կառուցվածքը նույնը լինել չեն կարող։ Տարբեր կառուցվածք կունենա նաև միութենական ռեսպուբլիկաներից յուրաքանչյուրի ժողովրդական տնտեսությունը, որը բխում է տվյալ ռեսպուբլիկայի նյութական ու աշխատանքային ռեսուրսներից։ ՍՍՌՄ տարբեր ռեսպուբլիկաներն ունեն իրենց յուրահատկությունները, որոնք և պայմանավորում են արտադրողական ուժերի զարգացման զանազան վարիանտներ, որոնցով որոշվում է յուրաքանչյուր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի տեղը ՍՍՌՄ էկոնոմիկայի միասնական սիստեմում։ Այսպես, օրինակ, Հայկական ՍՍՌ էկոնոմիկան աշխատանքի միութենական բաժանման մեջ արտացոլվում է բազմաթիվ տնտեսական ցուցանիշներում և, առաջին հերթին՝ նրա արդյունաբերության ճյուղային կառուցվածքում։

Սոցիալիստական շինարարության անցած տարիներին Հայկական ՍՍՌ-ն իր ինդուստրիալ զարգացման մակարդակով դարձավ ՍՍՌՄ տնտեսական ամենազարգացած շրջաններից մեկը՝ ինդուստրիայի ժամանակակից գլխավոր ճյուղերով։ Արդյունաբերության գլխավոր ճյուղերից Հայաստանում առայժմ չկան վառելիքի արդյունաբերություն և լայն մասշտաբներով կազմակերպված սև մետաղաձուլություն։ Մեր ռեսպուբլիկայում զարգացած են արդյունաբերության մյուս ճյուղերը, ինչպես՝ գունավոր մետաղաձուլությունը, էլեկտրա և ջերմային էներգիայի արտադրությունը, մեքենաշինությունը և մետաղամշակությունը, քիմիական արդյունաբերությունը, շինանյութերինը, անտառային ու փայտամշակման, թեթև, սննդի արդյունաբերությունը։ Դրանցից յուրաքանչյուրը որոշակի տեղ ունի ռեսպուբլիկայի արդյունաբերության և ամբողջ ժողովրդական տնտեսության կառուցվածքում։

Ահա արտադրության միջոցների արտադրության («Ա» խմբի) և սպառման առարկաների արտադրության («Բ» խմբի) տեսակարար կշիռները (տոկոսով) Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ։



| Տարիներ | Ամբողջ արդյունքը | «Ա» խումբ | «Բ» խումբ |
|---|---|---|---|
| 1913 | 100 | 29 | 71 |
| 1928 | 100 | 24 | 76 |
| 1932 | 100 | 30 | 70 |
| 1940 | 100 | 41 | 59 |
| 1950 | 100 | 53 | 47 |
| 1960 | 100 | 64 | 36 |
| 1963 | 100 | 67 | 33 |

Եթե նկատի ունենանք, որ նըշված ժամանակամիջոցում Հայաստանի արդյունաբերությունն, ամբողջապես վերցրած, ավելացել է 89,3 անգամ, իսկ արդյունաբերության «Ա» խումբը՝ 189, ապա պարզ կլինի, որ ո՛չ միայն բարելավվել է արդյունաբերության ճյուղային կառուցվածքը, այլ առաջընթաց մեծ թռիչք է կատարվել։

1965 թվականին և հետագայում էլ շարունակվելու է Հայաստանի արդյունաբերության զարգացումը առավել բարձր տեմպերով։ Այսպես, եթե 1965 թվականին ՍՍՌՄ արդյունաբերությունն աճելու է 8,1 տոկոսով, ապա Հայկական ՍՍՌ-ինը կաճի 12 տոկոսով։ Առավել բարձր տեմպերով է զարգանալու ռեսպուբլիկայի մեքենաշինությունը (15,4 տոկոսով)։ Հայաստանի արդյունաբերության և ամբողջ ժողովրդական տնտեսության կառուցվածքի բարելավմանը վերջին տասնամյակում նպաստել է արդյունաբերության ճյուղային կառուցվածքում մեքենաշինության տեսակարար կշռի բարձրացումը։ Այսպես, եթե 1950 թվականին նրա տեսակարար կշիռը կազմում էր 5,8 տոկոս, ապա ներկայումս 20 տոկոսից ավելի է։ Եթե մեքենաշինության համախառն արտադրանքը կազմում է արդյունաբերության համախառն արտադրանքի 20 տոկոսը, ապա այդ բնագավառում աշխատողները կազմում են ամբողջ արդյունաբերության մեջ զբաղվածների մոտ 30 տոկոսը։ Ակնհայտ է մեքենաշինության աշխատատարությունը։

Հայաստանի ժողովրդական տնտեսության կառուցվածքի ռացիոնալ չափանիշներից է նաև այն, թե տնտեսության տվյալ կառուցվածքը ո՛ր չափով է ապահովում ռեսպուբլիկայի աճող երիտասարդության լրիվ զբաղվածությունը։ Վերջին տասնամյակում, երբ Հայաստանի պարտիայի Կենտրոնական կոմիտեն և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետը վերցրին արդյունաբերության աշխատատար ճյուղերի արագընթաց զարգացման կայուն կուրս, այդ հնարավորություն ընձեռեց այլ հարցերի լուծման հետ միասին՝ երիտասարդությանը ներգրավել արտադրողական աշխատանքի մեջ։ Երիտասարդության լրիվ զբաղվածությունն ապահովելու նպատակին է ծառայում ո՛չ միայն աշխատատար ճյուղերի առաջանցիկ զարգացումն ընդհանրապես, այլև այդ ճյուղերի ձեռնարկությունների տեղաբաշխումը ռեսպուբլիկայի տերիտորիայի վրա։ Դրանով պետք է բացատրել այն իրողությունը, որ, եթե հինգերորդ հնգամյակի վերջում ռեսպուբլիկայի մեքենաշինական և մետաղամշակման ձեռնարկությունները կենտրոնացած էին բացառապես Երևան քաղաքում, ապա այժմ Երևանի տեսակարար կշիռը զգալիորեն իջել է, և առաջացել են մեքենաշինական ու մետաղամշակման ձեռնարկություններ՝ Լենինականում, Կիրովականում, Հրազդանում, Արթիկում, Մարալիկում, Գորիսում և այլ շրջաններում։ Մեքենաշինությունը և, առաջին հերթին, ճշգրիտ մեքենաշինությունը, պետք է հանդիսանա ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման ուղղություններից մեկը։

Մեքենաշինության հետ միասին արագընթաց տեմպերով է զարգանալու քիմիական արդյունաբերությունը և, մասնավորապես, քիմիական արտադրանքի կարևոր տեսակների արտադրությունը։ Պլաստմասսաների և սինթետիկ

նյութերի արտադրությունը 1965 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, աճելու է 41 տոկոսով, ծծմբաթթվինը՝ 2,6 անգամ և այլն: Էապես փոխվում են ռեսպուբլիկայի մեծ քիմիայի արտադրանքի գլխավոր տեսակների արտադրման տեխնոլոգիական սխեմաները, որը հնարավորություն կտա իջեցնելու քիմիական արդյունաբերության էներգատարության աստիճանը:

Դրա հետ միասին փոխվելու է ժողովրդական տնտեսության էներգետիկ բալանսի կառուցվածքը: Այդ փոփոխությունն ընթանալու է էլեկտրաէներգիայի բաժնի պակասեցման ուղղությամբ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրության մեջ էլ խիստ պակասելու է հիդրոէներգիայի տեսակարար կշիռը, որն այս տարվա վերջին կազմել է ընդամենը 37 տոկոս:

Հայաստանի ժողովրդական տնտեսության կառուցվածքի հետագա բարելավման ուղղությամբ մեծ աշխատանքներ են կատարվելու առաջիկա հնգամյակում (1966—1970 թթ.): Հնգամյակի առանձնահատկություններից մեկը՝ ամբողջապես վերցրած արդյունաբերության առավել բարձր տեմպերով զարգացումն է: Արդյունաբերության համախառն արտադրանքը հինգ տարվա ընթացքում կավելանա 80—85 տոկոսով (տարեկան 12,5—13 տոկոս միջին աճ): Այդ ամենից առաջ կնշանակի արտադրության մասշտաբների հետագա ընդլայնում: Սակայն այդ ընդլայնումն արդյունաբերության բոլոր ճյուղերի համար միևնույն չափերով չի կատարվի: Տեղի կունենա առաջատար ճյուղերի առավել զարգացում, որի շնորհիվ հնգամյակի վերջում կստեղծվի արդյունաբերության ճյուղային նոր կառուցվածք, որը մի կողմից կխթանի տեխնիկական առաջադիմությունը, մյուս կողմից էլ ռեսպուբլիկայում կապահովի լրիվ զբաղվածություն:

Հետևողականորեն կենսագործելով ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մարտյան (1965 թ.) պլենումի որոշումները, էապես կբարձրանան գյուղատնտեսության զարգացման տեմպերը և կփոխվի հարաբերակցությունն արդյունաբերության և գյուղատնտեսության միջև:

Ժողովրդական տնտեսության կառուցվածքի բարելավմանն ուղղված բոլոր միջոցառումների իրականացումը կարագացնի տնտեսական զարգացման թափը և կապահովի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը:

Ա. ԱՆՏՈՆՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ՍՈՒԲՅԵԿՏԻՎ ԵՎ ՕԲՅԵԿՏԻՎ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Օբյեկտիվը և սուբյեկտիվը, նյութականը և իդեալականը հասարակական կյանքում մշտապես ամենասերտ փոխադարձ կապի ու պայմանավորվածության մեջ են գտնվում և դրանով իսկ հակադրությունների մի դիալեկտիկական միասնություն են կազմում: Դրանք չի կարելի ո՛չ նույնացնել, ո՛չ էլ բացարձակապես հակադրել միմյանց, ինչպես այդ անում են սուբյեկտիվ իդեալիստները և ֆատալիստները: Դրանք դիալեկտիկական միասնության մեջ են և դրանց միջև անընդհատ տեղի է ունենում դիալեկտիկական փոխներթափանցում, մեկը վերածվում է մյուսի, օրինակ, սուբյեկտիվը՝ օբյեկտիվի:

Ներկա դարաշրջանում, երբ աշխարհի նորանոր ժողովուրդներ թևակոխում են սոցիալիզմի ուղին, երբ սոցիալիզմի և կոմունիզմի գաղափարներն արագ տեմպերով վերածվում են ռեալ կերպով գոյություն ունեցող մարդկային հասարակության՝ սոցիալիզմի և կոմունիզմի, սուբյեկտիվի վերածվելը օբյեկտիվի, իդեալականի վերածվելը նյութական ռեալության ակտուալ նշանակություն ունի: Դա, անշուշտ, համապարփակ և համակողմանի պրոբլեմ է: Սակայն տվյալ հոդվածում մենք ընդհանուր գծերով այն կքննենք միայն մի տեսանկյունով, թե դա ինչ դեր է խաղում մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով աշխարհը վերափոխելու, կոմունիստական հասարակարգ կառուցելու գործում:

## I

Բացահայտելով օբյեկտիվի և սուբյեկտիվի կատեգորիաների դիալեկտիկական կապը և փոխադարձ կախումը, Վ. Ի. Լենինը գրում էր. «Սուբյեկտիվը օբյեկտիվից տարբերվում է, բայց այդ էլ իր սահմաններն ունի» (Երկեր հ. 38, էջ 110): Մի այլ տեղում Վ. Ի. Լենինը կրկին ընդգծում է օբյեկտիվի և սուբյեկտիվի թե՛ տարբերությունը և թե՛ միասնությունը: Դեռ ավելին, նա ասում է, որ սուբյեկտիվությունը և օբյեկտիվությունը մի որոշ իմաստով «միևնույն բանն են» և դրա հետ մեկտեղ «միևնույնը չեն»: Վ. Ի. Լենինը գրում էր. «Այն միտքը, թե իդեալականը փոխարկվում է ռեալականի, խորն է՝ շատ կարևոր է պատմության համար: Բայց մարդու անձնական կյանքում ևս տես-

նում ենք, որ այստեղ ճշմարիտ շատ բան կա: Վուլգար մատերիալիզմի դեմ: NB: Իդեալականի տարբերությունը նյութականից նույնպես բացարձակ չէ, չափազանց չէ» (Երկեր, հ. 38, էջ 130):

Վ. Ի. Լենինն ուսուցանում է, որ միայն իմացաբանության շրջանակներում մենք կարող ենք խոսել կեցության և մտածողության, նյութականի և իդեալականի, սուբյեկտիվի և օբյեկտիվի բացարձակ հակադրության մասին: Այդ հակադրությունը պետք է հասկանալ այն իմաստով, թե ժամանակի տեսակետից իր նշանակությամբ դրանցից որն է առաջնայինը և որոշիչը: Այդ իմացաբանական շրջանակներից դուրս ոչ մի բացարձակ հակադրություն չկա նյութականի և իդեալականի միջև:

«Երբ մենք գործածում ենք օբյեկտիվ և սուբյեկտիվ, նյութական և հոգեկան (կամ իդեալական) բառերը,— գրում է ակադեմիկոս Թոդոր Պավլովը,— մենք երբեմն, թեպետև աննկատելիորեն, դրանց մեջ այն իմաստն ենք դնում, թե օբյեկտիվի և սուբյեկտիվի, նյութականի և հոգեկանի միջև անանցանելի վիհ է առեղծվել: Այնպես ես կարծում, թե սուբյեկտիվը և հոգեկանը (իդեալականը) կարծես թե մետաֆիզիկորեն բացարձակապես տարբերվում են օբյեկտիվից և նյութականից, մետաֆիզիկորեն բացարձակապես հակադրվում են դրանց և ոչ մի դեպքում ու չափով, օգտագործելով Լենինի տերմինը, չեն փոխարկվում դրանց: Դրանց միջև, իհարկե, կա և չի կարող չլինել որակական տարբերություն» («Ընտիր փիլիսոփայական երկեր», հ. 2, էջ 444, ռուս.): Այսպիսով, նյութականի և իդեալականի, օբյեկտիվի և սուբյեկտիվի միջև մենք տեսնում ենք փոխադարձ կապ, անցում, փոխներթափանցում:

Դրանց փոխներթափանցումը չի նշանակում, թե միտքը դառնում է նյութ կամ թե մտքից, սուբյեկտիվությունից (սուբյեկտիվից) առաջանում է մատերիա, բնություն: Լենինը ուսուցանում էր, որ իդեան. իդեալականը իրենից ներկայացնում է մարդու թե՛ իմացություն, թե՛ ձգտում և թե՛ ցանկություն: Երբ իրար են միանում իմացությունը (գիտակցականությունը) և գործողությունը (գործունեությունը), այն ժամանակ գիտական գաղափարները նյութական, առարկայական ռեալության են վերածվում: Այլ կերպ ասած, սուբյեկտիվը վերածվում է օբյեկտիվի միայն այն դեպքում, երբ մարդիկ իրենց պրակտիկ գործունեության մեջ իրացնում են իրենց գաղափարները, իրենց մտքերը, տեսական դրույթները, սկզբունքները: Բայց դրա համար պետք է լինեն օբյեկտիվ պայմաններ, որոնք որոշում են մարդկանց գործունեությունը՝ գաղափարները նյութական-ռեալականի վերածելու ասպարեզում:

Այսպիսով, օբյեկտիվի փոխարկվելը սուբյեկտիվի, ինչպես նաև դրա հակառակ պրոցեսը խիստ բազմազան բնույթ ունեցող պրոբլեմ է: Այդ պրոբլեմի կողմերից մեկը, որի վրա մենք կանգ կառնենք շատ հակիրճ կերպով, արտաքին օբյեկտիվ աշխարհի առարկաների ու երևույթների, բնության և հասարակական կեցության ճանաչման պրոցեսի բուն իսկ դիալեկտիկան է:

Ընդգծելով իդեալականի և նյութականի, սուբյեկտիվի և օբյեկտիվի միասնությունը, Կ. Մարքսը Կապիտալի առաջին հատորի երկրորդ հրատարակության վերջաբանում գրում էր. «Իմ դիալեկտիկական մեթոդը ոչ միայն հիմնովին տարբեր է հեգելյանից, այլ նրա ուղղակի հակադրությունն է հանդիսանում: Հեգելի համար մտածողության պրոցեսը, որ նա իդեա անվան տակ նույնիսկ ինքնուրույն սուբյեկտի է փոխարկում, նրա լոկ արտաքին արտահայտությունը կազմող իրականի դեմիուրգն է: Ինձ համար, ընդհակառակը,



իդեալականն այլ բան չէ, քան եթե նյութականը, որը փոխադրվել է մարդկային գլուխը և այնտեղ կերպարանափոխվել» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր հ. 23, էջ 21, ռուս.):

Այստեղ Մարքսն ընդգծում է հատկապես իմացաբանական հանգամանքը, ցույց է տալիս, որ երբ մարդու գիտակցության մեջ արտացոլվում են առարկաները, երևույթները և պրոցեսները, «փոխադրվում են» նրա գլուխը, ապա դրանք նյութական, օբյեկտիվորեն գոյություն ունեցող առարկաներից մի որոշ չափով վերածվում են իդեալական առարկաների, իդեաների, տեսական դրույթների, գիտակցության: Այդ իդեաները, հասկացությունները, մտապատկերները օբյեկտիվորեն ռեալ իրերի, առարկաների, պրոցեսների, իրադարձությունների պատկերներն են:

Մտածողության պրոցեսը, մարդու գիտակցության մեջ հասարակության նյութական կյանքի պայմանների և կեցության արտացոլման պրոցեսը, չափազանց բարդ ու հակասական բնույթ ունի: Դա վերաբերում է անվերապահորեն նաև օբյեկտիվ կեցության վերածվելուն սուբյեկտիվ գաղափարի:

Գործածելով «սուբյեկտիվ գաղափար» տերմինը, մենք նկատի չունենք, որ դա կտրված է ռեալ իրերից ու առարկաներից: Սուբյեկտիվ գաղափարը մենք ըմբռնում ենք այն իմաստով, որ դա օբյեկտիվ աշխարհի սուբյեկտիվ պատկերն է և հիմնականում համընկնում է այդ աշխարհի առարկաներին ու երևույթներին:

Մարդ որքան ավելի ստույգ կերպով է արտացոլում աշխարհը, նրա միտքը որքան ավելի մեծ չափով է համընկնում աշխարհի առարկաներին ու երևույթներին, այնքան նա ավելի խոր կերպով է ճանաչում օբյեկտիվ ռեալությունը, նրա ծագման, զարգացման ու փոփոխման օրինաչափությունները: Այլ կերպ ասած, եթե մարդ աշխարհը որսում, ընկալում ու ըմբռնում է այնպես, ինչպես նա գոյություն ունի ինքնին, ապա դա նշանակում է, որ իմացության պրոցեսում սուբյեկտիվն անցնում է օբյեկտիվի:

Իր «սուբյեկտիվ իմացության» (Լենին) խորացման ուղիով, օբյեկտիվ աշխարհի նորանոր կողմերի, գաղտնիքների բացահայտման ուղիով մարդու և մարդկության կատարած յուրաքանչյուր առաջընթաց քայլը մի քայլ է մարդու ազատության խորացման ու ընդլայնման գործում, մարդկային հասարակության կյանքում սուբյեկտիվ գործոնի դերի աճման հարցում:

Կոմունիստական հասարակության մարդը շրջապատող օբյեկտիվ աշխարհի ճանաչողության իր մակարդակով մի նոր, ավելի բարձր աստիճանի վրա է կանգնելու: Նա կլինի համակողմանիորեն զարգացած մարդ, լիովին ազատ անցյալի մնացուկներից, աշխարհի ֆանտաստիկ արտացոլման ամեն տեսակ տարրերից: Նրա համար բնորոշ կլինի աշխարհի ադեկվատ արտացոլումը: Բնության և հասարակության երևույթների ու օրենքների գիտականորեն ճշգրիտ արտացոլումը կլինի նրա ներքին համոզումը, այլ կերպ ասած, կմիաձուլվեն կոմունիստական հասարակական գիտակցությունը և անհատական գիտակցությունը: Երբ գիտական աշխարհայացքը, աշխարհի գիտական ճանաչումը ոչ թե անհատների, այլ կոմունիստական հասարակարգի միլիոնավոր աշխատավորների սեփականություն դառնա, այն ժամանակ նա կվերածվի հասարակական առաջադիմության է՛լ ավելի հզոր ուժի:

Դա նոր մեծագույն թռիչք կլինի անհրաժեշտության թագավորությունից դեպի ազատության թագավորություն: Մարդկային բանականությունը գիտա-

կան կանխատեսությամբ և բնության բազմազան հարստությունները նպատա-
կահարմար օգտագործելու իր հնարավորություններով կազմում է հասարակու-
թյան ռևոլյուցիոն վերափոխման մեծագույն գործոն։

Սուբյեկտիվ գիտակցությունը (գաղափարները, տեսությունները, հայացք-
ները), եթե այն ճշմարիտ և գիտական է, ո՛չ միայն թափանցում է օբյեկտիվու-
թյան մեջ, ո՛չ միայն բացատրում է աշխարհը, այլև վերստեղծում, կերտում
է այն։ Մարդն ստեղծում և վերստեղծում է նոր մարդկային բնություն և
նոր հասարակական կեցություն, որը, սակայն, գոյություն ունի մարդուց և
մարդկային գիտակցությունից անկախ։ Նա այդ ամենը ստեղծում է ոչ իր
անձնական քմահաճույքով, այլ հասարակական զարգացման օբյեկտիվ օրենք-
ներին լիովին համապատասխան։ Դա նշանակում է, որ մարդկանց գիտակից
ու կազմակերպված գործունեության, նրանց առաջավոր գաղափարների ու
տեսությունների ներգործությամբ փոփոխվում է հասարակական կյանքը,
հասարակական կեցությունը։ Մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, տիրա-
պետելով մասսաներին, այժմ հզոր նյութական ուժ են դարձել։ Մասսաները
դրանք վերածում են նյութական ուժի, մարմնավորում են դրանք գործերում,
դրանց համապատասխան կերտում են իրականությունը և վերափոխում աշ-
խարհը։

Վ. Ի. Լենինը հենց այդ իմաստով էլ ասում էր, որ մարդու գիտակցու-
թյունը ոչ միայն արտացոլում է օբյեկտիվ աշխարհը, այլև կերտում այն, այ-
սինքն՝ աշխարհը չի բավարարում մարդուն, և մարդը իր գործողություններով
վերափոխում է այն (տե՛ս Երկեր, հ. 38, էջ 260—261)։

Սուբյեկտիվի վերածվելն օբյեկտիվի ունի իր կոնկրետ-պատմական
առանձնահատկությունները։ Այդ պրոցեսի բնույթը պետք է հասկանալ այն
իմաստով, որ սուբյեկտիվի ու օբյեկտիվի միասնությունն ու փոխներթափան-
ցումը միատեսակ կերպով չի տեղի ունենում հասարակական-պատմական
բոլոր պայմաններում։ Այդ բնույթը կախված է ինչպես օբյեկտիվ պայման-
ների որակական առանձնահատկություններից, այնպես էլ սուբյեկտիվ գոր-
ծոնի հասունության աստիճանից և որակական հատկություններից։

Սովետական մարդիկ, բոլոր սոցիալիստական երկրների ժողովուրդները
իրենց երկրների սոցիալական կյանքը նորոգում ու վերստեղծում են մարք-
սիզմ-լենինիզմի գիտական տեսություններին լիովին համապատասխան։ Գի-
տական կոմունիզմի գաղափարները ժողովրդական մասսաների գիտակից
գործունեության շնորհիվ մարմնավորվում են որակապես նոր հասարակական
ռեալության՝ սոցիալիզմի ու կոմունիզմի մեջ։

Վ. Ի. Լենինն իր «Ինչպես կազմակերպել մրցությունը» աշխատության
մեջ գրում էր, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից հետո
«հասել է հենց այն պատմական մոմենտը, երբ տեսությունը վերածվում է
պրակտիկայի, կենդանանում է պրակտիկայով, ուղղվում է պրակտիկայով,
ստուգվում է պրակտիկայով» (Երկեր, հ. 26, էջ 503)։ Տեսության և պրակտի-
կայի, ժողովրդական մասսաների, պարտիայի, առանձին անհատների գիտե-
լիքների ու պրակտիկ գործունեության միասնության վերաբերյալ լենինյան
տեսությունը նշանակում է, որ մեր մարդիկ աշխարհը վերափոխում են
մարքս-լենինյան աշխարհայացքից բխող տեսական դրույթներին ու հետևու-
թյուններին լիովին համապատասխան։ Մեր աչքի առջև ռեալություն են դառ-
նում ամենաֆանտաստիկ երազանքները, մարդկության լավագույն մտածողնե-



րի իդեալները՝ կոմունիստական ապագայի մասին։ Նոր կյանք ստեղծող ժողո-
վրրդի պրակտիկ գործերում մարքսիզմ-լենինիզմի գաղափարները միս ու արյուն
են դառնում, նյութականանում են և վերածվում մարդկային հասարակության
ավելի կատարյալ կենսապայմանների առարկայական ռեալության։ Եթե սո-
ցիալիզմը կամ կոմունիզմը երազանքից, գիտական տեսությունից կամ գիտա-
կան կանխատեսությունից վերածվել է ռեալ հասարակության, որը ներկա-
յումս կառուցվում է շատ երկրներում, դա էլ հենց գաղափարի անցումն է դե-
պի առարկան, սուբյեկտիվի անցումը օբյեկտիվ նյութական ռեալության։

Ֆ. Էնգելսը կանխատեսում էր, որ միայն ապագա սոցիալիստական հա-
սարակության մեջ մարդկանց գաղափարները հիրավի կստեղծեն կենսապայ-
մաններ նրանց համար։ Հասարակական զարգացման նախասոցիալիստական
ամբողջ պատմության ժամանակաշրջանում այդ մասին խոսք անգամ լինել
չէր կարող, որովհետև այդ ժամանակ մեծամասնության ցանկությունները չէին
կարող իրականանալ։ Էնգելսը գրում էր, որ այն հայացքը, թե մարդկանց գա-
ղափարներով ու պատկերացումներով են ստեղծվում նրանց կենսապայման-
ները, «կարող է իրականությանը համապատասխանել միմիայն քիչ թե շատ
հեռավոր ապագայում, որչափով որ մարդիկ վաղօրոք կիմանան հարաբերու-
թյունների փոփոխության պատճառով առաջացած հասարակարգի (sit venia
vereb) փոփոխության անհրաժեշտությունը, և կցանկանան այդ փոփոխու-
թյունը, նախքան այն նրանց վզին կփաթաթվի, նրանց գիտակցությունից ու
կամքից անկախ» (Անտի-Դյուրինգ, Հայպետհրատ, 1952, էջ 444—445)։

Սոցիալիզմի պայմաններում, երբ արմատապես փոխվել և որակապես
նոր, ավելի բարձր աստիճանի են հասել օբյեկտիվ պայմաններն ու սուբյեկ-
տիվ գործոնը, սուբյեկտիվի վերածվելը օբյեկտիվի նույնպես որակապես նոր
բնույթ է կրում։

Կոմունիստական ֆորմացիայում առաջին անգամ ոչ միայն առանձին ան-
հատներ, այլ ամբողջ հասարակությունը պլանավորում ու գիտակցում է իր
գործողությունները։ «Պատմության մեջ առաջին անգամ հասարակական ար-
տադրության մեջ որպես սուբյեկտ հանդես է գալիս ոչ միայն առանձին անհա-
տը կամ նրանց մի խումբը, այլ ամբողջ հասարակությունը։ Գիտակցվում և
պլանավորվում են հասարակության բոլոր անդամների ամբողջական գործու-
նեությունը, գնալով ավելի մեծ չափով են կանխատեսվում նյութական արտա-
դրության զարգացման հասարակական հետևանքները» («Вопросы филосо-
фии», 1962, № 1, էջ 89)։

Կոմունիստական իրականությունը, այն է՝ նոր ռեալությունը մեր երկրում
ստեղծվում է մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին համապատասխան։ Դա
էլ հենց անցումն է գաղափարից դեպի առարկան, դեպի նյութական ռեալու-
թյունը, դա արտացոլման նյութականացումն է, գաղափարների մարմնավո-
րումը ռեալության մեջ։

Եթե մարդկային գիտական միտքը, հանձին մարքսիզմ-լենինիզմի այդքան
համապատասխանում է օբյեկտիվ ռեալությանը, եթե այդ միտքը նյութական
ռեալության է փոխանցվում, ապա դա, իհարկե, չի նշանակում, թե սուբյեկ-
տիվ գործոնը կարող է վերացնել հասարակական զարգացման օբյեկտիվ օրի-
նաչափությունները կամ թե նոր օրենքներ ու օրինաչափություններ ստեղծել։

Սուբյեկտիվը առավել հաջողությամբ է փոխանցվում օբյեկտիվի այն
դեպքում, երբ մասսաներն իրենց պրակտիկ գործունեության մեջ ավելի ճշգը-

րիտ ու կատարյալ կերպով են ճանաչում օբյեկտիվ օրենքները։ Իսկ երբ ան-
տեսվում են այդ օրենքների պահանջները, երբ մարդիկ չեն հենվում դրանց
վրա, ապա անխուսափելիորեն երևան է գալիս սուբյեկտիվիզմը կամ քմահա-
ճույքը։ Սուբյեկտիվիզմն այն գործողությունը կամ կարծիքն է, որը հակասում
է օբյեկտիվ ռեալականությանը և նրա օրենքներին։ Սուբյեկտիվիզմը պրակ-
տիկայում մեծ վնաս է հասցնում ընդհանուր գործին։ Գիտական աշխատանք-
ներում նա հակասում է այս կամ այն երևույթի ճիշտ արտացոլմանը, այսինքն՝
ոչ մի ընդհանուր բան չունի իսկական գիտության սկզբունքների հետ։ Հասկա-
նալի է, որ սուբյեկտիվիզմը և սուբյեկտիվ գործոնը բոլորովին տարբեր բա-
ներ են։ Իրականում հաճախ շփոթում են այդ երկու բաները, ինչը որ ավելի է
խորացնում սուբյեկտիվիզմը։ Այդպիսի շփոթման վնասի մասին հարկ չկա
երկար խոսելու։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր. «Պրոլետարական պարտիայի համար
չկա ավելի վտանգավոր սխալ, քան իր տակտիկան սուբյեկտիվ ցանկություն-
ների վրա կառուցելն...» (Երկեր, հ. 24, էջ 284)։

Լենինն ուսուցանում էր, որ չի կարելի արհեստականորեն, ինչ-որ սին
ցանկությամբ արագացնել այն, ինչը որ դեռ չի հասունացել և ինչի համար
դեռևս չկան անհրաժեշտ օբյեկտիվ պայմաններ։ Անհնարելի է չմտածված և
չճշտված գաղափարներն ու կշռադատությունները հապճեպ կերպով վերածել
ռեալության։ Դժբախտաբար մեզանում եղել են այդպիսի փորձեր, այդպիսի
անհիմն «էքսպերիմենտներ», որոնք բնականորեն, բացասական հետևանքներ
են ունեցել։ Այսպես, օրինակ, կարելի է հիշատակել կոլտնտեսականների
տնամերձ հողամասերի տնտեսական տեսակետից անհիմն կրճատումը, պար-
տիական տեղական օրգանները արդյունաբերական և գյուղատնտեսական օր-
գանների բաժանելը, դպրոցում տասնմեկամյա ուսուցում մտցնելը և այլն։
Պարտիան վերացրեց իդեալականն այս ձևով ռեալության վերածելու քայլերը։
Բայց դա չի նշանակում, թե պարտիան դեմ է կազմակերպման ու ղեկավար-
ման ձևերի հետագա կատարելագործմանը։ Պարտիան կողմնակից է այնպիսի
կատարելագործման, որն անվերապահորեն նպատակասլաց ու բանական է,
որը ստուգված է սոցիալական անհրաժեշտ փորձով։

II

Սուբյեկտիվի անցումը օբյեկտիվին, իդեալականի անցումը նյութական
ռեալության օրինաչափ պրոցես է մեր հասարակության մեջ։ Այդ պրոցեսը
անխզելիորեն կապված է կոմունիզմի ճանապարհով մեր հասարակական զար-
գացման տեմպերի աստիճանական զարգացման հետ։ Խոսելով հասարակա-
կան զարգացման տեմպերի մասին, պետք է աչքի առաջ ունենալ երեք կարևոր
հանգամանք։ Նախ, այդ տեմպերը տարբեր են հասարակական-տնտեսական
տարբեր ֆորմացիաներում։ Երկրորդ, ինչպես մատնանշում էր Լենինը, տար-
բեր երկրներում կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու տեմպերը նույնպես
տարբեր են։ Երրորդ, հասարակության զարգացման տեմպերը որոշվում են
պատմության ընթացքի վրա աշխատավոր մասսաների ունեցած ներգործու-
թյան աստիճանով։ Իսկ դա կախված է հասարակության յուրաքանչյուր ան-
դամի ակտիվությունից։ Մարդկանց ակտիվությունն իր հերթին որոշվում է
տվյալ արտադրաեղանակի բնույթով, այն բանով, թե այդ արտադրաեղանա-
կը որքանով է նպաստում աշխատավոր մասսաների նյութական և կուլտուրա-



կան կարիքների բավարարմանը, թե արդյոք այդ մասսաները հիրավի տերեր
են, թե գտնվում են շահագործողների լծի տակ։ Տարբեր են նաև միևնույն հա-
սարակական-տնտեսական ֆորմացիայի տարբեր փուլերի զարգացման տեմ-
պերը։ Այսպես, կոմունիզմի երկրորդ փուլի կազմավորման տեմպերը շատ
ավելի բարձր են նրա առաջին փուլի կառուցման տեմպերից։ Դա միանգա-
մայն օրինաչափ է, որովհետև հասարակական նոր ֆորմացիայի առավելու-
թյուններն ավելի լրիվ և լավ բացահայտվում են կոմունիզմի կառուցման ժա-
մանակաշրջանում։

Եթե հասարակական զարգացումը ստորինից դեպի բարձրագույնն անց-
նելով ավելի է արագացնում իր տեմպերը, ապա կոմունիստական ֆորմա-
ցիայի համար յուրահատուկ են այդ զարգացմանն անհամեմատ ավելի բարձր
տեմպեր։ Մարքսը և Էնգելսը «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ում
նշում էին, որ բուրժուազիան իր դասակարգային տիրապետության միայն
հարյուր տարվա ընթացքում շատ ավելի արտադրողական ուժեր ստեղծեց,
քան նախորդ բոլոր սերունդները։ Իսկ սոցիալիստական հասարակարգի հաղ-
թանակից հետո հասարակական կյանքի զարգացումն անհամեմատ ավելի է
արագանում։

Բարձր տեմպերը՝ կոմունիստական ֆորմացիայի այդ ընդհանուր օրինա-
չափությունն այժմ հաստատված են սոցիալիստական լագերի բոլոր երկրների
փորձով։ Այդ բարձր տեմպերը ցույց են տալիս, թե որքան հարաճուն է դար-
ձել սուբյեկտիվ գործոնի դերը կոմունիստական շինարարության մեջ։

Կոմունիստական առաջընթացի բարձր տեմպերը պայմանավորված են
երկու խումբ պատճառներով։ Նախ, այն օբյեկտիվ պայմանների առավելու-
թյամբ, որպիսիք մեզանում ստեղծվել են սոցիալիզմի հաղթանակի հետևան-
քով։ Երկրորդ՝ սուբյեկտիվ գործոնի անհամեմատ ավելի բարձր հասունու-
թյամբ։

Ինչ վերաբերում է օբյեկտիվ պայմաններին, ապա դրանց թվին են պատ-
կանում սոցիալիստական արտադրաեղանակը (սոցիալիստական արտադրո-
ղական ուժերը և սոցիալիստական արտադրական հարաբերությունները),
առաջավոր գիտության և տեխնիկայի առկայությունը։ Վ. Ի. Լենինը, խոսելով
ժողովրդական տնտեսության զարգացման բարձր տեմպերի ապահովման
գործում սոցիալիստական սիստեմի առավելությունների մասին, ընդգծում էր,
որ «միմիայն սոցիալիզմից է սկսվելու արագ, իրական, իսկապես մասսայա-
կան, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մաս-
նակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական և անձ-
նական կյանքի բոլոր ասպարեզներում» (Երկեր, հ. 25, էջ 615)։

Սոցիալիստական շինարարության փորձը լիովին հաստատեց Լենինի այդ
հանճարեղ կանխատեսությունը։ Դա առանձնապես ակնառու հաստատվում է
մեր օրերում, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։

Հասարակության զարգացման տեմպերի արագացման տեսակետից հսկա-
յական նշանակություն ունի այն հանգամանքը, որ դեպի կոմունիզմ կատար-
վող անցումը տեղի է ունենում արտադրողական ուժերի զարգացման ավելի
բարձր մակարդակի պայմաններում, ժողովրդական մասսաների ավելի բարձր
կենսամակարդակի պայմաններում, քան սոցիալիզմի կառուցման ժամանակ։

Բացի դրանից, կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանը սոցիալիզմին
անցնելու ժամանակաշրջանից էապես տարբերվում է տիրապետող հասարա-

*կական հարաբերությունների տեսակետից։ Սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում աշխատավոր մասսաների նյութական և հոգևոր ուժերի մի զգալի մասը ծախսվում էր հասարակական հին հարաբերությունները հաղթահարելու վրա։ Այդ հանգամանքը չէր կարող չկասեցնել հասարակության զարգացման տեմպերը։ Մինչդեռ կոմունիզմի ծավալուն կառուցումը տեղի է ունենում սոցիալիստական արտադրական հարաբերությունների պայմաններում, երբ հասարակության մեջ տիրապետում են շահագործումից ազատ աշխատավորների սերտ համագործակցության ու փոխօգնության հարաբերությունները։ Ահա այդ պայմաններում ժողովրդի ամբողջ եռանդն ուղղված է ստեղծագործ խնդիրների լուծման նպատակին։ Դա, անշուշտ, նպաստում է հասարակական զարգացման տեմպերի արագացմանը։ Եթե կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը տեղի է ունենում, դասակարգային պայքարի, այնպիսի անտագոնիստական հակասությունների պայմաններում, որոնց լուծման համար պահանջվում էր ժողովրդի ուժերի զգալի լարում, ապա կոմունիզմին անցնելը տեղի է ունենում բոլորովին այլ օբյեկտիվ պայմաններում, երբ տիրապետում են սոցիալիստական արտադրական հարաբերությունները, երբ չկան շահագործող դասակարգեր, երբ հասարակության բոլոր անդամները շահագրգռված են կոմունիզմի հաղթանակի գործում և գիտակցաբար կառուցում են այն։ Այս ամենը հնարավորություն է տալիս կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում ավելի արագացնել հասարակական զարգացման տեմպերը։*

*Ինչ վերաբերում է սուբյեկտիվ գործոնին, որն արագացնում է հասարակական զարգացման տեմպերը սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում, ապա այդ մասին պետք է ասել հետևյալը։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում սուբյեկտիվ գործոնն ամբողջությամբ վերցրած, շատ ավելի բարձր մակարդակի վրա է, քան կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում։ Դա է այն հիմնական խթաններից մեկը, որն արագացնում է հասարակության անցումը դեպի կոմունիզմի բարձրագույն փուլը։*

*Իսկ ինչո՞վ է արտահայտվում կոմունիստական շինարարության սուբյեկտիվ գործոնի հասունությունը։*

*Ամենից առաջ որոշենք, թե ինչ ենք հասկանում կոմունիստական շինարարության սուբյեկտիվ գործոն ասելով։ Այն ունի իր կուռ սիստեմը և բաղկացած է հետևյալ մասերից. նախ՝ կոմունիստական պարտիայի և սոցիալիստական պետության ուղղություն տվող և ղեկավար գործունեությունից. այդ գործունեությունը հիմնված է հասարակական զարգացման օրենքների և, հատկապես, կոմունիստական ֆորմացիայի կազմավորման օրինաչափությունների խոր ըմբռնման ու օգտագործման վրա և նպատակ ունի մոբիլիզացնելու երկրի բոլոր նյութական ու հոգևոր ուժերը կոմունիզմ կառուցելու համար։ Սուբյեկտիվ գործոնի մյուս մասը ժողովրդական մասսաների գիտակից, կանխամտածված, պլանաչափ և կազմակերպված գործունեությունն է հանուն նոր կյանքի, հասարակական այն բազմաթիվ կազմակերպությունների գործունեությունը, որոնք նպաստում են նոր հասարակարգի հաղթանակին։*

*Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում սուբյեկտիվ գործոնի անհամեմատ ավելի բարձր հասունությունն արտահայտվում է նաև նրանով, որ կոմունիզմը կառուցվում է ժողովրդի սոցիալ-քաղաքական և բարոյական միասնության առկայության պարագայում, հետևաբար, սուբյեկտիվ*



*գործոնի բոլոր բաղադրիչ մասերի միասնության պայմաններում։ Կոմունիզմը կառուցվում է նաև այնպիսի պայմաններում, երբ աննախընթաց չափով աճել է ժողովրդական մասսաների ընդհանուր կուլտուրական և կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Կոմունիստական հասարակարգը հենց մասսաների բանականության, եռանդի և անձնուրաց աշխատանքի արգասիքն է, երբ հասարակությունը պատրաստել է ինժեներա-տեխնիկական և կազմակերպչական բազմաթիվ կադրեր։*

*Կոմունիզմի կառուցման արագացմանը նպաստում է նաև այն, որ մեր օրերում անհամեմատ աճել է ժողովրդական մասսաների հասարակական ակտիվությունը կյանքի բոլոր ոլորտներում և, առաջին հերթին, նյութական արտադրության ոլորտում։ Նոր կյանքի կառուցման գործում մասսաների ակտիվության աճումը կոմունիստական ֆորմացիայի ստեղծման օբյեկտիվ օրինաչափությունն է։ Նյութական արտադրության ոլորտում ժողովրդական մասսաների հսկայական ակտիվության մասին է խոսում հենց այն փաստը, որ եթե 1959 թվականին կոմունիստական աշխատանքի շարժման մեջ ընդգրկված էին 2,6 միլիոն մարդ, ապա այժմ մրցողների շարքերում կան մոտ 30 միլիոն մարդ։*

*Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը բնութագրվում է նաև նոր կյանք ստեղծող մարդկանց նյութական բարեկեցության է՛լ ավելի բարելավմամբ։ Սոցիալիզմի հաղթանակը միաժամանակ արմատական փոփոխություններ մտցրեց մարդկանց կերպարի մեջ։ Նրանք այժմ զերծ են բազմաթիվ այն արատներից, որոնք հատուկ են կապիտալիստական հասարակության մարդկանց։ Այդ ամենը նպաստում են, որ ավելանա այն մարդկանց թիվը, որոնք ամենաակտիվ ու գիտակից մասնակցություն են ցուցաբերում հասարակության կյանքի բոլոր բնագավառներում։ Հասկանալի է, որ երբ միլիոնավոր ու միլիոնավոր աշխատավորներ գիտակից ու պլանաչափ կերպով ամենաեռանդուն մասնակցությունն են ունենում հասարակության կյանքի բոլոր ոլորտներում, երբ նրանք աշխատում են իրենց համար, իրենց հասարակության համար, երբ նրանց գործունեության արդյունքներն ավելի կատարյալ կերպով են համընկնում նախապես առաջադրված նպատակներին, երբ արտադրության համակողմանի զարգացումը նպատակ ունի ավելի ու ավելի լրիվ բավարարելու աշխատավոր մասսաների նյութական և կուլտուրական պահանջները, այն ժամանակ արտադրողական ուժերի և ընդհանրապես, հասարակության կյանքի բոլոր կողմերի զարգացման տեմպերը խիստ արագանում են։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր. «Համաշխարհային զարգացման այս հսկայական արագացման հիմնական պատճառը նոր հարյուրավոր միլիոն մարդկանց ներգրավումն է նրա մեջ» (Երկեր, հ. 33, էջ 412)։*

*Հասարակական զարգացման տեմպերի արագացման ասպարեզում առանձնապես խոշոր դեր ունի կոմունիստական պարտիայի ճիշտ ղեկավարությունը։ Պարտիան կոմունիստական շինարարության ամենահզոր սուբյեկտիվ գործոնն է։ Նա առաջադրում և հիմնավորում է ժողովրդական մասսաների ամենակենսական շահերին համապատասխանող ճիշտ քաղաքականություն, ցույց է տալիս դեպի վերջնական նպատակը տանող առավել կարճ և նվազ դժվարին ուղիները։ Մեր հասարակության առաջընթացի յուրաքանչյուր էտապում պարտիան մշակում է ժողովրդական մասսաների կազմակերպման առավել նպատակահարմար ձևեր ու եղանակներ, նրանց մոբիլիզացնելով ու*

ներգրավելով նոր կյանքի շինարարության գործում։ Նա ճիշտ հաշվի է առնում օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների հարաբերակցությունը և ձևը, իսկ դա կոմունիստական շինարարության գիտական ղեկավարման և հասարակական առաջադիմության տեմպերի արագացման կարևորագույն պայմանն է։

Կոմունիստական շինարարության փորձը համոզիչ կերպով ցույց տվեց, որ սուբյեկտիվ գործոնը, անհամեմատ, ավելի է արագացնում հասարակական զարգացման տեմպերը այն դեպքում, երբ հասարակության մեջ բոլոր տնտեսական, քաղաքական և հոգևոր ուժերը ի սպաս են դրված ժողովրդական մասսաներին՝ «Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար» նշանաբանով։

Սոցիալիզմը և կոմունիզմը հասարակական առաջադիմական զարգացման այն ստադիան են, երբ մարդու սուբյեկտիվ ձգտումները ոչ միայն չեն հակասում օբյեկտիվ օրենքների բնական ընթացքին, այլև ամբողջապես գործում են նույն այն ուղղությամբ, ինչ որ օրենքները։ Դրանով է դրսևորվում սուբյեկտիվ գաղափարների օբյեկտիվացումը ռեալությունների ձևով։ Այս դեպքում սուբյեկտիվ գործոնը, որը ճանաչել և յուրացրել է օբյեկտիվ օրինաչափությունները, որը դարձել է բնության և հասարակական հարաբերությունների վրա գերիշխող ուժ, հնարավորություն է ստանում ավելի նպատակահարմար ձևով, նախապես մշակված պլանով փոխելու իրադարձությունների ընթացքը հօգուտ ավելի արագ առաջընթացի։

Վերոհիշյալից, իհարկե, չի բխում, թե սոցիալիզմի պայմաններում տարերայնության ոչ մի տարր չկա հասարակության զարգացման մեջ։ Սակայն տվյալ հոդվածում նպատակ չունենք քննելու տարերայնության տարրերը։

Այսպիսով, հասարակական զարգացման տեմպերի համար չափազանց կարևոր նշանակություն ունի այն հանգամանքը, թե սուբյեկտիվ գործոնն արդյոք ճիշտ է հաշվի առել սոցիալիստական հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների պահանջները, արդյո՞ք նա նպատակահարմար կերպով է օգտագործում այդ օրինաչափությունները։ Սոսկ սուբյեկտիվ ցանկությունը բավական չէ հասարակության զարգացման տեմպերն արագացնելու համար, եթե դրա համար դեռևս չկան օբյեկտիվ պայմաններ։ Այդ հարցում, անշուշտ, վտանգավոր է առաջ վազելը, ամեն տեսակ փութկոտությունը, հապճեպությունը տեմպերը որոշելու գործում, ինչպես նաև իրադարձություններից ետ մնալը։

Կոմունիզմի արագացված կառուցումը ՍՍՌՄ-ում հսկայական դրական ներգործություն է թողնում ամբողջ համաշխարհային զարգացման վրա, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի վերջնական հաղթանակն արագացնելու վրա։

Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի գյուղատնտեսության բաժնի վարիչ

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի հոկտեմբերյան և նոյեմբերյան (1964 թ.) պլենումները առաջընթաց քայլ հանդիսացան պարտիայի XX, XXI և XXII համագումարների որոշումների կատարման ճանապարհին։ Վարից վեր վերականգնվեցին պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական օրգանների կառուցվածքի լենինյան սկզբունքները։ Նախկին պարտիական արտադրական կոմիտեների փոխարեն ստեղծվեցին պարտիայի շրջանային կոմիտեներ, որոնք իրենց բազմնավոր գործունեությամբ ավելի կոնկրետ են զբաղվելու տնտեսական, կուլտուրական շինարարության հարցերով։

Հետևողականորեն կենսագործելով Կենտկոմի հոկտեմբերյան և նոյեմբերյան պլենումների վերցրած կուրսը, մեր պարտիան անդուլ պայքար է մղում կոմունիստական շինարարության վիթխարի պլանների իրականացման համար։ Ներկա ժամանակաշրջանում պարտիան մեծ ջանքեր է գործադրում հատկապես գյուղատնտեսության մեջ գործերի վիճակն արմատապես բարելավելու, գյուղատնտեսական մթերքների արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու ուղղությամբ։

Այդ տեսակետից պարտիայի ու ժողովրդի կյանքում, կոմունիստական շինարարության մեծ խնդիրների իրականացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում խոշոր նշանակություն ունեցավ ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումը, որը քննարկեց «ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման անհետաձգելի միջոցառումների մասին» հարցը։ Եվ դա միանգամայն հասկանալի է։ Չէ՞ որ առանց գյուղատնտեսության զարգացման հնարավոր չէ ապահովել երկրի սոցիալիստական էկոնոմիկայի անշեղ աճը և սովետական մարդկանց կենսամակարդակի արագ բարձրացումը։

Պլենումը հանգամանորեն քննարկեց երկրի գյուղատնտեսության վիճակը և ծրագրային նոր ուղիներ նշեց նրա հետագա զարգացման և մեծ առաջընթացի ուղղությամբ։ Պլենումը մի անգամ ևս ընդգծեց, որ մեր գյուղատնտեսությունը, հենվելով աշխարհում ամենաառաջավոր հասարակական սիստեմի վրա, ցույց տվեց իր կենսունակությունը սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման բոլոր էտապներում։

Գյուղատնտեսության զարգացման, նրա առաջընթացի գործում կարևոր իրադարձություն հանդիսացավ ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի սեպտեմբեր-

յան պլենումի մշակած միջոցառումների իրականացումը, որի շնորհիվ նշա-
նակալից չափով ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը,
կոլտնտեսություններն ու սովխոզներն ամրապնդվեցին տնտեսապես և կազ-
մակերպչորեն, բարձրացավ գյուղի աշխատավորների շահագրգռվածությունը
մթերքների արտադրության ավելացման ոլորտում: Գյուղում տեղի ունեցան
նկատելի տեղաշարժեր, երկրագործությունն ու անասնաբուծությունը զարգա-
ցան ավելի բարձր տեմպերով:

Սակայն երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման, ժողովրդի կենսամա-
կարդակի բարձրացման՝ պարտիայի առաջադրած խնդիրները պահանջում էին
առավել մեծ հոգատարություն ցուցաբերել գյուղատնտեսության հետա-
գա զարգացման նկատմամբ և երբեք չբավականանալ ձեռք բերված հաջողու-
թյուններով:

Վլադիմիր Իլյիչ Լենինը պարտիային սովորեցնում էր բազմակողմանի
վերլուծել ստեղծված վիճակը, օբյեկտիվորեն գնահատել հաջողություններն
ու թերությունները, պարզությամբ տեսնել դժվարություններն ու չլուծված
խնդիրները: «...Եթե մենք չենք ուզում վախենալ անգամ դառը և ծանր ճշմար-
տությունն ուղղակի արտահայտելուց,— ընդգծում է Վ. Ի. Լենինը,— մենք
կսովորենք անպայման և անպատճառ կսովորենք հաղթահարել բոլոր և բոլոր
տեսակի դժվարությունները»:

Վերջին տարիներում գյուղատնտեսության ղեկավարման պրակտիկայում
թույլ տրվեցին լուրջ սխալներ, որոնք հանգեցրին այն բանին, որ գյուղատըն-
տեսությունը դոփեց տեղում, նկատելի չափով իջան նրա զարգացման տեմ-
պերը: Այդ մասին ճշմարտացիորեն և բացահայտորեն խոսվեց ՍՄԿԿ Կենտ-
կոմի մարտյան պլենումում:

Թույլ տրված սխալների պատճառով գյուղատնտեսության համախառն
արտադրանքը յոթնամյա պլանով նախատեսված 70-ի փոխարեն աճեց ընդա-
մենը 10 տոկոսով: Այդ այն դեպքում, երբ 1955 թվականից մինչև 1959 թվա-
կանը արտադրության տարեկան աճը միջին հաշվով կազմում էր 7,6 տոկոս:
Հասկանալի է, որ գյուղատնտեսության զարգացման նման տեմպերը արգելա-
կում էին երկրի էկոնոմիկայի ընդհանուր զարգացմանը:

Վատն այն է, որ աշխատանքի պրակտիկայում հաճախ թույլ էին տրվում
մասնակի հաջողությունների գունազարդում, պարադայնություն և ադմինիստրա-
րություն, որոնք խիստ բացասական ազդեցություն էին թողնում ընդհանուր
գործի վրա և հնարավորություն չէին տալիս լրջորեն կշռադատելու ստեղծված
վիճակը, տեսնելու աշխատանքում տեղ գտած թերություններն ու սխալները:

Մարտյան պլենումի կարևորագույն առանձնահատկություններից մեկն
այն է, որ լենինյան ուղղամտությամբ և պարզությամբ բացահայտվեցին գյու-
ղատնտեսության բնագավառում տեղ գտած լուրջ սխալներն ու թերություն-
ները, խորապես վերլուծվեցին նրա ետ մնալու պատճառները, որը հնարավո-
րություն տվեց մշակելու գյուղատնտեսության հետագա զարգացման տնտեսա-
պես հիմնավորված ծրագիր:

Պլենումը ցույց տվեց, որ գյուղատնտեսության ետ մնալու հիմնական
պատճառը սոցիալիստական արտադրության զարգացման տնտեսական օրենք-
ների խախտումն էր և սուբյեկտիվիզմի առկայությունը տնտեսական քաղաքա-
կանության մեջ: Այդ բանը առաջին հերթին արտահայտվում էր սոցիալիստա-



կան էկոնոմիկայի բոլոր ճյուղերի զարգացման համամասնությունը խախտե-
լու, հանրային և անձնական շահերի զուգորդումն անտեսելու, աշխատավոր-
ների նյութական շահագրգռվածության սկզբունքը կոպիտ կերպով ոտնահա-
րելու փաստերի մեջ:

Լուրջ սխալներ գոյություն ունեին գյուղատնտեսության պլանավորման,
ֆինանսավորման և վարկավորման, գների քաղաքականության ասպարեզում,
որոնք խիստ կերպով արգելակում էին արտադրության նորմալ զարգացումը և
իջեցնում նրա տեմպերը: Պլենումը դատապարտեց այն երևույթը, երբ գյու-
ղատնտեսության կապիտալ ներդրումները կազմել են երկրի ժողովրդական
տնտեսության բոլոր ներդրումների միայն 11,4 տոկոսը: Իսկ գների քաղա-
քականության բնագավառում թույլ տրված սխալները հանգեցնում էին այն
բանին, որ հաճախ գյուղատնտեսական մթերքները գնվում էին ինքնարժեքից
էլ շատ ցածր գներով, որը բացարձակապես հանգեցնում էր կոլտնտեսություն-
ների ու սովխոզների թուլացման:

Պլենումը նշեց, որ դեռևս բավարար ուշադրություն չի նվիրվում գյուղատըն-
տեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը: Մեր արդյունաբե-
րությունը գյուղատնտեսությանը լրիվ չի ապահովում գյուղատնտեսական
մեքենաներով՝ տրակտորներով, կոմբայններով, շարքացաններով, ավտոմե-
քենաներով և գյուղատնտեսական այլ գործիքներով: Վատ է վիճակը նաև
գյուղատնտեսական մեքենաների պահեստամասերի արտադրության բնագա-
վառում:

Ի վերջո պլենումը խստորեն դատապարտեց պարտիական, սովետական,
գյուղատնտեսական օրգանների չհիմնավորված, հապճեպ կատարվող վերա-
կառուցումները, որոնք մեծ վնաս հասցրին նաև երկրի գյուղատնտեսության
ղեկավարմանը: Այդ վերակառուցումները տանում էին դեպի պարտիա-
կան կազմակերպությունների դերի ու պատասխանատվության նսեմացում՝
տնտեսական շինարարության ղեկավարման գործում: Կադրերի մոտ ծնում էին
անվստահություն և անհեռանկարայնություն՝ քաղաքական և տնտեսական
շինարարության հարցերը լուծելու և իրականացնելու բնագավառում:

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի կարևոր առանձնահատկություններից
մեկն էլ այն է, որ շիտակորեն բացահայտելով գյուղատնտեսության ետ մնա-
լու պատճառները, տվեց նրա զարգացման գիտականորեն, տնտեսապես հիմ-
նավորված ծրագիրը: Պլենումը ցույց տվեց, որ հենվելով մեր երկրի տնտեսու-
թյան աճող հզորության վրա, մենք ունենք բոլոր հնարավորությունները կարճ
ժամանակամիջոցում ապահովելու գյուղատնտեսության արտադրության աճի
բարձր տեմպեր:

Պլենումի մշակած միջոցառումների մեջ կարևորագույն նշանակություն
ունի գյուղատնտեսական մթերքների մթերումների սիստեմի կատարելագոր-
ծումը: Մթերումների նախկին սիստեմն այլևս չի արդարացնում իրեն, չի խթա-
նում կոլտնտեսությունների և սովխոզների գործունեությունը: Պլենումը
որոշեց անցնել գյուղատնտեսական մթերքների մթերումների մի շարք տարի-
ների համար հաստատուն պլանների մշակման՝ ներդաշնակորեն զուգակցելով
համապետական և ներտնտեսական շահերը: Պարտիան նշեց, որ այդպիսի
պլանները պետք է ստանան օրենքի ուժ և ոչ մի դեպքում չփոփոխվեն: Դրա-
նով գյուղի աշխատավորների մոտ հավատ կներշնչվի աշխատանքի, վաղվա
օրվա նկատմամբ, կբարձրացնի հետաքրքրությունը հանրային տնտեսության

զարգացման, արտադրության ընդլայնման ուղղությամբ։ Մի քանի տարիների համար տնտեսապես հիմնավորված պլանների սահմանումը կոլտնտեսություններին ու սովխոզներին հնարավորություն կտա ճշտորեն որոշելու տնտեսության զարգացման ուղղությունները և խելացիորեն լուծելու գյուղատնտեսության մասնագիտացման խնդիրները, հաշվի առնելով յուրաքանչյուր տնտեսության բնակլիմայական և տնտեսական պայմանները։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության համար բացառիկ կարևոր նշանակություն ունի դրանց գնման գների բարձրացումը, որը կարևոր քայլ է տնտեսությունների կազմակերպական-տնտեսական ամրապնդման գործում։ Պարտիան գտնում է, որ անհրաժեշտ է բարձրացնել գյուղատնտեսական մթերքների գնման գները, առանց բարձրացնելու մանրածախ վաճառքի գները։

Մշակված միջոցառումների մեջ կարևոր նշանակություն ունի կոլտնտեսականների և սովխոզների բանվոր-ծառայողների նյութական շահագրգռվածության բարձրացումը։

Գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների և նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդումը հանգուցային հարցերից մեկն է։ Նոր հնգամյա պլանով նախատեսվում է պետության և կոլտնտեսությունների կողմից գյուղատնտեսության մեջ ներդնել 71 միլիարդ ռուբլի, որից միայն արտադրական օբյեկտների շինարարության ու տեխնիկա ձեռք բերելու համար՝ 41 միլիարդ ռուբլի, այսինքն՝ այնքան, որքան ներդրվել է հետպատերազմյան 19 տարիներում։ Բավական է նշել, որ հնգամյակում գյուղատնտեսությունը կստանա 1 միլիոն 790 հազար տրակտոր, 1 միլիոն 100 հազար ավտոմեքենա։ Հացահատիկային կոմբայնների աճը տարեկան կկազմի 84 հազարից մինչև 125 հազար հատ։ Գյուղատնտեսական տեխնիկա արտադրելու համար կկառուցվեն 80 նոր գործարաններ և արտադրամասեր։ Նորոգման բազան ամրապնդելու նպատակով «Գյուղտեխնիկան» կկառուցի շուրջ 200 նորոգման նոր գործարաններ և ավելի քան հազար մասնագիտացված արհեստանոցներ։ Մեծ ուշադրություն է նվիրվելու գյուղատնտեսության էլեկտրիֆիկացմանն ու քիմիացմանը։

Խոշոր աշխատանքներ են նախատեսվում ջրաշինարարության և մելիորացիայի ուղղությամբ, նպատակ ունենալով հնգամյակում ոռոգելի տարածությունները ավելացնել 3 միլիոն հեկտարով։

Այս վիթխարի խնդիրների իրագործումը պահանջում է բարձրացնել գյուղում կատարվող քաղաքական-մասսայական ու կազմակերպական աշխատանքների մակարդակը։ Հարկավոր է արմատապես բարելավել պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը, այն բարձրացնել նոր խնդիրների մակարդակին։

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի կողմից գյուղատնտեսության զարգացման բնագավառում բացահայտված թերությունները ամբողջովին վերաբերում են նաև մեր ռեսպուբլիկային։ Ճիշտ է, վերջին տարիներին մեզ մոտ որոշ աշխատանք կատարվել է գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, կոլտնտեսություններն ու սովխոզները տնտեսապես ամրապնդելու ուղղությամբ։ 1964 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում ծխախոտի արտադրությունն ավելացավ 43, 6 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 11, բանջարեղենինը՝ 32, մսինը՝ 26, կաթինը՝ 16 տոկոսով, ձվինը՝ 3 անգամ։ Համապատասխանորեն ավելացել է նաև գյուղատնտեսական մթերքների մթերումների ու վաճառքի ծավալը։



Բայց այս ամենը չի բավարարում ներկա պահանջները։ Հիմնական թերությունը կայանում է նրանում, որ գյուղատնտեսության արտադրանքի արտադրության ընդհանուր աճման տեմպերը չափազանց դանդաղ են։ Վերջին տարիների ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում նկատելի չափով իջել է անասունների գլխաքանակի աճը։ Եթե 1958 թվականին 1954 թվականի համեմատությամբ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 21,6 տոկոսով, ապա 1964 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աճը կազմել է ընդամենը մեկ տոկոս։ Նույն տարիներում ոչխարի գլխաքանակը համապատասխանորեն 46,5 տոկոսից իջել է 10 տոկոսի։ Զգալի չափով կրճատվել է խոզերի գլխաքանակը։ Պատկերն ավելի վատ է բուսաբուծության բնագավառում։

Մեր գյուղատնտեսությանը մեծ վնաս հասցրին ցանքաշրջանառության սխեմի կոպիտ խախտումները։ Ցանքաշրջանառության կառուցվածքը հաճախակի չհիմնավորված փոփոխության էր ենթարկվում, առանց հաշվի առնելու տնտեսությունների ղեկավարների, մասնագետների և հողագործների կարծիքը։ Թույլ տրված խախտումների հետևանքով զգալիորեն նվազեց խոտաբույսերի ցանքը, որով և կրճատվեց կերի բազան։ Միայն վերջին չորս տարիների ընթացքում բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունները կրճատվեցին շուրջ 20 հազար հեկտարով։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությանն արգելակող պատճառներից մեկն էլ տնտեսապես չհիմնավորված գների սահմանումն էր, առանց հաշվի առնելու ռեսպուբլիկայի կոնկրետ պայմանները։ Գյուղատնտեսական մթերքների փաստացի ինքնարժեքի անտեսման պատճառով միայն 1964 թվականին կոլտնտեսությունների և սովխոզների վնասը հացահատիկի և անասնապահական մթերքների մթերումներից կազմեց 7,8 միլիոն ռուբլի։ Գների նոր քաղաքականությունը հնարավորություն է տալիս ոչ միայն ծածկելու տնտեսությունների վնասը, այլև զգալի չափով ավելացնելու նրանց շահութաբերությունը։ Նոր սահմանված գները հնարավորություն են տալիս միայն այս տարի հացահատիկի և անասնաբուծական մթերքների վաճառքից ստանալու շուրջ 20 միլիոն ռուբլու օգուտ։

Մեզ մոտ լուրջ թերություններ կան նաև գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման ուղղությամբ։ Չնայած ՄՏ կայանների վերակառուցումից հետո կոլտնտեսությունների ու սովխոզների մեքենայական պարկը հզորացել է 1,9 անգամ, բայց աշխատանքների ծավալն ավելացել է միայն 24 տոկոսով։ Դա հիմնականում պետք է բացատրել նրանով, որ մեքենաները լրիվ ծանրաբեռնվածությամբ չեն օգտագործվում, որը հանգեցնում է գյուղատնտեսական աշխատանքների ձգձգմանը, ինքնարժեքի բարձրացմանը։ ՄՏԿ կայանների վերացումից հետո կրճատվեց նաև նորոգման բազան։ Բավական է նշել, որ 17 տիպային արհեստանոցներ՝ 16.500 քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ հանձնվեցին գյուղատնտեսության հետ առնչություն չունեցող կազմակերպություններին։

Լուրջ թերություններ գոյություն ունեն արտադրության մեջ գյուղատնտեսական գիտության և առաջավոր փորձի ներդրման բնագավառում։

Գյուղատնտեսության բնագավառում տեղ գտած թերությունների բացահայտումը և սկզբունքային քննադատությունը կօգնեն մեզ կարճ ժամանակամի-

ջոցում իրականացնելու մի շարք կարևոր միջոցառումներ՝ գյուղատնտեսության ղեկավարումը արմատապես բարելավելու և ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի առաջադրած խնդիրները պատվով կատարելու գործում:

Մեր առաջնահերթ խնդիրներից է գյուղատնտեսական մթերքների մթերումների կայուն առաջադրանքների մշակումը: Գյուղատնտեսության մինիստրությունը և պետպլանը պետք է հանգամանորեն ուսումնասիրեն յուրաքանչյուր շրջանի գյուղատնտեսության զարգացման առանձնահատկություններն ու պայմանները, չօգտագործված ռեզերվները և ճշգրիտ առաջադրանքներ սահմանեն նրանց համար: Բայց դա հարցի մի կողմն է: Պարտիայի շրջկոմները, արտադրական վարչությունները պետք է տեղերում ուսումնասիրեն յուրաքանչյուր տնտեսության պայմաններն ու հնարավորությունները, տնտեսությունների ղեկավարների և մասնագետների միջոցով քննարկեն ու սահմանեն կոնկրետ, ռեալ պլաններ, որը հնարավորություն կտա ճշտորեն որոշելու գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալը և լուծելու տնտեսությունների մասնագիտացման հարցը: Պետք է նկատի ունենալ, որ այս գործում թույլ տրված փոքր սխալներն իսկ կարող են բացասական ազդեցություն ունենալ տնտեսությունների հետագա զարգացման վրա:

Գյուղատնտեսության զարգացման պայմաններից մեկը հողագործության և անասնապահության վարման կուլտուրայի արմատական բարելավումն է, առանց որի չի կարելի խոսել հետագա հաջողությունների մասին: Պետք է խոստովանել, որ մեզ մոտ այդ ասպարեզում դրությունը դեռևս բարվոք չէ: Գյուղատնտեսության մինիստրությունը, պարտիայի շրջկոմները, արտադրական վարչությունները պետք է օգնեն տնտեսությունների ղեկավարներին՝ ճշտորեն որոշելու ցանքերի կառուցվածքը, վերականգնելու խախտված ցանքաշրջանառությունները, հետևողականորեն իրագործելու ագրոտեխնիկական կոմպլեքս միջոցառումները:

Մեր ռեսպուբլիկայի համար կենսական նշանակություն ունի գյուղատնտեսության շրջանառության մեջ եղած հողերի լրիվ և ռացիոնալ օգտագործումը: Հարկ կլինի բոլոր տնտեսություններում մանրազնին ուսումնասիրել հողերի վիճակը և կոնկրետ միջոցառումներ մշակել շրջանառությունից դուրս մնացած հողատարածությունները լրիվ օգտագործելու համար: Վերջին տարիներին ռեսպուբլիկայում շրջանառությունից դուրս են մնացել տասնյակ հազարավոր հեկտար հողեր:

Այսօրվա ամենահրատապ խնդիրներից մեկը կերի կայուն բազայի ստեղծումն է: Հայաստանի պայմաններում հատուկ նշանակություն ունի բնական խոտհարքների ու արոտավայրերի ճիշտ օգտագործումը: Մենք ունենք հիանալի ալպյան արոտավայրեր, մարգագետիններ, որոնց ռացիոնալ օգտագործման շնորհիվ կարելի է ավելի շատ անասնապահական մթերքներ արտադրել: Սակայն վերջին տասը տարիների ընթացքում ռեսպուբլիկայի հողօգտագործման հաշվեկշռից դուրս են գրվել շուրջ 500 հազար հեկտար արոտավայրեր, մի բան, որն աններելի է: Զգալի չափով կրճատվել են նաև բնական խոտհարքները: Անհրաժեշտ է բոլոր տնտեսություններում բարելավել խոտհարքների և արոտավայրերի վիճակը և կոնկրետ միջոցառումների դիմել դրանց օգտագործումը, տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու և դրա հաշվին կերի արտադրությունն զգալիորեն ավելացնելու համար:



Մեր ռեսպուբլիկայի համար հասունացած հարց է մեքենա-մելիորատիվ կայանների ստեղծումը: Այժմ խնդիր է դրվում մեքենայացնել խոտհարքների և արոտավայրերի մշակությունը:

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումը լուրջ նշանակություն տվեց կապիտալ ներդրումներին: Այդ նպատակով պարտիան և կառավարությունը զգալի միջոցներ են հատկացրել գյուղատնտեսությանը: Գյուղատնտեսության մինիստրության, պարտիայի շրջկոմների և արտադրական վարչությունների ուշադրության կենտրոնում պետք է լինեն գյուղատնտեսության օբյեկտների շինարարությունը: Անհրաժեշտ ուշադրություն պետք է դարձնել ջրաշինարարությանը: Այդ նպատակի համար այս տարի հատկացվելու է շուրջ 19 միլիոն ռուբլի: Հասկանալի է, որ մեր ռեսպուբլիկայի համար ոռոգելի տարածությունների ընդարձակումը կենսական նշանակություն ունի: Այդ առումով էլ պետք է աշխատանքը կազմակերպել այնպես, որ ջրաշինարարական նպատակներով հատկացված միջոցներն օգտագործվեն խելացի և նպատակասլաց:

Գյուղատնտեսական արտադրության կազմակերպման գլխավոր հարցերից մեկը կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատանքի վարձատրության սիստեմի կատարելագործումն է: Պետությունը հսկայական նյութական և ֆինանսական օգնություն է ցույց տալիս կոլտնտեսություններին և սովխոզներին: Եկամտահարկի գոյություն ունեցող ներկա սիստեմի փոփոխությունը, տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունների երկարատև և կարճատև վարկերի զիջումը, ինչպես նաև գյուղատնտեսական մթերքների գնման գների բարձրացումը հնարավորություն են ստեղծում զգալիորեն ավելացնելու տնտեսությունների դրամական եկամուտները, որոնք հիմնականում ուղղված են լինելու կոլտնտեսականների աշխօրերի արժեքի բարձրացմանը: Պարտիական, սովետական, գյուղատնտեսական օրգանների առաջնահերթ խնդիրն է՝ խորամուխ լինել կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման հարցերի մեջ, հաշվի առնելով, որ նյութական շահագրգռվածությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման գլխավոր պայմանն է:

Պարտիայի Կենտրոնական կոմիտեի մարտյան պլենումի կողմից ձեռնարկված այս խոշոր միջոցառումների կիրառումը պահանջում է բարձրացնել պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի մակարդակը: Կազմակերպական աշխատանքի ընդհանուր խնդիրների մեջ առանձնակի ուշադրություն պետք է դարձնել կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավար կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցերի վրա: Կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավար պոստերում պետք է համարձակորեն առաջ քաշել երիտասարդ մասնագետների: Դեռևս ունենք տնտեսությունների այնպիսի ղեկավարներ, որոնց մոտ պակասում է նորի զգացումը, կորցրել են հեռանկարները և ընդունակ չեն ներկա պայմաններում ղեկավարելու կոլտնտեսություններն ու սովխոզները: Այդպիսիներին կարճ ժամանակամիջոցում պետք է փոխարինել ընդունակ, ձեռներեց, տնտեսությունը լավ հասկացող մարդկանցով: Ուշադրություն պետք է դարձնել արտադրության միջին հրամանատարական կազմի՝ բրիգադավարների, ֆերմաների ու բաժանմունքների վարիչների ընտրության վրա: Այդ վճռական օղակներում էլ անհրաժեշտ է նշանակել մասնագետ մարդկանց: Հարկավոր է բարձրացնել գյուղատնտեսության մասնագետների դերը: Մենք

պետք է հասնենք այն բանին, որ առաջիկա մեկ-երկու տարիների ընթացքում բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզներն ապահովվեն մասնագետներով, առանց որի չի կարելի զեկավարել ժամանակակից գյուղատնտեսությունը։ Մեր գյուղատնտեսական բուհերն ու տեխնիկումները տարեկան տալիս են 1500 շրջանավարտ։ Գյուղ գնացած երիտասարդ մասնագետների նկատմամբ պետք է լինել հոգատար, նրանց համար ստեղծել աշխատանքի նորմալ պայմաններ, խելացի օգտագործել նրանց գիտելիքները։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների կենսագործման բնագավառում բարձրանում է սկզբնական պարտիական կազմակերպությունների և պարտշրջկոմների դերը։ Պլենումը խնդիր է դնում արմատապես բարելավել գյուղում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը, բարձրացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակությունը։ Հարկավոր է եռանդուն գործունեություն ծավալել գյուղի աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Քաղաքական աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները պետք է ուղղված լինեն մի նպատակի՝ գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ պարտիայի առաջադրած խնդիրների կատարմանը։ Հարկավոր է աշխատել այնպես, որ կարճ ժամանակամիջոցում լուծվեն գյուղատնտեսության զարգացման դժվարին, բայց պատվավոր խնդիրները։ Ամեն կերպ պետք է հեռու մնալ ազմկարարությունից, գունազարդումից, մասնակի հաջողությունների թմբկահարումից։

Գյուղատնտեսության հետագա զարգացումը և ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների անշեղ կենսագործումը ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության, բոլոր աշխատավորների գլխավոր խնդիրն է։



Բ. ԱՆԱՆԻԿՅԱՆ

# ԱԶԱՏ ԺԱՄԱՆԱԿԸ ԵՎ ԱՆՀԱՏԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Ժամանակակից գիտա-տեխնիկական բուռն պրոգրեսը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար մղվող պայքարը փոխելով աշխատանքի բնույթն ու պայմանները, մեծ չափերով բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը, անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծում բանվորական օրվա կրճատման և ազատ ժամանակի մեծացման համար. այդ, իր հերթին, հետադարձ վիթխարի ներգործություն է ունենում աշխատանքի բնույթի հետագա փոփոխման, գլխավոր արտադրողական ուժի՝ մարդու բազմակողմանի զարգացման վրա։ Դեռևս 1897 թվականին իր **ֆաբրիկային նոր օրենքը** աշխատությունում Վ. Ի. Լենինը գրում էր. «Բանվորի համար հարկավոր է, որ նա չաշխատի օրական 8 ժամից ավելի, ժամանակ ունենա հանգստի համար, իր զարգացման համար, իր իրավունքներից օգտվելու համար, որպես մարդ, որպես ընտանեհայր, որպես քաղաքացի» (Երկեր, հ. 2, էջ 376)։

Աշխատանքային օրվա կրճատումը, ազատ ժամանակի մեծացումը սոցիալիզմից կոմունիզմին անցման օրինաչափությունն է։ Բանվորական կարճ օրը, սակայն, ինչպես դիպուկ կերպով նկատում է ակադեմիկոս Ս. Գ. Ստրումիլինը, ինքնին դեռևս չի կարելի դիտել որպես կոմունիստական հասարակության նպատակ։ Այն միայն միջոց է, հիմնական պայմաններից մեկը՝ գլխավոր խնդիրների լուծման համար։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, բանվորական կարճ օրը նոր հասարակարգն օգտագործում է աշխատավոր մարդուն արտաքին կաշկանդումներից ու կարիքից ձերբազերծելու, նրա ունակություններն ու ձիրքերը լիակատար չափով ու ներդաշնակ զարգացնելու համար։

Մարքսիզմը գտնում է, որ կոմունիզմի ժամանակ ևս աշխատանքը կմնա որպես անհրաժեշտություն, որը, սակայն, իր բնույթով արմատապես տարբերվում է նախորդներից։

Ի՞նչ ենք հասկանում աշխատանքի բնույթ ասելով։ Մարքսիզմի կլասիկներն աշխատանքի բնույթի վերլուծությանը մոտենում են կոնկրետ-պատմականորեն, սերտորեն կապված նրա ոչ միայն տեխնիկական, այլև, որ շատ կարևոր է, սոցիալական պայմանների հետ։ Աշխատանքի այդ երկու կողմերի միասնությունն ու փոխադարձ կապն էլ հենց կազմում են ամեն մի աշխատանքի բնույթը։ Աշխատանքի սոցիալական կողմը դա տնտեսական այն հարաբերություններն ու հասարակական պայմաններն են, որոնց շրջանակներում

կենսագործվում է այն։ Տեխնիկական կողմը՝ բնության, աշխատանքի առարկաների վրա ներգործելու՝ աշխատանքի զինվածության վիճակն է։

Աշխատանքի այդ երկու կողմերը չեն գործում միմյանցից կտրված, այլ ներհյուսված։ Փոխադարձաբար ներգործելով միմյանց վրա, դրանք կազմավորում են օբյեկտիվ, մարդկանց կամքից ու ցանկությունից անկախ, միայն տվյալ հասարակական-տնտեսական ֆորմացիային հատուկ աշխատանքի բնույթ։ Դրա համար էլ այս կամ այն ֆորմացիայի աշխատանքի բնույթը կարելի է ըմբռնել միայն հաշվի առնելով այդ երկու կողմերի միասնությունը, նրանց կապն ու փոխներգործությունը։

Հակառակ բուրժուական մտածողների, որոնք բանվորական օրն ու ազատ ժամանակը հակադրում են միմյանց ինչպես դժոխքն ու դրախտը, մարքսիզմը խորապես տեսնում է դրանց դիալեկտիկական կապը, դրանք չի հակադրում միմյանց, ինչպես որ ազատությունը չի հակադրում անհրաժեշտությանը։

Կյանքը պահպանելու և վերարտադրելու համար մարդը, ինչպես նկատում էր Կ. Մարքսը, բոլոր հասարակական ձևերում և արտադրության բոլոր եղանակների ժամանակ պայքարում է բնության դեմ։ Նրա զարգացումով ընդլայնվում են բնական անհրաժեշտության շրջանակները, որովհետև զարգանում ու բազմազան են դառնում նաև մարդկանց պահանջմունքները։

Մարդկանց հարաճուն պահանջմունքների հետ մեկտեղ բուռն աճում են արտադրողական ուժերը, որպես այդ պահանջմունքների բավարարման միջոց։ Արտադրողական ուժերի հենց այդ զարգացումն էլ հնարավորություն է ստեղծում «անհրաժեշտության թագավորության» սահմաններում կրճատելու պարտադիր աշխատանքի ժամանակը, այլ խոսքով՝ ընդարձակելու ազատության թագավորության սահմանները, որովհետև, ինչպես հանճարեղ կերպով կռահում էր Հեգելը, մարդը բնության դեմ մղվող պայքարում պրակտիկորեն բավարարելով իր պահանջմունքները, դրանով իսկ հյուծում է նրան և բացարձակ կախվածությունից աստիճանաբար անցնում է նրա տիրապետությանը։

Կ. Մարքսը նկատում էր, որ ազատության բուն թագավորությունը, որը, սակայն, կարող է ծաղկել ու զարգանալ միայն այդ անհրաժեշտության (աշխատանքի անհրաժեշտության) թագավորության բազայի վրա, հանդիսանում է անհրաժեշտ աշխատանքից զատ ազատ ժամանակը։ Նա գրում էր, որ «Ազատության թագավորությունն իրականում սկսվում է միայն այնտեղ, որտեղ դադարում է կարիքի ու արտաքին նպատակահարմարության կողմից թելադրված աշխատանքը...» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, էջ 360, 1949)։

Այդ երկու թագավորությունների միջև եղած սահմանները, իհարկե, միշտ էլ պայմանական են, որովհետև գիտա-տեխնիկական պրոգրեսի և ազատ ժամանակի մեծացման ներգործությամբ նյութական արտադրության ոլորտում անհրաժեշտ աշխատանքն էապես փոխում է իր բնույթը. այն մոտենում է մտավոր աշխատանքին, դառնում է է՛լ ավելի ստեղծագործական, իսկ վերջինս իր մեջ ունի հայտնի չափով ազատության տարրեր։ Ազատությունն այստեղ ոչ այլ ինչ է, քան այն, որ միավորված արտադրողները բանականորեն կարգավորում են նյութերի փոխանակությունը բնության հետ։

Բանվորական օրվա և ազատ ժամանակի, ինչպես և անհրաժեշտության ու ազատության միջև դիալեկտիկական կապը դրսևորվում է նաև այն բանում, որ կոմունիստական հասարակարգի աշխատողի ազատ ժամանակում կան անհրաժեշտության տարրեր, որովհետև այդ ժամանակի մի մասն անհրաժեշտաբար օգտագործվում է աշխատանքային պրոցեսին նախապատրաստվելու համար։ Բնական է, որ մարդը մինչև աշխատանքային պրոցեսին անցնելը պետք է ունենա համապատասխան գիտելիքներ, յուրացնի գիտության նվաճումները, սերունդ դաստիարակի՝ նրան հաղորդելով մարդկության կուտակած գիտելիքների պաշարը, առանց որի անհնարին է հասարակության գոյությունը։

Մարքսիստական սոցիոլոգիան ազատ ժամանակը դիտում է որպես անհատի բազմակողմանի զարգացման տարածություն։ Այս դրույթն, իհարկե, չի հակասում մարքսիզմի այն տեսակետին, որ անհատի ձևավորման, նրա բազմակողմանի զարգացման հիմքը աշխատանքն է։ Աշխատանքի դերի գերազանցությունը ազատ ժամանակի նկատմամբ պայմանավորված չէ վերջինիս համեմատությամբ առաջինի հարաբերական երկարատևությամբ։ Աշխատանքը մարդկային անհատի ձևավորման վճռական գործոնը կմնա և այն ժամանակ, երբ նյութական արտադրության մեջ այն կտևի ոչ ավելի, քան 4 ժամ։ Անհատի զարգացման գործում աշխատանքի այդ յուրահատուկ դերը պայմանավորված է նրա առանձնահատկությամբ, հասարակության զարգացման համար նրա հատուկ նշանակությամբ։

Մարդու ազատ ժամանակվա գործունեության բովանդակության մանրակրկիտ ուսումնասիրությունն ակնառու կերպով ցույց է տալիս, որ դա գլխավորապես պայմանավորված է այն պահանջներով, որ անհատին ներկայացնում է արտադրությունը։ Հենց աշխատանքի բնույթը, նրա բովանդակությունն են որոշում մարդու գործունեությունը ազատ ժամանակվա ընթացքում։ Արդի գիտա-տեխնիկական բուռն պրոգրեսը, արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումն, օրինակ, հրամայաբար պահանջում են աշխատավորների կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակ։ Հետևաբար հենց այդ պահանջի բավարարմանն էլ ներկայումս գերազանցապես ենթարկված է անհատի ազատ ժամանակի գործունեությունը։

Կ. Մարքսն ազատ էր համարում միայն այն ժամանակը, որն անհրաժեշտ է մարդու կրթության, ինտելեկտուալ զարգացման համար, սոցիալական ֆունկցիաները կատարելու, ընկերական շփման, նրա ֆիզիկական և ինտելեկտուալ ուժերի ազատ խաղի համար։ Մարքսն այդ ժամանակն անվանում էր հանգստի ժամանակ, ավելի վեհ գործունեություն կենսագործելու ժամանակ։

ՍՄԿՊ XXII համագումարը նոր ուժով ընդգծեց ազատ ժամանակի մեծ դերը կոմունիզմ կառուցողի բազմակողմանի զարգացման, հասարակության բոլոր անդամների կրթության ու դաստիարակության գործում։ «Նյութական արտադրության համար հատկացված ժամանակի կրճատման հետ մեկտեղ,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— ընդլայնվում են արտադրության, գիտության, տեխնիկայի, գրականության և արվեստի բնագավառում ընդունակությունները, ձիրքերը, տաղանդները զարգացնելու հնարավորությունները։ Մարդկանց ազատ ժամանակը գնալով ավելի մեծ չափով կնվիրվի հասարակական գործունեությանը, կուլտուրական շփմանը, մտավոր և ֆիզիկական զարգացմանը, գիտա-տեխնիկական ու գեղարվեստական գործունեությանը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 544)։

Ազատ ժամանակն արդեն այժմ շոշափում է սովետական մարդկանց կյանքի բոլոր արմատական կողմերն ինչպես արտադրության բնագավառում, այնպես էլ կենցաղում։ Լինելով հասարակության գլխավոր արտադրողական

ուժի՝ մարդու ձիրքերի և ընդունակությունների բազմակողմանի զարգացման օբյեկտիվ, կարևոր պայման, ազատ ժամանակը դրանով իսկ վեր է ածվում յուրատեսակ արտադրողական ուժի, որը հսկայական ազդեցություն է գործում հասարակության հետագա առաջընթացի վրա։

Ազատ ժամանակի՝ արտադրողական ուժի վերածվելու գաղափարն առաջին անգամ տվել է Կ. Մարքսը։ «Բանվորական ժամանակի խնայողությունը,— գրում է նա,— հավասարազոր է ազատ ժամանակի մեծացմանը, այսինքն, ինդիվիդի լիակատար զարգացման համար ժամանակի, որն իր հերթին, որպես մեծագույն արտադրողական ուժ հետադարձ ներգործություն է ունենում աշխատանքի արտադրողական ուժի վրա»։ («Большевик», 1939, № 11—12, էջ 65)։

Մարքսյան այս ֆորմուլան իր մարմնավորումն է գտնում հատկապես սոցիալիզմի պայմաններում։ Արտադրության պրոցեսն իրագործում է մարդը, որպես հասարակության գլխավոր արտադրողական ուժ։ Նա իր այդ դերը կատարում է, մի կողմից՝ այն չափով, ինչ չափով տիրապետում է արտադրության գործիքներին ու միջոցներին, իսկ մյուս կողմից՝ հանդես է գալիս, որպես բանվորական ուժի կրող, որի տակ, ինչպես նշում էր Մարքսը, մենք հասկանում ենք ֆիզիկական ու հոգևոր ընդունակությունների այն ամբողջությունը, որն ունի մարդու օրգանիզմը, նրա կենդանի անձնավորությունը և որը նա գործադրում է ամեն անգամ, երբ որևէ սպառողական արժեք է արտադրում։ Մարդու բանվորական ուժը կենդանու բանող ուժից տարբերվում է մասնավորապես նրանով, որ մարդը տիրապետում է ո՛չ միայն որոշակի ֆիզիկական ունակությունների, այլև գիտակցաբար, նպատակասլաց է օգտվում դրանցից. Նա գործում է ոչ թե բնազդով, այլ իր նյութական գործունեությանը վերահսկում է գիտակցությամբ, արտադրության պրոցեսը պատկերում է նախօրոք իր գլխում լրացուցիչ մշակած մոդելին համապատասխան։ Այդ նշանակում է, որ մարդու գործունեության մեջ որոշակի տեղ է գրավում հոգեկան գործոնը, որը հանդես է գալիս որպես մտավոր ունակություն։ Եթե այս ամենին ավելացնենք նաև այն, որ արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման շնորհիվ աշխատավորի ֆիզիկական ջանքերն ավելի ու ավելի են անցնում ետին պլան և, ընդհակառակն, ավելի ու ավելի է աճում նրա մտավոր գործունեության դերը, ապա պարզ կդառնա, թե իրոք ինչպիսի վիթխարի դեր է խաղում ազատ ժամանակը գլխավոր արտադրողական ուժի զարգացման ու կատարելագործման մեջ։

Դրա լավագույն ապացույցներից մեկը արտադրությունից կտրված ուսուցման այն վիթխարի սիստեմն է, որ ստեղծված է մեր երկրում և, որը օր-օրի է՛լ ավելի է ընդարձակվում։

Սերտ կապ և փոխներգործություն գոյություն ունի գիտության, որպես անմիջական արտադրողական ուժի և ազատ ժամանակի միջև։ Գիտությունը, նրա անընդհատ զարգացումը էական ներգործություն են ունենում արտադրողական ուժերի զարգացման, արտադրական պրոցեսների կատարելագործման, աշխատանքի արտադրողականության անշեղ աճի վրա, որոնք, իրենց հերթին, հնարավորություն են տալիս ընդարձակելու ազատ ժամանակի շրջանակները։ Մյուս կողմից՝ ազատ ժամանակն ուղղակի, հակադարձ ազդեցություն է գործում գիտության զարգացման վրա այն իմաստով, որ լայն հնարավորություններ է ստեղծում անհատի գիտելիքների հարստացման համար և գիտական շատ



ու շատ հարցեր իրենց մշակումն ու լուծումն են ստանում նաև ազատ ժամանակվա ընթացքում։

Ազատ ժամանակի՝ արտադրողական ուժի վերածվելու պրոցեսն անխզելի կապի մեջ է աշխատանքի ստեղծագործական բնույթի զարգացման հետ։ Որքան ավելի է ստեղծագործական դառնում աշխատանքը, այնքան ավելի լիակատար է դրսևորվում ազատ ժամանակը որպես արտադրողական ուժ։ Եվ, իրոք, մի՞թե կարելի է գիտնականին, կոնստրուկտորին, ճարտարապետին, նորարարին, գյուտարարին և ստեղծագործական աշխատանքի շատ ու շատ ներկայացուցիչների ստիպել իրենց գործերի վրա աշխատել, մտածել, որոնել միայն աշխատանքային ժամերին։ Եվ մի՞թե փաստ չէ, որ շատ ու շատ հայտնագործություններ, գիտական սխրանքներ կատարվում են հենց ազատ ժամանակի ընթացքում։ Իհարկե, այն ժամանակ, երբ աշխատողից արտադրության պրոցեսում պահանջվում էր միայն կոպիտ ֆիզիկական ուժի գործադրում, դժվար թե աշխատանքից հետո նա մտածեր այդ գործերի մասին։ Ներկայումս վիճակը փոխվում է։ Աշխատանքը գնալով ավելի ու ավելի է ձեռք բերում ստեղծագործական բնույթ, որը բացառում է նրա՝ ժամանակի իմաստով սահմանափակությունը։

Ազատ ժամանակը հասարակության հարստության չափանիշն է։ Կ. Մարքսը նշում էր, որ ապագայում «...հասարակության հարստության չափանիշը կլինի ոչ թե աշխատանքային ժամանակը, այլ ազատ ժամանակը» («Большевик», 1939, 11—12, էջ 64)։ Գլխավոր արտադրողական ուժի բազմակողմանի զարգացումը, ինքնակրթությունը, գիտական աշխատանքը, նորարարությունն ու գյուտարարությունը, գեղարվեստական ինքնագործունեությունը և այլն, որոնք կիրագործվեն գերազանցապես այդ ժամանակահատվածում, հասարակությանը կտան ո՛չ միայն նյութական վիթխարի լրացուցիչ արժեքներ, այլև լիովին կբավարարեն նրա անդամների հոգևոր պահանջմունքները։

Ուրեմն ազատ ժամանակը անգործության, պարապ ժամանցի, պասսիվ հանգստի կամ միայն զվարճանքի ժամանակ չէ։ Ի դեպ պետք է նշել, որ վերջին շրջանում լույս տեսած մի շարք աշխատություններում և առանձնապես կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների փորձին նվիրված գործերում ազատ ժամանակը հաճախ պատկերվում է միայն պասսիվ հանգստի ձևով։ Այսպես, օրինակ, մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի հրատարակած Հանուն կոմունիստական աշխատանքի ժողովածուում (1963 թ.) զետեղված շատ հոդվածներում կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների անդամների ազատ ժամանակի օգտագործումը հանգեցված է բացառապես կինո-թատրոն հաճախելուն, միմյանց ծննդյան օրերը նշելուն և համանման երեկույթների։ Սա, ըստ էության, ազատ ժամանակի հասկացության թյուրըմբռնում է։

Բանվորական օրվա կրճատումը և ազատ ժամանակի մեծացումը մի կողմից, հասկանալի պատճառներով, վերացնում են մարդու ֆիզիկական ու հոգևոր չափից ավելի ծանրաբեռնվածությունը և աշխատանքի այդ տարատեսակների միջև եղած անհամամասնությունը անհատի համար, աշխատաժամանակը հասցնում են այնպիսի չափի, որը լիովին համապատասխանում է առողջ օրգանիզմի պահանջներին, մյուս կողմից՝ լայն հնարավորություններ են ստեղծում անհատի գիտելիքների հարստացման, կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման համար, դառնում են մարդու կենսագործունեու-

թյան տարբեր տեսակների ներդաշնակ հերթափոխության հիմնական պայմաններից մեկը:

Եթե ամփոփելու լինենք վերը շարադրվածը, ապա պետք է ասել որ այնպես, ինչպես հասարակության զարգացումը չի կարելի ըմբռնել առանց աշխատանքի միջոցների զարգացման աստիճանը հաշվի առնելու (որովհետև տնտեսական դարաշրջաններն իրարից տարբերվում են ոչ թե նրանով, թե ինչ է արտադրվում, այլ նրանով թե ինչպես, աշխատանքի ինչ միջոցներով է արտադրվում), այնպես էլ հասարակության զարգացման մակարդակի մասին լիակատար ըմբռնում չի կարող լինել առանց ազատ ժամանակի ֆակտորի հաշվառման:

Ահա թե ինչու մեր ժամանակաշրջանում, ինչպես երբեք, սոցիալական սկզբունքային նշանակություն է ձեռք բերում ազատ ժամանակի մեծացման և նրա ռացիոնալ օգտագործման պրոբլեմը: Ազատ ժամանակը հասարակական մի վիթխարի հարստություն է և հասարակության համար միևնույնը չէ, թե այն ինչպես կօգտագործվի:

Սոցիալիստական հասարակարգում կա անհրաժեշտ բանվորական օրվա կրճատման երկու ռեալ ուղի: Առաջինը արտադրության բուռն աճն է, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը և դրանց հիման վրա աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացումը, որի մասին խոսվեց վերևում, իսկ երկրորդը՝ աշխատանքի ընդհանրականության կիրառումն է: Ազատ ժամանակի մեծացման գործում երկրորդական դեր չի խաղում նաև արտաաշխատանքային ժամանակում եղած զբաղված ժամանակի խնայողությունը:

Ի հակադրություն կապիտալիստական հասարակարգի, որտեղ Մարքսի դիպուկ արտահայտությամբ մի դասակարգի ազատ ժամանակը ստեղծվում է մասսաների ամբողջ կյանքը աշխատաժամանակ դարձնելու միջոցով, սոցիալիստական հասարակարգում իրագործվում է «ով չի աշխատում, նա չի ուտում» սկզբունքը: Այստեղ աշխատանքի իրավունքը զուգակցվում է աշխատելու ընդհանուր պարտավորության հետ: Աշխատանքի ընդհանրականությունը հսկայական նշանակություն ունի հասարակական արտադրությունն ընդլայնելու, աշխատանքային ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու համար, որի ուղղակի հետևանքներից մեկն էլ բանվորական օրվա կրճատումն է: Այս մոմենտը հանճարեղ կերպով նկատեցին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը: «Անտի-Դյուրինգում» Ֆ. Էնգելսը գրում էր, որ անհրաժեշտ է ձեռք բերել արտադրողական ուժերի այնպիսի բարձր մակարդակ, որը հնարավորություն տա աշխատանքը բաշխելու հասարակության՝ առանց բացառության բոլոր անդամներին և դրանով իսկ կրճատել անհրաժեշտ աշխատաժամանակը, որպեսզի բոլորի համար ազատ ժամանակ լինի մասնակցելու հասարակության ինչպես տեսական, այնպես էլ պրակտիկ գործերին: Այս միտքն իր ամբողջական և կուռ ձևակերպումն ստացավ «Կապիտալում»: Կ. Մարքսը գրում էր. «Աշխատանքի տվյալ ինտենսիվության ու տվյալ արտադրողական ուժերի դեպքում հասարակական աշխատանքային օրվա այն մասը, որ անհրաժեշտ է նյութական արտադրության համար, այնքան ավելի կարճ է, հետևապես, անհատի ազատ ու հասարակական ազատ գործունեության համար մնացող ժամանակն այնքան ավելի մեծ է, որքան ավելի հավասարաչափ է բաշխված աշխատանքը հասարակության բոլոր աշխատունակ անդամների միջև, որքան հասարակության մի խավ



ավելի քիչ հնարավորություն ունի աշխատանքի բնական անհրաժեշտությունն իր վրայից թոթափելու և մի ուրիշ խավի վրա բարդելու: Այս կողմից աշխատանքային օրվա կրճատման բացարձակ սահմանն աշխատանքի ընդհանրականությունն է» (Կ. Մարքս, «Կապիտալ», հ. 1, էջ 553):

Կ. Մարքսը միաժամանակ նշում էր, որ որքան բարձր տեմպերով են զարգանում արտադրողական ուժերը, այնքան ավելի են մեծանում աշխատանքային օրվա կրճատման հնարավորությունները:

Անժխտելի փաստ է, որ բանվորական անհրաժեշտ օրվա կրճատման պրոցեսը տեղի է ունենում նաև կապիտալի աշխարհում: Կապիտալիզմի կլասիկ երկրում՝ ԱՄՆ-ում, օրինակ, աշխատաժամանակն ընդունված է 40.4-ժամյա բանվորական շաբաթը, որը տարբեր ժամանակներում տատանվում է 39—45 ժամվա միջև: Չխոսելով այն մասին, որ կապիտալի աշխարհում, համարյա միշտ, բանվորական օրվա կրճատումը ձեռք է բերվում դասակարգային սուր մարտերի միջոցով և յուրաքանչյուր այդպիսի կրճատումից հետո ձեռնարկատերերը դա «հատուցում» են աշխատանքի հարկադրական սիստեմն ու ինտենսիվությունն այն աստիճան բարձրացնելով, որ աշխատանքի շահագործման նորման ո՛չ միայն չի իջնում, այլ բարձրանում է, այստեղ անհրաժեշտ է միաժամանակ նկատի ունենալ երկու շատ կարևոր հանգամանք: Նախ, բանվորական օրվա միջին թվերի հետևում թաքնված է բանվորների մի մասի աշխատաժամանակի չափազանց երկարությունը և մյուս մասի՝ մասնակի գործազրկությունը: Այսպես, ԱՄՆ-ում 1—34 ժամ աշխատում են բանվորների 21,4 տոկոսը, 35—40 ժամ՝ 47,6 տոկոսը, 41—48 ժամ՝ 15 և 49 ու բարձր՝ 16 տոկոսը: Ֆրանսիայում, որտեղ պաշտոնապես ընդունված է 40-ժամյա բանվորական շաբաթ, շատ-շատերն աշխատում են մինչև 48 ժամ, իսկ մետալուրգիական արդյունաբերության բանվորների ճնշող մասը՝ 50—60 ժամ (տե՛ս «Коммунизм и труд», 1964, էջ 67):

Մյուս կարևոր հանգամանքը ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման հարցն է: Բուրժուական սոցիոլոգները, հակադրելով աշխատաժամանակն ազատ ժամանակին, ամեն կերպ նսեմացնում են աշխատանքի դերը անհատի զարգացման գործում: Այսպես, Մ. Կապլանն իր «Հանգիստը Ամերիկայում» գրքում պնդում է, որ մեր դարաշրջանում, երբ գնալով մեծանում է ազատ ժամանակի նշանակությունը, աշխատանքն արդեն չի կարող դիտվել անհատի ծաղկման հիմնական կամ բացառիկ գործոնը: Ըստ նրա, հասարակության բաժանումը սոցիալական տարբեր դասակարգերի ոչ թե նյութական հարաբերությունների սիստեմում նրանց օբյեկտիվ դրության, այլ նրանց կյանքի տարբեր բնույթի արդյունք է, որտեղ ազատ ժամանակը վճռական դեր է խաղում:

Չխոսելով այն մասին, որ նման պնդումները չունեն ոչ գիտական և ոչ էլ պրակտիկ հիմք, անհրաժեշտ է նշել, որ կապիտալիզմի պայմաններում ճնշման ու շահագործման արտադրահարաբերությունների ուժով ո՛չ միայն աշխատանքը, այլև ազատ ժամանակը չի կարող լինել անհատի բազմակողմանի զարգացման պայման (այստեղ, իհարկե, պետք է տարբերել աշխատանքը՝ որպես անհատի զարգացման հիմք, որը եղել է և մշտապես կլինի, և աշխատանքը՝ որպես անհատի բազմակողմանի զարգացման հիմք, որն այդպիսին է դառնում միայն կոմունիստական հասարակարգում):

Որ իրոք կապիտալիզմն աննշան պայմաններ է ստեղծում ժողովրդական լայն մասսաների կողմից ազատ ժամանակը ռացիոնալ օգտագործելու համար,

*խոստովանում են հենց իրենք՝ կապիտալի աշխարհի ողջախոհ մտածողները: Ամերիկյան մանկավարժ, գրող և նկարչուհի դ'Արսի Էյմանը տագնապով գրում է. «Տեխնիկական պրոգրեսի մեր դարում հատուկ նշանակություն է ձեռք բերում մասսաների հանգստի պրոբլեմը: Նախկինում մարդիկ երազում էին այն ժամանակների մասին, երբ կոչնչացվի ֆիզիկական աշխատանքի ստրկությունը, երբ մինիմում չափով կատարելագործելով անհրաժեշտ աշխատանքը, նրանք կթոթափեն ծանր պարտականությունները և կկարողանան ազատ օգտվել իրենց կյանքի մեծ մասից: Դա աստիճանաբար ռեալություն է դառնում հողագնդի ազգաբնակչության նշանակալից մասի համար, բայց փոխանակ այն իր հետ բերելու երկար սպասած դրախտը, ծնում է նոր պրոբլեմներ: Մարդիկ դատարկություն և ինչ-որ ցրվածություն են զգում ազատության երկար ժամերի հանդեպ, որոնք նրանք ստացել են և որոնց համար նախապատրաստված չեն»* (И. Иойрыш, **Твой труд и коммунизм**, 1964, *էջ 81—82):*

*Բուրժուական մտածողները խոստովանում են, որ կապիտալի աշխարհում շատ շատերը հոգեբանական սարսափ են ապրում ազատ ժամանակի հանդեպ, որովհետև չգիտեն ինչով լցնել այն: Ավելին, երբեմն ազատ ժամանակը ո՛չ միայն չի օգտագործվում անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացման համար, այլև դառնում է բարքերի փչացման, կենցաղային այլանդակությունների միջոց: Ավստրիական գիտնական Է. Ֆրանկլը հետևյալ կերպ է բնութագրում ունևոր ընտանիքների երիտասարդության վարքագիծը ազատ ժամանակում. «Համբուրգում այդ երիտասարդության 58 տոկոսը «գրոհում» է կինո հենց նրա համար, որ նրանք չգիտեն, թե ինչ անեն ազատ ժամանակում... Զվարճանքն արդեն նրանց լրիվ հագեցրել է և նրանց մոտ բթացել է հետաքրքրությունը սովորականի նկատմամբ: Ավելին, սեռնացիաների պահանջմունքը... հասցրել է սուր զգացումների գերմոլուցքի... Հարուստ շրջանների տղամարդկանց 75 տոկոսը դավաճանում է իրենց կանանց» (տե՛ս,* «Вопросы философии», *1964, № 2, էջ 60):*

*Ժամանակակից բուրժուական «հանգստի սոցիոլոգիայի» գլխավոր նպատակն է աշխատավորներին հեռու պահել քաղաքական ակտիվ գործունեությունից, թունավորել նրանց գիտակցությունը, որովհետև, ինչպես խոստովանում է ամերիկյան սոցիոլոգ Ջ. Սաուլը, ռեալ վտանգ կա, որ ազատ ժամանակը ներքնախավերում կարող է օգտագործվել հասարակության հիմքերը քայքայելու համար:*

*Սոցիալիզմի հաղթանակով լիկվիդացվեց բանվորական և ազատ ժամանակի միջև եղած անտագոնիզմը: Նոր հասարակարգում ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործումը հանդես է գալիս որպես սոցիալիստական արտադրության օբյեկտիվ պահանջ: Այստեղ ազատ ժամանակի մեծացումը միաժամանակ զուգակցվում է դրա ռացիոնալ օգտագործման համար նյութական բազայի ստեղծմամբ և նոր հասարակարգը ոչ միայն վերահսկում է ազատ ժամանակի օգտագործման վրա, այլև պլանավորում այդ ժամանակի ինչպես քանակական աճը, այնպես էլ դրա որակական օգտագործումը:*

*Ազատ ժամանակի օգտագործման վրա պլանային ներգործության միջոցներից մեկն, օրինակ, երեկոյան և հեռակա ընդհանուր, մասնագիտական կրթության սիստեմն է, որն ստեղծված է արտադրության օբյեկտիվ պահանջները հաշվի առնելու հիմքի վրա: Ակադեմիկոս Ս. Ստրումիլինի հաշվումներով 1924 թվականին ուսման վրա կատարված ազատ ժամանակի ծախսումները բանվոր-տղամարդու մոտ կազմել են ամսական 7,85 ժամ, իսկ կանանց մոտ՝ 5,54 ժամ: ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի Սիբիրի բաժանմունքի ուսումնասիրությունների համաձայն 1958—1960 թթ. Կրասնոյարսկի աշխատավորության ժամանակի բյուջեում ուսմանը հատկացվել է ամսական 15—20 ժամ, իսկ Հայկական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտի հաշվումներով Երևան քաղաքի 3363 աշխատավորի հաշվով՝ 21 ժամ: Ուսմանը հատկացվող ազատ ժամանակի տոկոսը շատ ավելի բարձր է նրանց մոտ, ովքեր համատեղում են աշխատանքը և ուսումը: Այստեղ տղամարդկանց մոտ այն հասնում է 100, իսկ կանանց մոտ՝ 85 ժամի:*

*Սխալ կլիներ, իհարկե, գործը պատկերացնել այնպես, թե աշխատավորների ազատ ժամանակը տրամադրվում է միայն ուսմանը. այն հավասարապես օգտագործվում է նաև գիտությամբ, նորարարությամբ, արվեստով ու գրականությամբ, գեղարվեստական ինքնագործունեությամբ, հասարակական աշխատանքով, ֆիզկուլտուրայով ու սպորտով զբաղվելու համար:*

*Սոցիալիզմի պայմաններում ազատ ժամանակն անհատի համար լիակատար հնարավորություններ է ստեղծում դրսևորելու իր ունակություններն ու ձիրքերը գործունեության ամենատարբեր բնագավառներում, ներդաշնակորեն զուգակցելու զբաղմունքի տարբեր տեսակները:*

*Խոսելով աշխատանքի բնույթի փոփոխման, անհատի բազմակողմանի զարգացման գործում ազատ ժամանակի դերի մասին, չպետք է աչքաթող անել այն հանգամանքը, որ դեռևս կան չլուծված շատ խնդիրներ, որոնք խոչընդոտում են այդ ժամանակի ռացիոնալ օգտագործմանը:*

*Ամենից առաջ պետք է որոշակիորեն տարբերել այդ ժամանակը արտաաշխատանքային ժամանակից, մի բան, որ երբեմն առանձին ընկերներ շփոթում են: ՍՍՌՄ բանվորների և ծառայողների ժամանակի ֆոնդի ուսումնասիրությունները ցույց են տվել, որ նրանց ազատ ժամանակը կազմում է արտաաշխատանքային ժամանակի* $1/5—1/3$ *մասը: Ժամանակի այդ բյուջեն քիչ է հատկապես կանանց, տնային տնտեսուհիների մոտ: Այս նշանակում է, ամենից առաջ, որ ազատ ժամանակի վիթխարի ռեզերվ է թաքնված հենց արտաաշխատանքային ժամանակում:*

*Իսկ որ դա այդպես է, կարելի է ցույց տալ բազմաթիվ փաստերով ու օրինակներով: Վերցնենք, թեկուզ և արտաքուստ աննշան թվացող, տնային, կենցաղային աշխատանքը: Մեր երկրում ներկայումս միայն ամենօրյա սննդի պատրաստման գործով զբաղված է 40—50 միլիոն կին: Աշխատող կանանց տնային-կենցաղային աշխատանքը օրվա ընթացքում կազմում է 4—5 ժամ, որն աշխատաժամանակի հետ միասին կազմում է 11—12 ժամ: Տնային աշխատանքի և ինքնասպասարկման վրա երկրում տարեկան ծախսվում է 100 միլիարդ մարդ-ժամ (տե՛ս* «Известия», *14 ապրիլի, 1964 թ.): Եթե այս ամենին ավելացնենք նաև այն, որ տնային-կենցաղային աշխատանքը միատիպ է, միապաղաղ, քիչ ստեղծագործական ու հոգնեցուցիչ և շատ քիչ չափով է նպաստում անհատի բազմակողմանի զարգացմանը, ապա պատկերն ավելի լրիվ կլինի:*

*Բացի այդ, հարկավոր է միայն պատկերացնել, թե հասարակությունն ինչպիսի հսկայական լրացուցիչ նյութական ու հոգևոր արժեքներ կստեղծեր, եթե արտադրողական այդ վիթխարի ուժը ձերբազերծվեր վերը նշված քիչ ստեղծագործական աշխատանքից: Այդ նշանակում է, որ տնային աշխատանքը կլանում*

է ո՛չ միայն անհատի ազատ ժամանակի մի զգալի մասը, այլև հասարակական անհրաժեշտ այն ժամանակը, որը պետք է նյութական և հոգևոր արժեքներ ստեղծելու համար։ Ահա թե ինչու տնային աշխատանքի ռացիոնալիզացիան, դրա մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը ունեն ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական մեծ նշանակություն։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ միայն կենցաղի լրիվ էլեկտրիֆիկացումը վերոհիշյալ 100 միլիարդ մարդ-ժամը կկրճատեր 40 տոկոսով և յուրաքանչյուրի ազատ ժամանակը կմեծացներ օրական 2 ժամով։

ՍՍՌՄ-ում արդեն որոշ քայլեր կատարվել են կենցաղի այդ բարդ պրոբլեմների լուծման ուղղությամբ։ Այսպես, եթե 1940 թվականին մեր երկրում գործում էին 87 հազար նախաճաշարան, թեյարան, կաֆե, ճաշարան ու ռեստորան, ապա 1962 թվականին դրանց թիվը հասնում էր 163 հազարի։ Բացի դրանից, այդ օբյեկտներից շատերն անցել են ինքնասպասարկման, որը 2—3 անգամ մեծացրել է դրանց թողունակությունը։

Կատարվածը, սակայն, հեռու է բավարար լինելուց։ Բնակչության ճնշող մեծամասնությունը դեռևս սնվում է տանը, որովհետև հասարակական սննդի օբյեկտներում քիչ է տեղերի քանակը. յուրաքանչյուր 1000 բնակչի հաշվով ճաշարաններում, կաֆեներում և ռեստորաններում այն հասնում է ընդամենը 18-ի։ Կոմունիստական պարտիան իր ծրագրում խնդիր է դրել առանձնահատուկ ուշադրություն դարձնել հասարակական սննդի ցանցի ընդարձակմանը և դրանց արտադրանքի որակի բարձրացմանն այն հաշվով, որպեսզի ճաշարանների ճաշերը լինեն համեղ, սննդարար և ավելի էժան նստեն, քան տանը պատրաստածը։ Հասարակական սննդի արտադրանքի գների իջեցումը, նշված է ՍՄԿՊ ծրագրում, պետք է առաջ անցնի պարենամթերքի գների իջեցումից և այդ ամենի շնորհիվ առաջիկա 10—15 տարում հասարակական սնունդը պետք է գերակշռող տեղ գրավի տնային սննդի համեմատությամբ։

Այստեղ պակաս կարևոր նշանակություն չունեն նաև բուն տնային աշխատանքի մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը։ Տնային տնտեսության մեջ հատկապես կնոջ աշխատանքը կրճատելու և թեթևացնելու նպատակով, պարտիան խնդիր է դրել առաջիկա տարիներին տնային տնտեսության մեջ լայնորեն կիրառել կենցաղային մեքենաները, հարմարանքներն ու էլեկտրասարքերը։ Այս առնչությամբ պետք է լուրջ ուշադրություն դարձնել այն փաստի վրա, որ կենցաղային աշխատանքի էլեկտրիֆիկացման մակարդակը դեռևս մեծ չափով կախված է աշխատողի նյութական դրությունից։ ՌՍՖՍՌ-ի կենտրոնական վիճվարչության ուսումնասիրությունների համաձայն, օրինակ, 1962 թվականի հունիսի 1-ի տվյալներով, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների ընտանիքները սառնարաններով ապահովված էին 3 անգամ, փոշեծծիչներով՝ 2, լվացքի մեքենաներով՝ 1,5 անգամ ավելի, քան բանվորների ընտանիքները և շատ ավելի, քան կոլտնտեսականներինը։

Արտաաշխատանքային ժամանակի մեջ մեծ տոկոս է կազմում երեխաների սպասարկմանն ու դաստիարակությանը հատկացված ժամանակը։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ այն ընտանիքներում, որոնք իրենց երեխաներին տեղավորել են այս կամ այն մանկական հիմնարկում, տնային աշխատանքների վրա կատարված ծախսումները կրճատվել են 2—3 ժամով։ Աշխատանքի գիտա-հետազոտական ինստիտուտի հետազոտությունների համաձայն երկրի բոլոր բանվոր-ծառայողների ընտանիքներում (միասին վերցրած)



երեխաների դաստիարակությանը տարեկան հատկացվում է 30 միլիարդ մարդ-օր, որը հավասար է մոտավորապես 15 միլիոն մարդու տարեկան միջին աշխատաժամանակին։ Այս ամենից պարզ է դառնում, թե ազատ ժամանակի մեծացման, անհատի բազմակողմանի զարգացման, հանրային հարստության ավելացման գործում ինչպիսի վիթխարի նշանակություն ունի մանկական հիմնարկների ցանցի ըստ ամենայնի ընդարձակումը։ Եթե 1958 թվականին մանկամսուրներով և մանկապարտեզներով ապահովված էին 3,4 միլիոն երեխա, ապա յոթնամյա պլանի համաձայն արդեն այս տարի այդ թիվը կհասնի 7 միլիոնի։ Մեծ չափերով ընդարձակվում է երկարօրյա և գիշերօթիկ դպրոցների ցանցը, որի շնորհիվ շատ ծնողներ ազատվում են դպրոցահասակ երեխաների ամենօրյա սպասարկումից։

Ազատ ժամանակի վիթխարի ռեզերվ է թաքնված նաև աշխատանքի վայրը գնալու և վերադառնալու ժամանակի մեջ։ Աշխատանքի անբավարար կազմակերպման, տրանսպորտի ծանրաբեռնվածության հետևանքով աշխատավորներն ստիպված են հսկայական ժամանակ կորցնել։ Այսպես, Երևանի չորս խոշոր ձեռնարկությունների (էլեկտրալամպերի, ավտոդողերի գործարաններ, կարի ֆաբրիկա, հրուշակեղենի կոմբինատ) 3363 աշխատողի հաշվով աշխատանքի վայրը գնալու և վերադառնալու համար ծախսվում է արտաաշխատանքային ժամանակի 8,4 տոկոսը, այսինքն՝ նրանց ազատ ժամանակի մոտավորապես կեսի չափով։

Մեր կարծիքով բացարձակ սահմաններ չկան աշխատանքային և ազատ ժամանակների միջև և այդ կապակցությամբ սոցիոլոգիական ուսումնասիրությունները բոլոր դեպքերում էլ պետք է համարել մոտավոր, որովհետև ոչ ոք չի կարող, օրինակ, մարդուն արգելել իր գործերի մասին մտածել թեկուզ և աշխատանքի վայրը գնալու և վերադառնալու ժամանակ կամ իր գյուտի ու նորարարության մասին խորհել հանգիստ պառկած վիճակում, որևէ պրոբլեմի շուրջը վիճել փողոցում զբոսնելիս և այլն, և այլն։

Մեր ժամանակներում առանձին մարդկանցից հաճախ կարելի է լսել, թե «ժամանակը թռչում է աննկատելիորեն»։ Անհրաժեշտ է ամենայն լրջությամբ մտածել այդ մասին։ Վերոհիշյալ 3363 աշխատողի հաշվով, օրինակ, եթե ֆիզկուլտուրային և սպորտին ամսական հատկացվում է միջին հաշվով միայն 3 ժամ, ապա զանազան զվարճանքներին, սենյակային խաղեր կազմակերպելուն՝ 17—25 ժամ։ Թանկարժեք ժամանակի վիթխարի կորուստ է այս։

Ժամանակը գնահատելը մարդու կուլտուրայի չափանիշն է։ Անհրաժեշտ է մշտապես հիշել Կ. Մարքսի խոսքերն այն մասին, որ ամեն մի խնայողություն ամենից առաջ ժամանակի խնայողություն է։ Ազատ ժամանակը կոմունիստական հասարակարգի մարդու ամենամեծ հարստությունն է և պետք է թանկ գնահատել այն։



Խ. ԽԱՇԽԱՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԵՎ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ

*Արդի դարաշրջանում, ինչպես երբեք, դժվար է պատկերացնել հասարակության նորմալ գոյությունը և զարգացումը առանց քաղաքական ու հասարակական կյանքին, պետության կառավարման գործին ժողովրդի ամենաակտիվ մասնակցության։ Ժողովուրդը պատմության կերտողն է, բոլոր նյութական բարիքների ստեղծողը. նա պետք է կառավարի պետությունը, որոշի նրա քաղաքականությունը և երկրի զարգացման ուղղությունը։ Բայց կապիտալիստական հասարակարգը, որը հիմնված է շահագործման և աշխատավոր մեծամասնության նկատմամբ փոքրամասնության քաղաքական գերիշխանության վրա, չի կարող իսկական դեմոկրատական ազատություններ տալ ժողովրդին։ Դա կապիտալիստական հասարակարգի խոր հակասություններից մեկն է։ Բուրժուական կեղծ ու ստապատիր դեմոկրատիան ինչ-որ պատահական բան չէ, որը ցանկության դեպքում կարելի է ուղղել, այն բխում է կապիտալիստական հասարակարգի էությունից, նրա բնածին արատն է։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիան մեկընդմիշտ վերջ տվեց մարդու կողմից մարդու շահագործմանն ու իրավունքների ոտնահարմանը, ստեղծվեցին երկրի հասարակական ու քաղաքական կյանքին ժողովրդի ամենալայն մասսաների ակտիվ մասնակցությունն ապահովող բոլոր պայմանները։ Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում սովետական ժողովրդի ցուցաբերած ստեղծագործական ակտիվությունը դարձել է սովետական իրականության օբյեկտիվ օրինաչափությունը։ Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի վրա հիմնված հասարակությունը լավագույն կերպով է լուծել ո՛չ միայն երկրի տնտեսական զարգացման, այլև հասարակական կյանքի դեմոկրատական վերափոխման պրոբլեմները։*

*Սովետական հասարակության տնտեսական ու սոցիալական վերափոխությունները ուղեկցել և ուղեկցում են սովետական մարդկանց հոգեկան կերպարի ու հայացքների փոփոխությունները։ Աճել է սովետական մարդկանց նոր սերունդ, որը դաստիարակված է մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարներով և կենսագործում է մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ նախագծումները։*

*Այն ժամանակ, երբ մեր երկիրն ընթանում էր դեպի սոցիալիզմ և կոմունիզմ, տարօրինակ կերպով հանդես եկան պնդումներ, թե դասակարգային պայքարը մեղանում սրվում է։ Այժմ բոլորի համար պարզ է, որ այդ «տեսու-*



*թյունը» հրապարակ էր հանված սոցիալիստական օրինականության և սովետական դեմոկրատիայի այն կոպիտ խախտումներն արդարացնելու նպատակով, որ թույլ էին տրվում Ստալինի անձի պաշտամունքի ժամանակաշրջանում։ Եվ դա այն դեպքում, երբ ժողովրդական լայն մասսաները հսկայական խանդավառությամբ էին աշխատում հնգամյակների կառույցներում, ավելի ակտիվ էին մասնակցում երկրի հասարակական և քաղաքական կյանքին։*

*Մեր հասարակության պատմական փորձը լիովին հաստատեց լենինյան այն դրույթը, որ սովետները աշխատավորության համայնապարփակ մասսայական կազմակերպությունն են, պետական իշխանության այն ամենադեմոկրատական ձևը, որն ապահովում է ժողովրդի ամենալայն ներգրավումը «պետության դեմոկրատական կառավարման մեջ մշտական և անպայման, ընդամին վճռողական մասնակցության» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 606)։*

*Հանուն պարտիական կյանքի լենինյան նորմերի վերականգնման սոցիալիստական դեմոկրատիայի աղավաղումների դեմ կոմունիստական պարտիայի մղած վճռական պայքարը նպաստավոր պայմաններ ստեղծեց արդյունաբերության, գյուղատնտեսության կառավարման գործում, երկրի հասարակական և քաղաքական կյանքին աշխատավոր մասսաների լայն ներգրավման, նրանց ակտիվ մասնակցության համար։*

*Երբ խոսք է լինում դեմոկրատիայի մասին, ամենից առաջ նկատի են առնում ընտրական սիստեմը, կապիտալիստական երկրներում աշխատավորության նկատմամբ եղած սահմանափակումները։ Սովետական դեմոկրատիան արմատապես տարբերվում է բուրժուական դեմոկրատիայից։ Այդ դրսևորվում է ո՛չ միայն ընտրական սիստեմների տարբերություններում, այլև ամենից առաջ այն բանում, որ սովետական դեմոկրատիայի պայմաններում սոցիալիստական հասարակարգի աշխատավորներն իրենք են հանդիսանում գործարանների, ֆաբրիկաների, սովխոզների ու կոլտնտեսային արտադրության տերը, որ իրենց պետության, իրենց արհեստակցական կազմակերպությունների միջոցով նրանք կառավարում են արտադրությունը։ Իսկ կապիտալիստական երկրներում նյութական արտադրության ոլորտում՝ հասարակության կյանքի այդ ամենակարևոր ասպարեզում, աշխատավորները խիստ իրավազուրկ են։ Սոսկ աշխատուժ են նրանք՝ կոչված կատարելու իրենց հանձնարարված աշխատանքը՝ մի որոշ աշխատավարձով։ Արտադրության կառավարումը և նյութական բարիքների բաշխումն ամբողջովին գտնվում են տիրապետող դասակարգի, մոնոպոլիստական կապիտալի ներկայացուցիչների ձեռքում։*

*Ամերիկացի սոցիոլոգ Սիմոն Մարտին Լինսետը «Ամերիկա» ամսագրի 99-րդ համարում հրապարակված* Արդի ամերիկյան սոցիոլոգիան *հոդվածում հարկադրված է խոստովանել, որ «Ամերիկյան արդյունաբերության և կառավարության մեջ այսպիսով ղեկավար դիրքեր են գրավում այն անձինք, որոնք դուրս են եկել հասարակության արտոնյալ խավերից՝ առանց բնակչության մեջ նրանց ունեցած թվական կազմի որևէ համամասնության»։*

*Սովետական Միության մեջ բանվորները, կոլտնտեսականները և ինտելիգենցիան ոչ միայն ունեն ամենալայն իրավունքները պետական օրգանների ընտրությունների ընթացքում, այլև վճռական դեր են խաղում արտադրության կառավարման գործում։ Արդյունաբերական ձեռնարկություններում բանվորներն ակտիվ մասնակցում են արտադրության պլանավորմանը, ձեռնարկության հետագա զարգացման ու ընդարձակման հարցերի լուծմանը, սարքավոր-*

ման մոդեռնացմանը, աշխատանքի նորմավորման և վարձատրության հար-
ցերի լուծմանը: Սոցիալական ապահովության, ֆիզկուլտուրայի և սպորտի
զարգացման, սանատորիական-կուրորտային բուժման հարցերը մեզ մոտ
ամբողջովին տնօրինում են արհեստակցական միությունններն ու նրանց տե-
ղական օրգանները: Ձեռնարկությունների ադմինիստրացիան բոլոր հիմնա-
կան միջոցառումներն իրականացնում է բանվորական կազմակերպություն-
ների հետ համաձայնեցրած: Շահութաբեր աշխատանքի շնորհիվ ստեղծված
ֆոնդերը ձեռնարկությունների դիրեկտորները ծախսում են արհեստակցական
միությունների տեղական օրգանների գիտությամբ: Ոչ մի բանվոր կամ ծա-
ռայող չի կարող ազատվել ձեռնարկությունից առանց արհմիութենական
կազմակերպության համաձայնության:

Նյութական արտադրության բնագավառում աշխատավորության լայն
խրավունքները սովետական ժողովրդի մեծագույն նվաճումն են և ցույց են
տալիս սոցիալիստական սիստեմի վիթխարի առավելությունը կապիտալիս-
տականի նկատմամբ: Արտադրության կառավարման գործում աշխատավոր-
ների ցուցաբերած ակտիվ մասնակցությունն ապահովում է սովետական էկո-
նոմիկայի զարգացման ավելի արագ տեմպերը:

Կոմունիստական պարտիան և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն
հետևողականորեն կենսագործում են ՍՄԿՊ ծրագրում նախատեսված սոցիա-
լիստական դեմոկրատիայի հետագա ընդլայնման միջոցառումները: ՍՄԿՊ
Կենտկոմի 1964 թ. հոկտեմբերյան և նոյեմբերյան պլենումները ցույց տվե-
ցին, որ մեր պարտիան մշտապես հավատարիմ է պարտիական կյանքի լե-
նինյան սկզբունքներին և ոչ ոքի թույլ չի տա խեղաթյուրել դրանք:

Մեր սոցիալական կառուցվածքի, հասարակական կյանքի մեջ եղած ար-
մատական փոփոխությունները հանգեցրին այն բանին, որ սովետական պե-
տությունը դարձավ սոցիալիստական հասարակության աշխատավորների հա-
մաժողովրդական պետություն: «Պրոլետարիատի դիկտատուրան, կատարելով
իր դերը սոցիալիզմի վերջնական հաղթանակն ապահովելու գործում,— ասված
է ՍՄԿՊ ծրագրում,— դադարել է անհրաժեշտ լինելուց: Սովետական պետու-
թյունը վերածվել է համաժողովրդական պետության, որը կպահպանվի մինչև
կոմունիզմի լիակատար հաղթանակը»:

Սոցիալիստական դեմոկրատիայի ծավալումն անընդհատ պրոցես է, այն
կզարգանա նաև առաջիկայում:

Կոմունիզմի ծավալուն կառուցման պայմաններում նոր ձևով են դրսևոր-
վում մարդկանց փոխհարաբերությունները արտադրության պրոցեսում և հա-
սարակական կյանքում: Բարձրանում է պահանջկոտությունը սոցիալիստական
հասարակության անդամների նկատմամբ՝ քաղաքացիական և հասարակական
պարտքը կատարելու գործում, գնալով աճում է գիտակցական կարգապահու-
թյան դերը:

Կոմունիստական պարտիայի և սովետական պետության գործունեության
համար Վ. Ի. Լենինը մշակել է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, ըստ
որի բոլոր օրգաններն ընտրովի են՝ վերից մինչև վար, նրանք հաշվետու են
ընտրողների առաջ և այլն: Փոքրամասնության ենթարկվելը մեծամասնու-
թյանը, ստորադաս օրգանների ենթարկվելը վերադաս օրգաններին ապահո-
վում են այդ կարգապահության խստիվ պահպանումը:

Դեմոկրատական ցենտրալիզմի այդ սկզբունքներից որևէ մեկը մոռացու-



թյան մատնելու դեպքում կխախտվի սոցիալիստական դեմոկրատիան կամ
երևան կգա մանրբուրժուական թափթփվածություն: Այդ երկուսն էլ հավասա-
րապես վնասակար են: Ոմանց մոտ նկատվող սոցիալիստական դեմոկրատիա-
յի խախտումը, կոպիտ վարչարարությունը, համոզման մեթոդի թերագնա-
հատումը կադրերի մեջ ստեղծում են անտարբեր վերաբերմունք գործի նկատ-
մամբ, անպատասխանատվություն, կաշկանդում են աշխատողների նախա-
ձեռնությունը և լուրջ վնաս հասցնում գիտակցական կարգապահության ամ-
րապնդմանը: Հստակ սահմանված կարգ ու կանոնի բացակայությունը, վերա-
դաս օրգանների ցուցումները չկատարելը կազմալուծում, խախտում են ձեռ-
նարկության ու հիմնարկի նորմալ աշխատանքը:

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացմանը պետք է ուղեկցի գիտակ-
ցական կարգապահության ամրապնդումը, իր նպատակների և իր աշխատան-
քի խնդիրների խոր ըմբռնումից բխող կարգապահությունը: Վ. Ի. Լենինն
ասում էր. «Յուրաքանչյուր խոշոր մեքենայական ինդուստրիա, այսինքն՝ սո-
ցիալիզմի հենց նյութական, արտադրական աղբյուրն ու հիմքը,— պահանջում
է անպայման և խստագույն միասնականությունն այն կամքի, որն ուղղություն
է տալիս հարյուրավոր, հազարավոր և տասնյակ հազարավոր մարդկանց միա-
տեղ աշխատանքին» (Երկեր, հ. 27, էջ 322):

Մեր իրականության մեջ մարդկանց գիտակցությունը ձևավորող հասա-
րակական ներգործության միջոցներն են՝ քաղաքական-դաստիարակչական ու
կազմակերպչական աշխատանքը, որ վարում են պարտիական կազմակերպու-
թյունները, մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը, գեղարվեստական
գրականությունը, գաղափարական դաստիարակության մյուս բոլոր միջցոնե-
րը: Աշխատավորությանը գիտակցական կարգապահության ոգով դաստիարա-
կելու գործում կարևոր է պարտիական կազմակերպությունների կազմակեր-
պական աշխատանքի դերը, մարդկանց աշխատանքի պայմանները: Մարդիկ
գիտակցաբար և համոզված են գործում այն ժամանակ, երբ կյանքը և շրջա-
պատող միջավայրը նպաստում կամ ստիպում են անել այդ: Հայտնի է, օրի-
նակ, որ ռևոլյուցիոն դարաշրջաններում հոծ մասսաները ներգրավվում են
քաղաքական կյանքում, ցուցաբերելով հերոսություն և բարձր գիտակցակա-
նություն, թեպետև նրանցից շատերը բավարար տեսական պատրաստակնու-
թյուն չունեն: Դրա հիմնական պատճառն այն է, որ ինքը կյանքն է հարկա-
դրում նրանց մտնել ռևոլյուցիոն իրադարձությունների հորձանուտը: Այդ պայ-
մաններում վճռական նշանակություն է ստանում պարտիական կազմակեր-
պությունների քաղաքական ճիշտ աշխատանքը մասսաներին մոբիլիզացնելու
և նրանց խանդավառությանն ուղղություն տալու ասպարեզում:

Մեր պարտիական կազմակերպությունները մեծ աշխատանք են կատա-
րում արտադրական պլաններն իրականացնելու, թողարկվող արտադրանքի
որակը բարելավելու, նրա ինքնարժեքն իջեցնելու, աշխատավորության կուլ-
տուր-կենցաղային սպասարկումը բարելավելու ասպարեզում աշխատավոր
մասսաների ջանքերը մոբիլիզացնելու ուղղությամբ: Մասսաների կազմա-
կերպման, գիտակցական կարգապահության ամրապնդման գործում խոշոր
նշանակություն ունի պարտիական կազմակերպությունների աշխատանքը՝ ձեռ-
նարկություններում, հիմնարկներում և ուսումնական հաստատություններում
հստակ կարգ ու կանոն սահմանելու, տեղայնության, աչքակապության, պար-
ծենկոտության դեմ պայքարելու ուղղությամբ:

Պարտիական կազմակերպությունների նպատակն է ամենուրեք պահպանել պետական մոտեցումը գործի նկատմամբ, կոլեկտիվությունը՝ հարցերը լուծելիս, բարձր պահանջկոտությունը՝ պարտիայի ու պետության որոշումները, վերադաս օրգանների ցուցումները անթերի կատարելու ասպարեզում։

Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանի կոմունիստական աշխատանքի կոլեկտիվը սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում է իր արտադրական պլանները, հաջողությամբ լուծում տեխնիկական առաջադիմության բոլոր պրոբլեմները հատկապես շնորհիվ այն բանի, որ գործարանի դիրեկցիան և պարտիական կազմակերպությունը լայն դեմոկրատիան, քաղաքական և աշխատանքային ակտիվությունը հմտորեն զուգորդում են բարձր պահանջկոտության հետ, ամենօրյա ուշադրություն են նվիրում գիտակցական կարգապահության ամրապնդման հարցերին։ Գործարանի ղեկավարության և պարտիական կազմակերպության միջև ճիշտ փոխհարաբերություններ են հաստատվել։ Դիրեկցիան բոլոր կարևորագույն միջոցառումները համաձայնեցնում է գործարանի պարտիական կազմակերպության և արհմիութենական կոմիտեի հետ։ Պարտկոմը և գործարկոմը կոլեկտիվի ջանքերը հմտորեն ուղղում են դրանց կենսագործմանը։

Գործարանի պարտիական ու բանվորական ժողովներում սկզբունքային դիրքերից և գործարար մթնոլորտում քննարկվում են պլանավորման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման, նրա ինքնարժեքի իջեցման հարցերը։ Հանգամանորեն քննադատվում են թերությունները, ամեն ոք հայտնում է իր կարծիքը, առաջարկություններ են մտցվում աշխատանքին խանգարող պատճառները վերացնելու համար։ Պարտիական և հասարակական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում նաև կոլեկտիվի անդամների կոմունիստական դաստիարակության հարցերին։ Բայց գլխավորն այն է, որ գործարանի պարտիական կոմիտեն խստորեն հետևում է, որ ժողովների որոշումներն անպայման կատարվեն, հաշվի առնվեն բոլոր քննադատական դիտողությունները։ Գործարանի ղեկավարությունը, պարտիական կոմիտեն և գործարկոմը մշտապես զբաղվում են բանվորների ու ծառայողների կուլտուր-կենցաղային պահանջները բավարարելու, նրանց հանգստի և բուժման գործը կազմակերպելու հարցերով։

Բերենք մի օրինակ, որն ակնառու կերպով ցույց է տալիս, թե կազմակերպչական աշխատանքի ճիշտ դրվածքը ինչպես է օգնում հաջողությամբ լուծելու արտադրական խնդիրները։ Գործարանում ներկայումս կառուցվում են նոր արտադրամասեր, մշակվում է նոր տեխնոլոգիա։ Մի ժամանակ շինարարական կազմակերպությունները ձգձգում էին աշխատանքը։ Եվ ահա գործարանի պարտկոմի նախաձեռնությամբ հրավիրվեցին պարտկոմի և Հայքիմարդշինի շինտրեստի պարտիական բյուրոյի համատեղ նիստեր, մշակվեցին համապատասխան միջոցառումներ և նախատեսվեց յուրաքանչյուրի անելիքը։ Գործարանի բանվորները հանձն առան սեփական ուժերով կատարել սարքավորման մոնտաժի որոշ աշխատանքներ։

Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով բանվորներին դաստիարակելու գործին նպաստում է այն հանգամանքը, որ բացատրական աշխատանքն այստեղ կատարվում է ոչ թե վերացական ձևով, այլ առաջավոր մարդկանց կոնկրետ օրինակներով։ Իսկ այդպիսի մարդկանց թիվը քիչ չէ գործարանում։ Այստեղ աշխատում են ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ Գերա-



գույն սովետների, քաղաքային և շրջանային սովետների 14 դեպուտատներ, Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի, պարտիայի քաղկոմի և շրջկոմի յոթ անդամներ, 4 հոգի արժանացել են վաստակավոր ինժեների, 3 հոգի՝ վաստակավոր ռացիոնալիզատորի պատվավոր կոչման։ 1327 բանվորներ, ծառայողներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ ստացել են կառավարական շքանշաններ ու մեդալներ։ Գործարանի անվանի ապարատավար, սոցիալիստական աշխատանքի հերոս Ս. Ամիրխանյանի անունը հայտնի է գործարանի սահմաններից շատ հեռու։

Այդ ասսր հետ մեկտեղ Կիրովի անվան գործարանի դիրեկցիան և պարտիական կազմակերպությունը անհրաժեշտ պահանջկոտություն են ցուցաբերում աշխատողների նկատմամբ։ Գործարանի, արտադրամասերի ու տեղամասերի ղեկավարների ցուցումների անվերապահ կատարումը այստեղ օրենք է յուրաքանչյուրի համար։ Երբ որևէ մեկը խախտում է կարգապահությունը, կամ թույլ է տալիս որևէ զանցանք, ապա դա լուրջ խոսակցության առարկա է դառնում տվյալ բրիգադայում կամ հերթափոխում։ Գործարանում լավ է աշխատում ընկերական դատարանը, որը յուրաքանչյուր գործ քննում է մանրամասնորեն, խիստ ուշադիր, ամեն կերպ աշխատելով օգնել ընկերոջը՝ շտկելու սխալը։

Սակայն պարտիական կազմակերպությունները ոչ ամենուրեք են խորապես ըմբռնել իրենց ֆունկցիան, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը ճիշտ կենսագործելու, դեմոկրատական հիմունքները խիստ կարգապահության հետ զուգորդելու խնդրի կարևորությունը։ Որոշ կազմակերպություններում մոռանում են, որ անկարգապահությունը, թափթփվածությունը, մարդկանց գիտակցության մեջ եղած կապիտալիզմի այդ մնացուկները դեռևս լրիվին վերացված չեն։ Մեզանում դեռևս կան պորտաբույծներ, խուլիգաններ, կան նաև այնպիսիք, որ ամեն կերպ ցանկանում են ավելի շատ ստանալ հասարակությունից և քիչ աշխատանք ներդնել ընդհանուր փորձում։ Կան նաև ձեռնարկությունների, հիմնարկների և պարտիական կազմակերպությունների այնպիսի ղեկավարներ, որոնք անտարբերությամբ են անցնում կարգապահության խախտման փաստերի կողքով, սահմանափակվում են միայն խրատներով և հարկադրանքի միջոցներ ձեռք չեն առնում աշխատանքային ու պետական կարգապահությունը խախտողների դեմ։

Արտաշատի շրջանի Արարատ սովխոզը գտնվում է Արարատյան հարթավայրի արգավանդ վայրերից մեկում և հնարավորություն ունի մեծ քանակությամբ բանջարեղեն և բոստանային կուլտուրաներ մատակարարել Երևանի բնակչությանը։ Բայց այդ հնարավորություններն այստեղ խիստ անբավարար են օգտագործվում։ Դրա հիմնական պատճառը աշխատանքային ցածր կարգապահությունն է։ Սովխոզի դիրեկտոր Ա. Կուրղինյանը և պարտիական կազմակերպության քարտուղար Ի. Հեյդարովը ձգտում են ամրապնդել կարգապահությունը, բայց նրանք սովխոզի ողջ հասարակայնությանը չեն մոբիլիզացրել պորտաբույծների և սպեկուլյատիվ տարրերի դեմ։ Այդ պատճառով էլ սովխոզում վատ աշխատող մարդկանց մի խումբ շարունակում է խախտել կարգապահությունը և անպատիժ մնալ։ Նույնիսկ նրանք, ովքեր զանազան զանցանքների պատճառով հեռացվել էին սովխոզից, շարունակում են օգտվել սովխոզի բանվորների համար նախատեսված արտոնություններից։ Այս ամենից հետո զարմանալի չէ, որ սովխոզը չի կատարում իր արտադրական պլանները։

Ավելորդ չի լինի այդպիսի ղեկավարներին հիշեցնել Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ նման տարրերի դեմ պայքարը «չի կարելի մղել միայն պրոպագանդայով և ագիտացիայով,— միայն մրցություն կազմակերպելով, միայն կազմակերպիչներ ընտրելով,— պայքար պետք է մղել նաև հարկադրանքով»։

Կարգապահության ամրապնդման հիմնական մեթոդն, իհարկե, համոզումը և դաստիարակությունն են։ Բայց դրանք չեն բացառում նաև հարկադրանքի միջոցները։ Երբ ապարդյուն են անցնում համոզման բոլոր միջոցները, պետք է դիմել նաև հարկադրանքի։ Անհրաժեշտ է ճիշտ զուգորդել համոզման ու հարկադրանքի միջոցները։ Պետք է սովորել աշխատավոր մասսաների բուռն, գարնան պես հորդահոս, բոլոր ափերից դուրս եկող միտինգային դեմոկրատիզմը միացնել երկաթյա կարգապահության հետ, աշխատանքի ժամանակ մեկ անձնավորության՝ սովետական ղեկավարին անառարկելիորեն ենթարկվելու հետ (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 326)։

Վերջին տարիներս, հատկապես, ակտիվ են գործում ընկերական դատարանները։ Կարգապահությունը խախտած բանվորի կամ ծառայողի կողքին աշխատող ընկերները դատապարտում են նրա վարքագիծը, նրանից պահանջում բարեխղճություն, ազնվություն ու կարգապահություն։ Դա հարկադրանք է։ Բայց այսպիսի հարկադրանքը ոչ այնքան պատժում, որքան ուղղում է մարդուն։

Հարկադրանքի միջոցներից են նաև յուրաքանչյուր ձեռնարկության ներքին կանոններով սահմանված տույժերը։ Բայց տույժն այն ժամանակ է հասնում իր նպատակին, երբ արժանանում է ողջ կոլեկտիվի հավանությանը, արտահայտում նրա կարծիքը։ Ուստի, պետք չէ չարաշահել տույժի ենթարկելու իրավունքը և այնպես անել, որ հասարակայնությունը հավանություն տա այդ միջոցառումներին։ Ամենօրյա վերահսկողությունը, կատարման ստուգումը, աշխատողների գործունեության պարբերական վերստուգումները. բարձր պահանջկոտությունը ոչ այլ ինչ են, եթե ոչ հարկադրանքի բավականին արդյունավետ միջոցներ։ Երբ մարդ զգում է, որ իր գործունեությունը մշտական վերահսկողության տակ է, ավելի լավ է աշխատում։ Այնտեղ, ուր չկա վերահսկողություն, չի ստուգվում առաջադրանքների կատարումը, չեն պահանջում բարձրորակ աշխատանք, թուլանում են պահանջկոտությունն ու պատասխանատվությունը, նպաստավոր պայմաններ են ստեղծվում խոտան արտադրանք տալու համար։

Ձեռնարկությունների ղեկավարները պարտավոր են լիովին օգտվել
իրենց տրված իրավունքներից։ Բայց այդ չի նշանակում, որ նրանք մասսա-
ների հետ ունեցած սերտ ու կենդանի շփումը պետք է փոխարինեն վարչարա-
րությամբ, փորձեն իրենց վեր դասել պարտիական ու հասարակական կազմա-
կերպություններից, հաշվի չառնեն նրանց կարծիքը։ Սովետական ղեկավարը
իր իրավունքները պետք է գործադրի պարտիական ու հասարակական կազմա-
կերպությունների միջոցով, ղեկավարի նրանց վրա հենված։ Նա պետք է
ուշադիր և հոգատար լինի աշխատավորության պահանջների ու կարիքների
նկատմամբ. միայն այդ ժամանակ նա հեղինակություն ու հարգանք կվա-
յելի, նրա բոլոր կարգադրությունները անվերապահորեն կկատարվեն։ Պար-
տիական կազմակերպությունները պարտավոր են վճռականորեն պաշտպանել
ձեռնարկությունների ղեկավարների արդարացի և գործարար պահանջները,
բարձրացնել կոմունիստների և անպարտիականների պատասխանատվությու-



նը՝ տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների հաջող կատարման գործում, ստեղծել ընկերականության, փոխադարձ հարգանքի ու բարձր ակտիվության մթնոլորտ։

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումը կոնկրետ միջոցառումներ մշակեց մեր երկրի գյուղատնտեսության հետագա զարգացման ուղղությամբ։ Պլենումը մի անգամ ևս պահանջեց վճռականորեն հրաժարվել վարչարարության, հրամայելու պրակտիկայից, արմատախիլ անել պարադայնության և աղմկարարության դրսևորումները։ Միաժամանակ պլենումի որոշման մեջ ասված է՝ «Հարկավոր է ամրապնդել կարգապահությունը պարտիական և պետական ապարատի բոլոր օղակներում, հանրային արտադրության բոլոր բնագավառներում, բարձրացնել յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը հանձնարարված գործի համար»։

Մեր երկրի զարգացման բոլոր էտապներում կոմունիստական պարտիան միշտ էլ գտել է կոմունիստական շինարարության կարևորագույն խնդիրների ճիշտ լուծումը, սովետական մարդկանց մոբիլիզացրել է հաջողությամբ լուծելու դրանք։ Աշխատավորներին նա հաղթանակից հաղթանակ է առաջնորդել շնորհիվ այն բանի, որ միշտ էլ սերտորեն կապված է եղել մասսաների հետ, համախմբել նրանց, բարձրացրել սովետական մարդկանց գիտակցականությունն ու կազմակերպվածությունը, որը մեր հաջողությունների գրավականն է։

## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

# ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԻ 20 ՏԱՐԻՆ


Ի. ԿԱՐՊՈՎ

Գվարդիայի գեներալ-մայոր


*Սովետական ժողովուրդը և ամբողջ առաջավոր մարդկությունը 1965 թվականի մայիսի 9-ին նշում են փառապանծ մի տարեթիվ՝ ֆաշիզմի դեմ տարած պատմական հաղթանակի 20-ամյակը։ Պատմության մեծ բնագծերը նշանավորող տարեթվերի մեջ 1945 թվականի հաղթանակի օրը առանձնահատուկ նշանակություն ունի։ Այդ օրն անմոռանալի ու թանկ է մեր երկրի ժողովուրդների, աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց համար։ Ամեն տարի մարդիկ ավելի խոր են գիտակցում ֆաշիստական Գերմանիայի ու նրա դաշնակիցների դեմ հակահիտլերյան կոալիցիայի տարած հաղթանակի համաշխարհային-պատմական նշանակությունը։*

*Ֆաշիզմի դեմ տարած պատմական հաղթանակի 20-ամյակը օրինական հպարտության զգացումով են դիմավորում սովետական մարդիկ։ Աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց և ամբողջ ազատասեր ժողովուրդների հայացքը այս օրերին ուղղված է Սովետական Միությանը, որովհետև նրանք լավ գիտեն, որ գերմանա-ֆաշիստական հորդաների ջախջախման գործում գլխավոր ու վճռական դերը պատկանում է սովետական զինված ուժերին։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակի և աշխարհում առաջին սովետական պետության ստեղծումից հետո բոլոր երկրների ռեակցիոն ուժերը, առաջին հերթին՝ ամերիկա-անգլիական իմպերիալիստներն, ատելությամբ լցվեցին երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի հանդեպ։ Սպիտակգվարդիականները, դաշինք կնքած օտարերկրյա զավթիչների հետ, արշավանքի դուրս եկան մեր երկրի դեմ, որպեսզի օրորոցում խեղդեն հենց նոր ծնունդ առած սովետական պետությանը։*

*Ահա թե ինչու սոցիալիստական հայրենիքի պաշտպանության հուսալի միջոցը Վ. Ի. Լենինը համարում էր սովետական հզոր զինված ուժերի ստեղծումը։ «Առանց սոցիալիստական ռեսպուբլիկայի զինված պաշտպանության մենք գոյություն ունենալ չենք կարող»,—հայտարարեց Վլադիմիր Իլյիչը պարտիայի VIII համագումարում՝ ՌԿ(բ)Պ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։ Հավատարիմ մնալով Իլյիչի պատգամներին, կոմունիստական պարտիան ու սովետական կառավարությունը քաղաքացիական պատերազմի հաղթական*



*ավարտից հետո մեծ ջանքեր գործադրեցին մեր սոցիալիստական մեծ տերության պաշտպանունակության ամրապնդման համար։*

*Պարտիայի քաղաքականության հաղթանակը սովետական երկրի ինդուստրացման բնագավառում է՛լ ավելի ուժեղացրեց մեր երկրի ռազմական հզորությունը և ամրապնդեց նրա պաշտպանունակությունը։ Նախապատերազմյան հնգամյակների տարիներին սովետական զինված ուժերն ստացան այն ժամանակվա անհամեմատ ավելի լավ և առաջնակարգ մարտական տեխնիկա։ Երկրում ստեղծվեցին առաջնակարգ հրետանի, հզոր զրահատանկային և մեքենայացված զորքեր, ժամանակակից օդային նավատորմ, հակաօդային պաշտպանության միջոցներ։ Երկրի տանկային արդյունաբերությունը 1939 թվականին սկսեց թողարկել «КВ» ծանր տանկեր և սկսեց յուրացնել «Т—34» միջին տանկերի արտադրությունը, որոնք ունեին մարտական բարձր արժանիքներ՝ ամուր զրահ, բարձր զինվածություն, գերազանց շարժունակություն, մարտական արագընթացություն և այլն։ Սկսվեց ռազմա-ծովային մեծ նավատորմի կառուցումը։ Այդ բոլորը բարձր մակարդակի հասցրին Սովետական Միության զինված ուժերի մարտական պատրաստականությունը։*

*Այն ժամանակ, երբ մեր երկիրն զբաղված էր խաղաղ, ստեղծագործական աշխատանքով, իմպերիալիստական բանակները բազմիցս փորձել են հարձակվել Սովետական Միության պետական սահմանների վրա։ Սակայն ամեն անգամ էլ նրանք հանդիպել են Սովետական Միության զինված ուժերի ջախջախիչ հարվածներին։ 1929 թվականին Հեռավոր արևելյան հատուկ կարմրադրոշ բանակը և Ամուրյան նավատորմը ջախջախեցին չինական միլիտարիստների զորքերին, 1938 թ. սովետական բանակը ջախջախիչ հարված հասցրեց ճապոնական զավթիչներին Խասան լճի մոտ, իսկ 1939 թվականին Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի զորքերի հետ միասին՝ Խալխին գոլի հովտում։*

*Սովետական զինված ուժերը, պատվով կատարելով իրենց պատմական միսիան, 1939 թվականին ազատագրեցին Արևմտյան Ուկրաինան և Արևմտյան Բելոռուսիան։ 1939—1940 թվականներին սպիտակֆինների դեմ մղած պատերազմում սովետական բանակի հաղթանակով ապահովվեց մեր հայրենիքի հյուսիս-արևմտյան սահմանների անվտանգությունը։*

*Կապիտալիստական երկրների ռեակցիոն շրջանները նացիստական Գերմանիային պատերազմի էին հրահրում Սովետական Միության դեմ, հուսալով նրա ձեռքով լիկվիդացնել աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը։ Իմպերիալիստական տերությունների ֆինանսական օլիգարխիայի պարագլուխները գաղտնի և բացահայտ օժանդակում էին գերմանա-ֆաշիստական բանակի զինմանը։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի կառավարող շրջանների թողտվությամբ հիտլերյան Գերմանիան 1939 թվականին սկսեց երկրորդ համաշխարհային պատերազմ և երկու տարվա ընթացքում, գրեթե առանց լուրջ դիմադրության, կարողացավ նվաճել եվրոպական տասնմեկ պետություն։ Պատերազմից դեռ շատ առաջ Գերմանիան իր էկոնոմիկան վերակառուցել էր ռազմական ձևով։ Հիտլերականների տնօրինության տակ էին գտնվում նրանց նվաճած և դաշնակից երկրների ռեսուրսները։ Ֆաշիստական ժանտախտը սպառնում էր տարածվել ողջ աշխարհով մեկ։*

*Նրա նվաճողական պլանների միակ լուրջ խոչընդոտը Սովետական Միությունն էր։*

Ապահովելով իր թիկունքը Արևմուտքում, հիտլերականները Սովետական Միության դեմ կենտրոնացրին 190 դիվիզիա, մոտ 5 հազար ինքնաթիռ, 3700 տանկ, ավելի քան 50 հազար հրանոթ ու ականանետ։ Հիտլերյան բանակներն արդեն ունեին ժամանակակից պատերազմ վարելու երկու տարվա փորձ։ Հարկ է նշել, որ պատերազմի ողջ ընթացքում, նույնիսկ երկրորդ ռազմաճակատի բացումից հետո էլ ֆաշիստական Գերմանիան իր գլխավոր ուժերը պահում էր Արևելյան ռազմաճակատում։

1941 թվականի հունիսի 22-ին ֆաշիստական Գերմանիայի զորքերը հանկարծակի, առանց պատերազմ հայտարարելու հարձակվեցին մեր երկրի վրա։ Կոմունիստական պարտիայի կոչով սովետական ողջ ժողովուրդը ոտքի ելավ՝ պաշտպանելու իր հայրենիքն ու ազատությունը։ Հակառակորդին հաջողվեց հարվածների գլխավոր ուղղություններում ստեղծել ուժերի մեծ գերակշռություն, սովետական բանակին դնելով պայքարի չափազանց ծանր, դժվարին պայմաններում։

Ստեղծված դրությունը մասամբ էլ բացատրվում էր այն լուրջ սխալներով, որ Ստալինի անձի պաշտամունքի շրջանում թույլ էին տրվել երկրին ու նրա զինված ուժերը պատերազմին նախապատրաստելու գործում, որոնց հետևանքով սովետական բանակի զորամասերը հանկարծակիի բերվեցին և կենդանի ուժի ու տեխնիկայի լուրջ կորուստներ կրեցին։ Թշնամուն հաջողվեց խորանալ մեր զորքերի դասավորության մեջ, կազմալուծել նրանց կառավարումը, գերակշռության հասնել օդում։

Սովետական զորամասերը ստիպված եղան արյունահեղ մարտերով նահանջել երկրի խորքը, թշնամուն հանձնելով քաղաքներն ու գյուղերը։

Հիտլերականների նպատակն էր ոչնչացնել սովետական պետությունը, զավթել մեր երկրի հարստությունները, ստրկացնել նրա ժողովուրդներին, վերականգնել կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը։

Պատերազմը Սովետական Միության կողմից արդարացի էր, հայրենական։ Նրա նպատակն էր ջախջախել ֆաշիստական զավթիչներին, պաշտպանել սոցիալիստական ռևոլյուցիայի մեծ նվաճումները, օգնել եվրոպական ժողովուրդներին՝ ազատվելու ֆաշիստական ստրկացումից։ Այդ բոլորը բարձրացնում էր մեր մարտիկների բարոյական ու մարտական ոգին, արիություն ու խիզախություն ներշնչում նրանց։ Սովետական բանակը համառորեն դիմադրելով հակառակորդին սկսեց ավելի ու ավելի խորտակիչ հարվածներ հասցնել թշնամուն և առաջին իսկ ամիսներին ձախողեց հիտլերյան զավթիչների՝ «կայծակնային պատերազմի» խելացնոր պլանները։

Պաշտպանողական խոշոր ճակատամարտերում սովետական բանակը ո՛չ միայն կասեցրեց թշնամու առաջխաղացումը, այլև մի շարք ծանր պարտությունների մատնեց նրան։ 1941 թվականի դեկտեմբերի սկզբներին հիտլերականները խոշոր պարտություն կրեցին Մոսկվայի մատույցներում։ Այստեղ ո՛չ միայն տապալվեց նրանց «կայծակնային պատերազմի» տխրահռչակ պլանը, այլև հօդս ցնդեց գերմանա-ֆաշիստական բանակի անպարտելիության առասպելը։ Սովետական բանակը պաշտպանությունից անցավ հարձակման։ Վոլգայի ափերին մեր զինված ուժերի տարած փայլուն հաղթանակը արմատական բեկում առաջ բերեց պատերազմի ընթացքի մեջ։ Այդ հաղթանակը միաժամանակ մեծապես նպաստեց Արևմուտքի և Արևելքի երկրներում ծավալվող ազատագրական պայքարի վերելքին և հակահիտլերյան կոալիցիայի ամրա-



պնդմանը։ 1943 թվականի ամռանը հիտլերականները, օգտվելով Եվրոպայում երկրորդ ռազմաճակատի բացակայությունից, փորձեցին ռևանշ վերցնել Կուրսկի մոտ։ Պաշտպանական մարտերում հյուծելով թշնամու ուժերը, սովետական բանակի զորամասերը անսպասելիորեն հարձակման անցան և գլխովին ջախջախեցին նրա ընտիր տանկային միավորումները։ Հիտլերյան բանակը վերջնականապես կորցրեց ստրատեգիական նախաձեռնությունը և անցավ պաշտպանության։

1944 թվականին Դնեպրի ափերին և աջափնյա Ուկրաինայում, Բելոռուսիայում և Մերձբալթիկայում, Հյուսիսում և Հարավում ծավալված հետագա գործողություններում թշնամին անընդհատ պարտություններ էր կրում։ Արդեն նույն թվականի վերջերին ֆաշիստական զավթիչներն ամբողջովին դուրս շպրտվեցին Սովետական Միության սահմաններից։ Մեր զորքերը հիտլերյան լծից ազատագրեցին Ռումինիան ու Բուլղարիան և օգնություն ցույց տվին Հարավսլավիայի ժողովրդա-ազատագրական բանակին։ 1945 թվականի սկզբներին նրանք իրենց մարտական դրոշները պարզեցին Արևելյան Պրուսիայում, Բուդապեշտում, Չեխոսլովակիայի ու Հարավսլավիայի լեռներում։ Ռազմաճակատի կենտրոնական հատվածում մեր բանակներն ու լեհական զորամասերը կանգնած էին Վիսլայի ափերին։ Սովետական ռազմիկների հետ միասին թշնամուն ջախջախում էին չեխոսլովակյան, ռումինական, բուլղարական միավորումները։ Արևմուտքում ֆաշիստական օկուպանտներին դեպի արևելք էին քշում անգլո-ամերիկյան ու ֆրանսիական զորքերը։ Հիտլերյան Գերմանիան ընկավ դաշնակիցների օղակման մեջ։

Վիսլա—Օդերի, Արևելյան Պրուսիայի գործողություններում և Բեռլինի ու Պրագայի համար մղված եզրափակիչ ճակատամարտերում գլխովին ջախջախելով ֆաշիստական հորդաներին, սովետական զորքերը դաշնակից բանակների հետ միասին հիտլերյան Գերմանիային ստիպեցին կապիտուլյացիայի ենթարկվել։ Ֆաշիստական Գերմանիան ռազմական, տնտեսական և բարոյաքաղաքական լիակատար պարտություն կրեց։ Դա ամենից առաջ Սովետական Միության պատմական ծառայությունն էր, որն իր ուսերին կրեց պատերազմի հիմնական ծանրությունը։

Որո՞նք էին այն պատճառները, որոնք հնարավոր դարձրին Սովետական Միության պատմական հաղթանակը։

Ամենից առաջ սովետական հասարակական, տնտեսական ու պետական կարգի առավելությունները։ Արդարացան Վ. Ի. Լենինի այն խոսքերը, թե արդարացի նպատակների, իրենց ազատության համար պայքարող բանակն ու ժողովուրդը անպարտելի են։ Մեր ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը դարձավ սովետական բանակի ուժի հզոր աղբյուրը։ Արտադրության միջոցների հանրային սեփականությունը, տնտեսության պլանային վարումը պատերազմի ընթացքում ապահովեցին թշնամու նկատմամբ մեր առավելությունը ռազմամթերքի և ռազմական տեխնիկայի արտադրության բնագավառում։ Սովետական երկրի ուժի ու հզորության անսպառ աղբյուրը բանվոր դասակարգի ու կոլտնտեսային գյուղացիության դաշինքը և նրա ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամությունն էր։ Կոմունիստական պարտիայի կոչով մեր երկրի բոլոր աշխատավորները, նրա բոլոր ժողովուրդները պատերազմի առաջին իսկ օրերից ոտքի ելան՝ իրենց սոցիալիստական հայրենիքը պաշտպանելու։ Ֆաշիստական զավթիչների դեմ մղված կռիվներում աչքի ըն-

կան և Սովետական Միության հերոսի կոչման արժանացան մեր երկրի գրեթե
բոլոր ազգությունների ներկայացուցիչները, այդ թվում՝ 8 հազար ռուս, ավելի
քան 2 հազար ուկրաինացի, 300 բելոռուս, ավելի քան 100 հայ, 91 վրացի, 40
ադրբեջանցի և այլն։

Ֆաշիզմի դեմ մղվող համատեղ պայքարում էլ ավելի ամրապնդվեց ու
կոփվեց ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը։

Ռազմաճակատում Սովետական Միության բոլոր ժողովուրդների զավակ-
ների հետ ուս-ուսի տված արիաբար մարտնչում էին հայ ռազմիկները։ ՍՍՌՄ
ժողկոմսովետն ու ՀամԿ(բ)Պ Կենտկոմը՝ Հայաստանում սովետական կարգեր
հաստատվելու 25-ամյակի կապակցությամբ հղած իրենց ողջույնում նշում
են. «Հայրենական պատերազմի տարիներին հայ ժողովուրդը պատվով կա-
տարեց իր պարտքը հայրենիքի հանդեպ։ Հայ ռազմիկները Սովետական Միու-
թյան մյուս ժողովուրդների հետ միասին անձնվիրաբար և արիորեն պաշտ-
պանում էին մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը»։ Հայաստանի
կոմունիստական պարտիայի 36849 անդամներից և անդամության թեկնածու-
ներից ավելի քան 20 հազարը 1941—1943 թթ. համալրեցին սովետական բա-
նակի շարքերը։ Տասնյակ հազարավոր հայ ռազմիկներ պարգևատրվել են Սո-
վետական Միության շքանշաններով ու մեդալներով։ Նրանք ֆաշիստական
զավթիչների դեմ մարտնչել են Մոսկվայի ու Լենինգրադի մատույցներում,
Վոլգայի ափերին, Ղրիմում և Ուկրաինայի տափաստաններում, ակտիվ մաս-
նակցել են հիտլերյան բանակների ջախջախմանը՝ Քյոնիգսբերգում, Բեռլի-
նում։ Հայրենական մեծ պատերազմի պատմության մեջ վառ էջեր է գրել
89-րդ հրաձգային (Հայկական) Թամանյան եռակի շքանշանակիր դիվիզիան,
որը գեներալ մայոր Նվեր Սաֆարյանի հրամանատարությամբ Կովկասյան
նախալեռներից համառ մարտերով, Բեռլինի միջով հասավ Էլբայի ափերը։ Սո-
վետական հզոր բանակի շարքերում ավելի քան հիսուն հայ զորահրամանա-
տարներ հիանալի վարելով իրենց գլխավորած միավորումների մարտական
գործողությունները, արժանացան գեներալի կոչման։ Գեներալ Իվան Բաղ-
րամյանը (այժմ Սովետական Միության մարշալ), Ս. Խուդյակովը (Ս. Խան-
ֆերյան, ավիացիայի մարշալ), Սարգիս Մարտիրոսյանը, Հայկ Մարտիրոս-
յանը, Ասքանազ Կարապետյանը, Համազասպ Բաբաջանյանը, Անդրանիկ Ղա-
զարյանը և ուրիշներ իրենց միավորումներով ու բանակներով, իսկ նավա-
տորմի ծովակալ Իվան Իսակովը իր հմուտ գործողություններով Հայրենական
մեծ պատերազմի տարիներին հերոսական էջեր գրեցին մեր երկրի զինված
ուժերի պատմության մեջ։ Ն. Ստեփանյանը, Հ. Ավետիսյանը իրենց անձնա-
զոհությամբ ցույց տվեցին սովետական հայրենասիրության չգերազանցված
օրինակներ։

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ստեղծած զինված
ուժերը պատերազմի դաշտերում թշնամու բանակին գերազանցեցին իրենց
նյութական հզորությամբ, մարտական ոգով ու վարպետությամբ, մարտական
գործողությունները վարելու հմուտ եղանակներով։ Պատերազմի ընթացքում
ցայտուն կերպով դրսևորվեց սովետական ռազմական գիտության առավելու-
թյունը ֆաշիստական Գերմանիայի ռազմական գիտության նկատմամբ։

Մեր երկրի արդյունաբերությունը յուրացրեց և սկսեց մասսայականորեն
թողարկել ռազմական տեխնիկայի նոր տեսակների շատ նմուշներ։ Հայրենա-
կան մեծ պատերազմի տարիներին սովետական ռազմաօդային արդյունաբե-



րությունը ռազմաճակատին տվել է մոտ 150 հազար մարտական, վարժական-
տրանսպորտային ինքնաթիռ, դրանցից 51 հազարը՝ կործանիչներ, որոնց
շնորհիվ ՍՍՌՄ ռազմա-օդային ուժերը սկսած 1943 թվականից դարձան օդում
գերիշխող։ Պատերազմի ժամանակաշրջանում արտադրվել են մոտ 500 հազար
հրանոթ, 400 հազար ականանետ, մի քանի միլիոն հրացան, գնդացիր, ավ-
տոմատ և այլն. մեծ չափով ավելացավ տանկերի արտադրությունը, որը հնա-
րավորություն տվեց պատերազմի ընթացքում կազմակերպելու տանկային ու
մեքենայացված շատ կորպուսներ ու բանակներ։

Թշնամու ջախջախմանը մեծապես նպաստեց նաև պարտիայի կազմա-
կերպած պարտիզանական շարժումը՝ թշնամու թիկունքում։

Մեր հաղթանակի և սովետական զինված ուժերի հզորության վճռական
աղբյուրը կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությունն էր։ Պար-
տիան կարճ ժամանակում ամբողջ երկիրը վերածեց մի միասնական ռազմա-
կան ճամբարի, արագորեն կազմակերպեց ռազմական բարդ տնտեսությունը,
ապահովեց մեր զինված ուժերի գերակշռությունը սպառազինության ու ռազ-
մական տեխնիկայի բնագավառում, կազմակերպեց ու պայքարի ոգեկոչեց ամ-
բողջ ժողովրդին։

Պատերազմի տարիներին պարտիայի անդամների կեսից ավելին զենքը
ձեռքին կռվում էր մեր հայրենիքի պատվի ու անկախության համար։ Պատե-
րազմի տարիներին պարտիան համախմբված ու միասնական էր, ինչպես եր-
բեք։ Պարտիան ավելի սերտորեն կապվեց ժողովրդի հետ, որը նրան էր վստա-
հել իր բախտը։ Պարտիայի ղեկավարության շնորհիվ ամբողջ սովետական
ժողովուրդը վերածվեց մի միասնական մարտական կոլեկտիվի, դարձավ ան-
խորտակելի մի ուժ՝ ահեղ թշնամու դեմ մղվող կենաց և մահու պայքարում։

Հայրենական պատերազմում Սովետական Միության տարած հաղթանա-
կը վիթխարի նշանակություն ունեցավ ոչ միայն մեր երկրի ժողովուրդների,
այլև ամբողջ մարդկության համար։

Ամենից առաջ սովետական ժողովուրդը կարողացավ պաշտպանել Հոկ-
տեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի պատմական նվաճումները,
ամենաառաջավոր հասարակական ու պետական կարգը, Սովետական Միու-
թյան ժողովուրդների ազատությունն ու անկախությունը։ Պատերազմի հաղթա-
կան ավարտի շնորհիվ ապահովվեց ՍՍՌՄ արևմտյան և արևելյան սահման-
ների անվտանգությունը։

Սոցիալիզմի թշնամիները հույս ունեին, որ մեր երկիրը պատերազմի վեր-
ջում արնաքամ կլինի և իրենք ազատորեն կտնօրինեն ժողովուրդների բախ-
տը։ Բայց նրանք չարաչար սխալվեցին իրենց հաշիվներում։ Սովետական պե-
տությունն ու նրա զինված ուժերը դաժան փորձությունից դուրս եկան ավելի
ամուր ու կոփված։ Պատերազմի արդյունքները լիովին հաստատեցին Վ. Ի.
Լենինի հետևյալ մարգարեական խոսքերը. «...ինչպիսիք էլ լինեն Ռուսաստա-
նի վրա արշավելու փորձերը և Ռուսաստանի դեմ ուղղված պատերազմական
ձեռնարկումները, իսկ այդպիսի փորձեր դեռ, հավանորեն, շատ կլինեն, սա-
կայն մենք արդեն կոփված ենք մեր փորձով և փաստացի փորձի հիման վրա
գիտենք, որ բոլոր այդ փորձերը հողմացրիվ կլինեն։ Եվ մեր թշնամիների յու-
րաքանչյուր փորձից հետո մենք դուրս կգանք ավելի ուժեղ, քան թե եղել ենք
մինչ այդ» (Երկեր, հատ. 31, էջ 407)։

Ջախջախելով հիտլերյան Գերմանիային, սովետական ժողովուրդը ֆա-

շիստական լծից ազատագրեց Եվրոպայի ժողովուրդներին, լիկվիդացրեց ամ-
բողջ մարդկությունը ֆերմանական զավթիչների կողմից ստրկացնելու վտան-
գը։ Սովետական զինված ուժերը պատվով կատարեցին իրենց ազատագրական
միսիան։
Պատերազմի հետևանքով խիստ փոխվեց կապիտալիզմի ու սոցիալիզմի
ուժերի հարաբերակցությունը՝ հօգուտ սոցիալիզմի։ Կապիտալիզմին լուրջ
հարված հասցրեց ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիաների հաղթանակը
Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում, սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկ-
րի շրջանակներից, ստեղծվեց սոցիալիստական հզոր լագերը, սկսվեց իմպե-
րիալիզմի գաղութային սիստեմի քայքայումը։ Ուժեղացավ ազգային-ազատա-
գրական շարժումը գաղութային ու կախյալ երկրներում։
Օգնելով մյուս ժողովուրդներին, սովետական ժողովուրդը գործով ցույց
տվեց իր պրոլետարական ինտերնացիոնալիզմը, համերաշխությունը նրանց
հետ։ Ամբողջ առաջավոր մարդկությունը համոզվեց, որ Սովետական Միու-
թյունը ժողովուրդների ազգային ազատ զարգացման ջատագովն է, խաղաղու-
թյան, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարի անխորտա-
կելի պատվարը։
Արդի պայմաններում համաշխարհային իրադրությունները զարգանում են
սոցիալիզմի և խաղաղության գործի համար նպաստավոր ուղիով։ Ամրապընդ-
վում է սոցիալիստական սիստեմի հզորությունը, մեծանում են նրա հեղինա-
կությունն ու ազդեցությունը միջազգային ասպարեզում։
Սակայն խաղաղությանը լուրջ վտանգ են սպառնում կապիտալիստական
աշխարհի ռեակցիոն շրջանները, հատկապես ԱՄՆ-ի ռազմամոլներն ու Արև-
մտյան Գերմանիայի ռևանշիստները։ «Կոմունիստական վտանգի» դեմ պայ-
քարելու դրոշի ներքո ԱՄՆ-ի մոնոպոլիստական կապիտալի ղեկավար շրջան-
ները կազմակերպել են մի շարք ռազմական բլոկներ ՆԱՏՕ (Հյուսիս-ատ-
լանտյան միություն), ՍԵՆՏՕ (Մերձավոր ու Միջին Արևելքում), ՍԵԱՏՕ (Հա-
րավ-արևելյան Ասիայում)։ Այդ բլոկներն ուղղված են սոցիալիստական եր-
կրների լագերի դեմ։ Ներկայումս ամերիկյան իմպերիալիստները շարունա-
կում են սրել իրադրությունը Վիետնամում։ Նրանք ընդլայնում են պատերազ-
մը Հարավային Վիետնամում՝ բնակչության դեմ հանում են զինվորներ, ռեակ-
տիվ ռմբակոծիչներ, ռազմա-ծովային նավատորմ, կիրառում են գազեր։
Նրանք ռմբակոծում են Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի խաղաղ
գյուղերն ու քաղաքները։
Ոչ միայն ներկա, այլև ապագա սերունդները նողկանքով ու զայրույթով
կհիշեն ամերիկյան ռազմամոլների արյունահեղությունները Հնդկաչինում։ Իմ-
պերիալիստներին ոչ մի ոճրագործություն չի օգնի նորից ստրկության մատնելու
այն ժողովուրդներին, որոնք ճաշակել են ազատ կյանքի երջանկությունը։ Վիետ-
նամի ժողովուրդը արիաբար պայքարում է օտարերկրյա միջամտության դեմ,
ամրապնդվում է նրա ժողովրդական բանակի մարտական հզորությունը, երկ-
րի հայրենասիրական ուժերի համախմբվածությունը, աճում է օտարերկրյա
զավթիչներից իրենց հայրենիքի հողը մաքրելու վճռականությունը։ Նրանք,
ովքեր ագրեսիա սկսեցին Վիետնամի խաղաղասեր ժողովրդի դեմ, ոչ մի բանի
չեն կարող հասնել, բացի խայտառակությունից ու պարտությունից։
ԱՄՆ-ի միլիտարիստները չեն դադարեցնում Կուբայի դեմ ուղղված պրո-
վոկացիաները։ ՆԱՏՕ-ի պարագլուխներն իրենց ճիգերը գործադրում են Արև-



մտյան Գերմանիայի բունդեսվերը ատոմային զենքով զինելու ուղղությամբ։
Անտարակույս, այս ամենը վտանգ է ստեղծում ընդհանուր խաղաղու-
թյան համար։ Ելնելով աշխարհի խաղաղության շահերից, սոցիալիստական
ճամբարի երկրներն ստեղծել են բարեկամության, համագործակցության և փո-
խադարձ օգնության՝ Վարշավայի դաշինքը, որի նպատակն է՝ ապահովել Եվ-
րոպայի խաղաղությունն ու անվտանգությունը։ Սովետական Միությունը, վա-
րելով խաղաղասիրական քաղաքականություն, երբեք չի հանդուրժի Եվրոպա-
յում կամ աշխարհի այլ շրջաններում որևէ ոտնձգություն իր ապահովության,
օրինական շահերի, իր բարեկամների ու դաշնակիցների անվտանգության դեմ։
Կոմունիստական պարտիան, սովետական կառավարությունը, երկրի հիմ-
նական միջոցները կենտրոնացնելով կոմունիզմի կառուցման նպատակին, եր-
բեք մոռացության չեն տալիս հայրենիքի պաշտպանունակության առավել
ամրապնդման գործը։
«Պարտիան ելնում է այն բանից,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— որ
քանի պահպանվում է իմպերիալիզմը, կմնա ագրեսիվ պատերազմների վը-
տանգը։ ՍՄԿՊ-ն սոցիալիստական Հայրենիքի պաշտպանությունը, ՍՍՌՄ
պաշտպանության, սովետական զինված ուժերի հզորության ամրապնդումը
դիտում է որպես պարտիայի, սովետական ողջ ժողովրդի սրբազան պարտքը,
որպես սոցիալիստական պետության կարևորագույն ֆունկցիան»։ Այժմ
սովետական զինված ուժերն ունեն ամենաժամանակակից, իր հզորու-
թյամբ չգերազանցված զենք մեր հայրենիքի սահմանները պաշտպա-
նելու համար։ Թող լավ իմանան բոլորը, որ Հայրենական մեծ պատերազմի
դասերը ահեղ նախազգուշացում են ռազմական ավանտյուրաների բոլոր և ա-
մեն տեսակի սիրահարների համար։ Այդ դասերը ցույց են տալիս, որ խաղա-
ղության, առաջադիմության ու սոցիալիզմի ուժերն անպարտելի են, որ հա-
մաշխարհային տիրապետություն հաստատելու իմպերիալիստական հավակ-
նորդների պլանները դատապարտված են ձախողման։
Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղ-
թանակը հաստատեց, որ աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողա-
նային կանգնեցնել սոցիալիստական հասարակարգի առաջընթաց զարգացումը։



#  ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԴՊՐՈՑՈՒՄ *

(Խորհրդածություններ դպրոցական պարտիական կազմակերպությունների մասին)

Ո՞րն է ընդհանուրը դպրոցական և այլ պարտիական կազմակերպության գործունեության միջև: Այն, որ առաջինը կոչված է մյուս կազմակերպությունների պես ղեկավարելու այն կոլեկտիվը, որում ինքը գործում է: Կենսագործել պարտիայի գաղափարական-քաղաքական միջոցառումները տվյալ կոլեկտիվի գործունեության բոլոր մարզերում՝ սա է դպրոցական և մեկ այլ պարտիական կազմակերպության գործունեության ընդհանուրը:

Սակայն դպրոցական բնագավառը խիստ յուրահատուկ պայմաններ ունի, որոնց հաշվառումը պարտադիր է դպրոցի պարտիական կազմակերպության ղեկավարների համար: Պարտիական-պետական կարգապահության ընդհանուր կանոններն այստեղ չի կարելի կիրառել մեխանիկորեն: Չի կարելի այն պարզ պատճառով, որ դպրոցն իր հիմնական կոնտինգենտով և մանկավարժական կազմով, իր նպատակով ու գործելակերպով շատ է տարբերվում գործարանի, ֆաբրիկայի կամ մեկ այլ կազմակերպության պարտիական կոլեկտիվներից:

Հանդիսանալով մանուկների դաստիարակության կարևորագույն օջախ, դպրոցն ունի իր շեշտված յուրահատկությունները: Մեր գործունեության բնագավառն այստեղ, կարծես թե, սահմաններ չունի: Հիրավի, աճող մանկական օրգանիզմը ֆիզիկապես, մտավորապես և հոգեպես անվերջ փոփոխության մեջ է: Նույնիսկ տարբեր դասարանների մտավոր և ընդհանուր վիճակներն էական տարբերություններ ունեն: Մանկական աշխարհի բարդությունները, որոնք արտահայտվում են պատանիների ֆիզիկական, հոգեկան և հասարակական ոլորտներում, չեն կարող զգուշորեն հաշվի չառնվել պարտիական կազմակերպության կողմից: Եթե դպրոցական պարտիական կազմակերպության բյուրոն անտեսում է ուսուցչական կոլեկտիվի հոգեբանությունը և աշխատանքային տրադիցիաներն ու սովորույթները, ապա բացասական հետևանքներն անխուսափելի են:

Մինչև այսօր էլ մեր մանկավարժների զգալի մասը, չըմբռնելով պատանեկան աշխարհի էական փոփոխությունները, շարունակում են հին չափանիշներով և հին մեթոդներով քննարկել ու գնահատել դպրոցական կյանքի խճճված պրոբլեմները: Որ այսօրվա դպրոցականների մտահորիզոնը, նրանց զգացմունքներն ու ձգտումները, մանավանդ հետաքրքրասիրությունները բախվում են կրթության պաշտոնական սիստեմի (ծրագրերի, դասագրքերի, ավանդման մեթոդների) պարտադիր պահանջներին, դա վեր է ամեն կասկածից:

Չպետք է մոռանալ, որ դպրոցական պարտիական կազմակերպության գործունեության ոճի ամենաբնորոշ կողմը՝ մանկավարժական մոտեցումն է քննվող և արծարծվող հարցերին: Մանկավարժական կոլեկտիվում պարտիական աշխատանքի ոճը պետք է զերծ լինի նվազագույն վարչարարությունից: Կատեգորիկ հրամաններն ու կարգադրություններն այստեղ գործին չեն օգնի: Ուսուցչական կոլեկտիվի շրջանում տարվող պարտիական աշխատանքի էական կողմը՝ դպրոցականների ու մանկավարժների փոխհարաբերության ներդաշնակումն է: Երբ պարտիական կազմակերպությունը մոռացության է տալիս ուսուցչի և աշակերտի փոխհարաբերության բարդ հարցը, ապա նրա միակողմանի որոշումները հաճախ կարող են վնասել գործին:

Դաստիարակության մեջ մեծ նշանակություն ունի ուսուցչի և աշակերտի սերտ կապը, ուսուցչի ազդեցիկ խոսքը, ամենալավ միջոցառումները աշակերտին չեն գրավի, եթե չլինի այդ կապը, եթե աշակերտը չհարգի իր ուսուցչին, չհավատա նրան: Արդյունավետ չէ, երբ դպրոցական ադմինիստրացիան կամ որոշ ուսուցիչներ միայն օգտվում են կարգադրելու իրավունքներից, մոռացության տալով իրենց գործունեության գլխավոր մեթոդը՝ մանկավարժական մոտեցումը մեծ թե փոքր հարցերին:

Պրակտիկան ցույց է տալիս, որ վիճակը լավ է այն դպրոցներում, ուր պարտկազմակերպությունները խորապես գիտակցում են դպրոցի կյանքի առանձնահատկությունները:

Ո՞րն է դպրոցական պարտիական կազմակերպության գործունեության առանցքը:

Պարտիական կազմակերպության և մանկավարժական կոլեկտիվի ողջ գործունեության նպատակն այն է, որ աշակերտները լավ յուրացնեն դպրոցական ծրագրերում նախատեսված գիտելիքները: Աշակերտների մտահորիզոնի ընդարձակումը և կայուն գիտելիքների խորացումը պարտիական կազմակերպության անմիջական և գլխավոր խնդիրն է: Աշակերտների գիտելիքների հետ զուգընթաց, մանկավարժների, ինչպես և դպրոցի պարտիական կազմակերպության (և այլ կազմակերպությունների) նպատակն է՝ դաստիարակել աշակերտներին կոմունիստաբար: Խույս տալով կամպանիոն գործելակերպից, դպրոցի պարտիական կազմակերպությունը գաղափարական-դաստիարակչական իր բոլոր միջոցառումները պետք է կիրառի, խստորեն հաշվի առնելով պատանիների տարիքային, սեռային առանձնահատկությունները:

Բազմաթիվ դպրոցներում պարտիական կազմակերպություններն այս ուղղությամբ հաջող աշխատանք ծավալելով, իրենց գլխավոր հենարանը համարում են միայն ուսուցչական կոլեկտիվը: Որ մանկավարժական կադրերը դաստիարակության գլխավոր ազդակն են դպրոցում, այդ վեր է ամեն կասկածից: Սակայն կոմունիստական դաստիարակության բնորոշ գծերից մեկն էլ այն է, որ դպրոցական կոլեկտիվի ամբողջ գործունեությունը պետք է հենվի նաև պատանիների ստեղծագործ ինքնագործունեության վրա: Մանկավարժների և դպրոցի պարտիական կազմակերպության ամեն մի միջոցառում պետք է նպաստի պատանիների ինքնագործունեության զարգացմանը, կոմերիտական և պարտիական կազմակերպությունների աշխատանքների բարելավմանը: Այլապես մենք տեղի կտանք հին, բուրժուական դպրոցի գործելակերպին: Մինչդեռ Լենինը ժամանակին զգուշացնում էր, որ հին դպրոցի մեծագույն արատը՝ սերտողականությունը, չպետք է տեղ գտնի սովետական դպրոցում: Բայց, ցավոք, կան դպրոցներ, որտեղ սերտողականությունը և տոկոսամոլությունը դարձել են տվյալ դպրոցի մանկավարժական կոլեկտիվի գործունեության ոգին: Իսկ դրա հետևանքն այն է, որ դպրոցական ծրագիրը չի յուրացվում ըստ էության և աշակերտների գիտելիքները մեծապես ցուցադրական են ու մակերեսային: Դպրոցը չի կարող առաջ գնալ, եթե առաջադիմության չափանիշը համարի տոկոսները: Իրականում յուրաքանչյուր աշակերտի և դպրոցական մանկավարժական յուրաքանչյուր կոլեկտիվ պետք է գնահատել միայն մի տեսանկյունից՝ ըստ գիտելիքների բարձր որակի ու ծավալի:

Ուսուցման ամբողջ պրոցեսը պետք է ելնի մի սկզբունքից, որպեսզի աշակերտն ինքնաշխատությամբ և սեփական համառ ջանքերով յուրացնի դասը: Ահա այս կողմին դպրոցական պարտիական կազմակերպությունները, դժբախտաբար, շատ քիչ ուշադրություն են նվիրում:

Զարգացման ներկա շրջանում, սովետական քաղաքացիներ դաստիարակող մեր դպրոցը կանգնած է այն փաստի առաջ, որ նրա ծրագրերում ու դասագրքերում որոշ բան հնացած է, չի համապատասխանում կյանքի նոր փոփոխություններին: Մինչդեռ դպրոցն այն օջախն է, որը կոչված է ընդառաջելու հասարակական կյանքի առաջավոր տենդենցներին և պատանեկությանը ներարկելու նորի զգացումը: Եվ, պատահական չէ, որ այսօր ուսուցչության որոշ մասի (կյանքից ետ մնացողների) և ուշիմ ու նրբանկատ աշակերտների միջև լուրջ բախումներ են տեղի ունենում: Այս առումով խիստ բնորոշ է Երևան քաղաքի Օրջոնիկիձեի շրջանի № 49 դպրոցի աշակերտուհի Աստինե Սարգսյանի գործը: Չկարողանալով ներթափանցել աղջկա հոգեկան աշխարհը, դասղեկ ընկ. Շահգելդյանը, առանց լուրջ հիմքի, վիրավորանք է հասցնում X դասարանի լավագույն աշակերտուհուն՝ Աստինե Սարգսյանին: Վերջինս խոր վիրավորված՝ դիմել է ԼԿԵՄ շրջկոմին, խնդրելով իրեն ազատել դասղեկի ապօրինի հետապնդումներից:

Իհարկե, շատ վատ է, երբ լավագույն աշակերտուհին իր կոլեկտիվում իրեն զգում է հուսալքված, խիստ միայնակ: Եվ նա իրավացի է, որ չի ցանկանում էգոիստ և ինքնամփոփ աշակերտ դառնալ:

Բախումն այս մանկավարժի և դասարանի ու դպրոցի լավագույն աշակերտուհիներից մեկի միջև երկար ժամանակ ընթանում էր այն ուղղությամբ, որ ԼԿԵՄ կազմակերպության քարտուղար Աստինե Սարգսյանը չէր համաձայնում հրաժարվել համադպրոցական հասարակական ակտիվ գործունեությունից և միմիայն դասարանի գործերով զբաղվել: Նա զուգակցել է ուսման

* Տպագրելով սույն հոդվածը, խմբագրությունը ռեսպուբլիկայի դպրոցական պարտիական կազմակերպությունների քարտուղարներին և կոմունիստ մանկավարժներին հրավիրում է արտահայտվելու տվյալ հարցի շուրջ:

առաջավորի և օրինակելի կոմերիտականի դերը և այսօր էլ նա գերազանցիկ աշակերտուհի է, օրինակելի կոմերիտական։

Այսպիսով, դպրոցի պարտիական կազմակերպությունն ամեն կերպ պետք է հասնի այն բանին, որ աշակերտների հասարակական գործունեության ակտիվության աճը խելացիորեն զուգորդի ուսումնական պրոցեսի նորմալ ընթացքի հետ։ Իհարկե, դրա համար պետք է աշխատանքի պլանայնություն և դպրոցական բոլոր օղակների գործունեության հաջող կոորդինացում. մի բան, որը պրակտիկայում դժբախտաբար հաճախ չի կատարվում։ Այստեղ ուսումնական կյանքի նորմալ կազմակերպմանը միշտ խանգարում է դպրոցական պարտիական կազմակերպության անձեռներեցությունը և չպլանավորված աշխատանքը։ Երբ դպրոցում աշակերտների, մանկավարժների հասարակական գործունեության բոլոր ձևերն ու եղանակները չեն հարմարեցված ուսումնական պրոցեսի անխափան ընթացքին, դրանից տուժում են նրանք՝ աննպատակահարմար վատնելով իրենց ժամանակը։

Ժամանակի գործոնը դպրոցականների կյանքի կազմակերպման ամենակարևոր ազդակներից մեկն է։ Չպետք է մոռանալ, որ ուսումնական պլանների և աշակերտներին հանձնարարվող արտադասարանային գրականության մշակումը հաճախ կատարվում է առանց այդ գործոնը նկատի ունենալու։ Հենց այս բանի հետևանքով նրանք ժամանակ չունեն ո՛չ միայն դասերը կանոնավոր պատրաստելու, այլև իրենց հասարակական համեստ պարտականությունները կատարելու։ Խնդրի այս կողմի վրա մեծ ուշադրություն պետք է դարձնի դպրոցի պարտիական կազմակերպությունը։ Չի կարելի ընդառաջել այն մանկավարժներին, որոնք չեն ուզում հաշվի առնել ժամանակակից կյանքի (դպրոցից դուրս) առանձնահատկությունները և աշակերտներին ծանրաբեռնում են ավելորդ հանձնարարություններով։ Շատ լավ կլինի, եթե որևէ դպրոցի պարտիական կազմակերպություն հանգամանորեն՝ ուսումնասիրի և քննության առնի աշակերտների ուսումնական ու հասարակական գծով ծանրաբեռնվածության հարցը։ Մենք չենք կասկածում, որ այստեղ երևան կգա մի աննորմալ պատկեր. յուրաքանչյուր դասատու արտադասարանական հանձնարարություններ տալիս բոլորովին հաշվի չի առնում, թե մյուս դասատուները քանի ժամվա աշխատանք են հանձնարարել, ասենք՝ մեկ շաբաթում։ Մինչդեռ այս անթույլատրելի և բյուրոկրատական մոտեցման մեջ պետք է որոնել նաև աշակերտների առաջադիմության թերացումների արմատներից մեկը։ Պարտիական կազմակերպությունը պետք է ամենայն լրջությամբ զբաղվի աշակերտների արտադպրոցական կյանքի կարգավորման հարցով։ Առանց այս հարցի լուծման չի կարելի երաշխավորել ուսումնական պրոցեսի պատշաճ ընթացքը։

Հոգալով պատանիների ուսումնական կյանքի նորմալ ընթացքի մասին, դպրոցի պարտիական կազմակերպությունը կոչված է մանկավարժական կոլեկտիվի հետ միասին, անդուլ ջանքեր գործադրել, որպեսզի դպրոցականներն աճեն ու զարգանան, զերծ լինելով անցյալի մարդուն հատուկ բացասական գծերից։ Այո, նոր մարդու ձևավորման բարդ խնդիրը դպրոցի պարտիական կազմակերպության ամենօրյա հոգատարության առարկան պետք է լինի։ Ինչպիսի՞ ձևերով ու եղանակներով աշակերտներին և, հաճախ, որոշ մանկավարժների՝ դաստիարակել նոր մարդուն հատուկ հոգեբանությամբ։ Ինչպե՞ս հաղթահարել պատանեկան շրջապատում արմատավորված անցյալի սովորույթների որոշ մնացուկներ։ Չէ՞ որ նրանք այդ ընկալում են ընտանիքից և շրջապատի հասակավորներից։ Իսկ նոր մարդը պետք է զերծ լինի այն բոլոր սովորույթներից, որոնք խանգարում են մեզ՝ երջանիկ հասարակություն կերտելու։ Իսկ երբ այդ կարգի սովորույթներն ամեն օր կիրառում են որոշ ուսուցիչներ ևս, հարցն ավելի քան բարդանում է։ էգոիզմի, ինդիվիդուալիզմի, թափթփվածության, անկարգապահության, նախանձի, հիշաչարության և մարդկային այլ արատների դեմ ամենօրյա պայքար մղելու համար պարտիական կազմակերպությունը պետք է իր զինանոցում ունենա աշխատանքի փորձված ու պիտանի մեթոդներ։ Առանց այս բնագավառում լուրջ հաջողությունների, չի կարելի պատշաճ արդյունքի հասնել նոր մարդու ձևավորման պրոցեսում։ Հիմա էլ մեր որոշ դպրոցներից կյանք են մըտնում երիտասարդներ, որոնք, չնայած իրենց լուրջ գիտելիքներին, հաճախ դրսևորում են էգոիզմի և ինդիվիդուալիզմի խոցելի գծեր։ Որոշ մանկավարժների մոտ դեռևս տիրապետում է այն մտայնությունը, թե մենք կոչված ենք աշակերտությանը միայն գիտելիքներ հաղորդելու, իսկ աշխարհայացքի հոգսերով թող զբաղվեն դաստիարակներն ու ծնողները։ Մինչդեռ իրականում դաստիարակելուց խորշող յուրաքանչյուր դասատու ակամա բացասական դաստիարակի դեր է խաղում։ Գիտության ավանդման նրա ոճը, պրիոմները, նրա էմոցիոնալ աշխարհի ամենաաննշան դրսևորումները, այս կամ այն ձևով ընկալվում են աշակերտների կողմից։ Մանկան հոգեբանության վրա անխտիր իրենց կնիքն են դնում թե՛ լավ և թե վատ մանկավարժները։ Հետևաբար, ըստ էության, բոլոր ուսուցիչները դաստիարակության ոլորտում էական դեր են խաղում, անկախ իրենց ցանկությունից։ Ուրեմն, մանկավարժների



վերաբերմունքի բոլոր նրբերանգներն իրենց ազդեցությունն են գործում ապագա քաղաքացու ձևավորման բարդ պրոցեսում։ Պարտիական կազմակերպությունները դպրոցներում չպետք է անցնեն այս երևույթի կողքով։ Ընդհակառակը, նրանք պետք է դպրոցի բոլոր մանկավարժներին ներգրավեն աշակերտների դաստիարակության ոլորտը։

Իսկ այս հանգամանքը պահանջում է պարտիական կազմակերպություններից՝ աչքաթող չանել դպրոցական կյանքի այնպիսի մի գործոն, որպիսին աշակերտների առաջադիմության գնահատման խնդիրն է։ Ինչպե՞ս վարվել, որպեսզի մանկավարժի գնահատականն առավելագույն չափով համապատասխանի աշակերտի գիտելիքների իրական աստիճանին։ Ինչպե՞ս գնահատել չարաճճի աշակերտին, որը շեշտված ինդիվիդուալ գծեր ունի և ամեն կերպ խույս է տալիս դպրոցական կարգ ու կանոնին ենթարկվելուց, բայց օժտված լինելով մտավոր ունակություններով, ամենախելացին և լավ սովորողն է։ Ինչպե՞ս գնահատել այն մանկավարժին, որն ուսումնական գնահատականը համարում է իր միակ զենքը՝ աշակերտներին իրեն ենթարկելու համար։

Սրանք վերին աստիճանի բարդ հարցեր են, որոնց հետ ամեն օր բախվում են դպրոցի պարտիական և անպարտիական մանկավարժները։ Դրանց քննարկումն ու լուծումը յուրաքանչյուր կոնկրետ դեպքում պարտիական կազմակերպությունից պահանջում է առավելագույն շրջահայեցողություն և մանկավարժին վայել նրբանկատություն, որպեսզի դպրոցականները ճիշտ ընկալեն այդ ուղղությամբ կիրառվող այս կամ այն միջոցառումը։ Հաճախ այնպես է ստացվում, որ որոշ դպրոցական պարտիական կազմակերպություններ այս կամ այն հարցը քննարկում են՝ պլանները կատարած լինելու միտումով։ Քննարկումը հաճախ դառնում է ինքնանպատակ։ Իհարկե, այդպիսի մոտեցմամբ պարտիական կազմակերպությունը չի կարող դաստիարակել մանկավարժներին, օգնել նրանց՝ կատարելագործվելու ընտրած բնագավառում, մանավանդ, բարձր պահելու սովետական մանկավարժի կոչումն աշակերտների աչքում։ Շատ վատ է, երբ որոշ պարտկազմակերպություններ դպրոցներում, այս կամ այն մանկավարժի հարցը քննարկելիս, մոռանում են, որ աշակերտներն այլ տեսանկյունից կարող են դիտել պարտիական կազմակերպության գործունեությունը։ Ահա այստեղ պարտիական կազմակերպության առջև ծառանում է մի դժվարին խնդիր՝ դա մանկավարժի հեղինակության բարձրացումն է։ Ի՞նչ ճանապարհով հասնել դրան։ Լուությա՞ն մատնել մանկավարժի հակահասարակական արարքը, նրա հակամանկավարժական այս կամ այն քայլը, թե՞ նրա հետ վարվել այնպես, ինչպես վարվում են մարդու հետ մեկ այլ կոլեկտիվում։ Այս բարդ վիճակից գլուխ հանելու համար պարտիական կազմակերպության ղեկավարից պահանջվում է՝ մանկավարժի թերությունները շտկել այնպիսի մեթոդներով ու եղանակներով, որոնք ամենևին չնսեմացնեն նրա հեղինակությունն աշակերտների աչքում։ Ոչ այլ ոք, քան դպրոցի պարտիական կազմակերպությունն է շահագրգռված, որ մեր սովետական ուսուցիչը վայելի պատշաճ հեղինակություն իր սաների աչքում։ Բայց նույն այդ կազմակերպությունն իրավունք չունի լռության մատնելու մանկավարժի այս կամ այն զանցանքը, հաշտվելու անթույլատրելի քայլի հետ։

Դպրոցի պարտիական կազմակերպությունը պետք է լրջորեն հոգա ոչ միայն իր անդամների, այլև ամբողջ ուսուցչական կոլեկտիվի բարոյահասարակական կերպարի, մանկավարժների շրջանում տարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքների մասին։

Դժվար է որոշել ուսուցչի մանկավարժական աշխատանքի սահմանները, դրանք շատ ընդարձակ են։ Այդ սահմաններն ընդգրկում են ուսուցչին ո՛չ միայն գործերով, այլև իր ամբողջական կերպարով, իր անձնավորությամբ։ Պետք է խոստովանել, որ դեռևս կան առանձին ուսուցիչներ, որոնք չպետք է կրեն սովետական մանկավարժի պատվավոր կոչումը։ Հաճախ ակամայից չենք խորհում այն մասին, թե որպիսի՜ բարոյական վնաս է կրում դպրոցը, երբ աշակերտն իմանում է, որ իր ուսուցիչը հակահասարակական արարք է գործել։

Հարց է առաջանում, ինչպե՞ս վարվել նման ուսուցիչների հետ։ Ընդհանուր դեղատոմս տալը, իհարկե, դժվար է, սակայն պարզ է, որ, չնայած ուսուցչի անունն արատավորող մանկավարժներից ազատվելու խնդրում գոյություն ունեցող դժվարություններին, դպրոցներում դեռևս չի ստեղծված անհանդուրժողական մթնոլորտ այդպիսի ուսուցիչների շուրջը։ Միշտ չէ, որ ուսուցչի այս կամ այն սխալ, հակամանկավարժական արարքը քննարկման առարկա է դառնում մանկավարժական կոլեկտիվում և արժանանում բարոյական պատշաճ ներգործման։

Դպրոցների պարտիական կազմակերպությունները պետք է ժամանակին բացահայտեն կատարված յուրաքանչյուր բացասական երևույթի պատճառները, բարձրացնեն կոմունիստների պատասխանատվությունը մանկավարժական կոլեկտիվներում առողջ ու գործարար մթնոլորտ ստեղծելու, դպրոցի կյանքից վատ երևույթները վերացնելու համար։ Երբեմն կոլեկտիվում առկա լարված մթնոլորտը վերացնելու նպատակով

հարկ է լինում ուսուցիչներից մեկին դպրոցից մեկ այլ դպրոց տեղափոխել։ Սկսվում են քաշքշուկը, դիմում-բողոքների տարափը։ Գործը հասնում է վերադաս մարմիններին, նույնիսկ դատարան։

Կարծում ենք՝ ժամանակն է, որ մանկավարժներին տեղաշարժելու, կամ ավելին, մանկավարժական աշխատանքում նրանց թողնելու կամ չթողնելու հարցը վճռեն առավելապես ժողկրթության օրգանները, մանկավարժական կոլեկտիվները։

Գաղտնիք չէ, որ այսօր մեր դպրոցներում ուսուցիչների մի մասն իր գիտելիքների պաշարով ու կուլտուրայով չի համապատասխանում նոր սերնդի բազմազան պահանջներին, ուստի և առաջանում են ամենօրյա լուրջ բախումներ, մի կողմից՝ լավագույն և խիստ սահմանափակ ուսուցիչների, մյուս կողմից՝ բախումներ կուլտուրապես աճող աշակերտների և մտավորապես աղքատ դասատուների միջև։ Հայտնի է, որ այս բախումները լուրջ գլխացավանք են պատճառում ո՛չ միայն դպրոցի ղեկավարներին, այլև լուսավորության վերադաս մարմիններին։ Իսկ երբ դպրոցի պարտիական կազմակերպությունը փորձում է լրջորեն միջամտել նման պատմություններին, այդ յուրովի բորբոքում է մանկավարժական մթնոլորտը, որը և բացասաբար է անդրադառնում աշակերտների վրա։ Նման երևույթներից խույս տալու համար անհրաժեշտ է, որ դպրոցի պարտիական կազմակերպություններն ինչպես հարկն է կազմակերպեն ուսուցչական կոլեկտիվի ինքնազարգացման գործը։ Միայն մանկավարժների կուլտուր-գաղափարական մակարդակի բարձրացմամբ հնարավոր կլինի կանխել այն տհաճ ու վնասակար երևույթները, որոնք խիստ բացասաբար են անդրադառնում մեր դպրոցական կյանքի վրա։

Դպրոցական պարտիական կազմակերպությունները կոչված են ըստ արժանվույն վեր հանելու և գրվատելու ինչպես լավագույն մանկավարժներին, այնպես էլ լավագույն սովորողներին։ Ժամանակն է, որ այդ պարտիական կազմակերպությունները խորհեն ու մշակեն այնպիսի եղանակներ, որոնք իսկապես լավագույն մանկավարժների փորձը դարձնեն մյուսների սեփականությունը։ Դպրոցում և նրա սահմաններից դուրս ուսանելի ձևերով պրոպագանդել լավագույն մանկավարժի գործունեության դրական փորձը՝ սա ևս դպրոցի պարտիական կազմակերպության պարտականությունն է, մի պարտականություն, որի կենսագործմամբ նշանակալի չափով կբարձրանա ամբողջ մանկավարժական կոլեկտիվի կուլտուրան։

Դպրոցի պարտիական կազմակերպությունը պատասխանատու է դպրոցական ամբողջ կոլեկտիվի նորմալ կյանքի, նրա հարատև աճման, նրա գործունեության մեջ տեղ գտած բոլոր թերությունների վերացման համար։

Մեր կարծիքով, դպրոցներում դաստիարակչական աշխատանքի բարելավման գործում կարևոր նշանակություն ունի մանկավարժական կոլեկտիվների պատասխանատվության բարձրացումն ամեն մի աշակերտի վարքի, նրա այս կամ այն արարքի, կամ մեր մարդուն խորթ տրամադրության համար։

Շատ հաճախ մանկավարժական կոլեկտիվները չեն հետաքրքրվում, թե ինչու է աշակերտը թույլ տվել այս կամ այն արարքը, չեն խորանում դրա պատճառների մեջ, չեն մտածում վերացնել այն, այլ աշխատում են գտնել իրենց արդարացնող պատճառները։ Օրինակ, Ա. Գ-ն սովորել է № 70 դպրոցի 7-րդ դասարանում։ Դուրս մնալով ծնողների հսկողությունից, օրերով բացակայել է տնից, վարել թափառաշրջիկ կյանք և զբաղվել անբարոյականությամբ։ Նա բազմիցս գողություն է արել՝ ինչպես իր, այնպես էլ հարազատների ու հարևանների տներից։ Փոխադրվելով 7-րդ դասարան, 1964 թ. սեպտեմբերի 1-ից նա այլևս դասի չի հաճախում։ Ոչ դպրոցի մանկավարժական խորհուրդը և ոչ էլ ծնողները չեն հետաքրքրվում նրա կյանքով։ Ծնողները հրաժարվում են նրան վերցնել իրենց խնամքի տակ, պատճառաբանելով, թե չեն ցանկանում, որ մյուս երեխաներն էլ նրա պես լինեն։ Մանկական սենյակը գործը պատրաստել է՝ Ա. Գ-ին հատուկ դաստիարակչական դպրոց ուղարկելու համար, բայց ծնողների անտարբերության հետևանքով առ այսօր նրա հարցը մնում է չլուծված։ Դպրոցի պարտիականներին չի հուզել այս պատանու բախտը, նրանք հանդես չեն բերել պատշաճ հոգատարություն։

Այս բոլորի հետ մեկտեղ, դպրոցների սկզբնական պարտիական կազմակերպություններից պահանջվում է ամեն կերպ բարձրացնել դպրոցական ղեկավար աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Անհրաժեշտ է վճռական պայքար մղել ինքնահանգստացման, գոռոզամտության, սեփական թերությունները չտեսնելու և նման այլ երևույթների դեմ, հասնել այն բանին, որ մեր դպրոցների ղեկավար կադրերը կիրառեն աշխատանքի ճիշտ ոճ ու մեթոդներ, պետության ու ժողովրդի շահերն ամեն ինչից բարձր դասեն, թույլ չտան կարգապահության խախտումներ, անարդարացի չվարվեն մարդկանց հետ, պահանջկոտությունը և խստությունը զուգակցեն ուսուցիչների նկատմամբ ուշադիր և զգայուն վերաբերմունքի հետ։

Ս. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

ՀԿՊ Օրջոնիկիձեի շրջկոմի քարտուղար

# ՃԻՇՏ ՄԱՍՆԱԳԻՏԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Ծովի մակերևույթից ավելի քան հազար ինը հարյուր հիսուն մետր բարձրության վրա գտնըվող Բասարգեչարի շրջանի կոլտնտեսությունները մշակում են հացահատիկ, ծխախոտ, կարտոֆիլ և դաշտավարական այլ կուլտուրաներ. տարեցտարի ավելանում է գյուղատնտեսական այդ կուլտուրաների արտադրանքը։ Այսպես, անցյալ տարի բասարգեչարցիները հացահատիկային ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից ստացան միջին հաշվով 14,3, ծխախոտի պլանտացիաներից՝ 17 ցենտներ բերք։ Ռեսպուբլիկայում հացահատիկի ամենաբարձր բերքատվությունն ապահովելու համար շրջանը շահեց ՀԿՊ Կենտրոնական կոմիտեի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի փոխանցիկ դրոշը և արժանացավ առաջին կարգի մրցանակի, իսկ ծխախոտի բերքատվությամբ՝ գրավեց երրորդ տեղը։

Մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ շրջանի էկոնոմիկայում վճռական դեր է խաղում անասնաբուծությունը, որի զարգացման ուղղությամբ պարտիական կազմակերպություններն ու կոլտնտեսությունների վարչությունները որոշակի աշխատանք են կատարել։ Բավական է նշել, որ 1964 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 31 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 225, մանր եղջերավոր անասուններինը՝ 22 տոկոսով, այդ թվում մայր ոչխարներինը՝ 30 տոկոսով և թռչուններինը՝ 257 տոկոսով։ Այս հաջողությունները, մեր ունեցած հնարավորությունների պայմաններում, դեռևս բավարար համարել չի կարելի։

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի մարտյան պլենումը գյուղական պարտիական կազմակերպությունների և բոլոր կոմունիստների առաջ խնդիր է դրել առաջիկա երկու-երեք տարիներում վճռական բեկում ստեղծել երկրի անասնապահության զարգացման և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում։

ՀԿՊ Բասարգեչարի շրջանային կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպությունները մոբիլիզացրել են կոլտնտեսությունների աշխատողների ողջ ուժերը՝ այդ առաջադրանքի կատարման համար։ Առաջնորդվելով կադրերն են որոշում գործի հաջողությունը՝ սկզբունքով, պարտիայի շրջանային կոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում անասնապահության բնագավառի աշխատողների ընտրությանը, տեղավորմանն ու դաստիարակությանը։ Միայն վերջին տարիներս անասնաբուծական ֆերմաներում ղեկավար աշխատանքի են անցել 25 զոոտեխնիկ և անասնաբույժ։

Այժմ կոլտնտեսությունների բազմաթիվ անասնաբուծական ֆերմաների մասնագետ վարիչները, հմտորեն վարելով իրենց տնտեսությունները, հաջողությամբ են լուծում առաջադրված խնդիրները։ Ակունքի կովաբուծական և ոչխարաբուծական ֆերմաների վարիչներ Շ. Համբարձումյանը և Ս. Խաչատրյանը անցյալ տարի անթերի կատարեցին անասնաբուծական մթերքների արտադրության պլանները։ Ազիզլուի և Զառքենդի ոչխարաբուծական ֆերմաների վարիչներ Ս. Բաբաևը և Իսաևը, հոտի խնամքը լավ կազմակերպելու շնորհիվ 1964 թվականին յուրաքանչյուր ոչխարից միջին հաշվով ստացան 3,5 կգ բուրդ, որը 1,3-ով ավելի էր շրջանի միջինից։ Բասարգեչար գյուղի ոչխարաբուծական ֆերման, որի վարիչն է Ա. Խլոյանը, միայն անցյալ տարի պետությանը վաճառեց 118 ցենտներ բուրդ, 320 ցենտներ միս։ Այստեղ ոչխարների գլխաքանակը 3500-ից ավելի է։ Մաքիների վաղ ծինը լավ կազմակերպելու տարիների փորձ ունի Նորակերտի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի վարիչ, զոոտեխնիկ Մխիթարյանը։ Այդ մեթոդի կիրառումը հնարավորություն է տալիս զգալիորեն բարձրացնելու բրդի և ոչխարի մսի արտադրությունը։ Նորակերտցիների փորձը ցույց է տալիս, որ նույն գլխաքանակով ոչխար ունեցող ֆերմաների համեմատությամբ այստեղ արտադրվում է 22—25 տոկոսով ավելի բուրդ և 20 տոկոսով ավելի միս։ Մատղաշի կորուստը քիչ է լինում։

Զգալի չափով բարձրացել է սկզբնական պարտիական կազմակերպությունների, կոմունիստների պատասխանատվությունը անասնաբուծության զարգացման բնագավառում։ Պարտիական կազմակերպությունները չեն բավարարվում անասնապահության հետ կապված հարցերը սոսկ իրենց ժողովներում կամ բյուրոների նիստերում քննարկելով, այլ կոնկրետ զբաղվում են կերի կուտակման, անասունների խնամքը բարելավելու գործով։ Այժմ անասնաբուծական ֆերմաներում, անմիջականորեն արտադրության մեջ աշխատում են ավելի քան 300 կոմունիստ ու 600 կոմերիտական, որոնք ջանք չեն խնայում անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման համար։

Բասարգեչարի կոլտնտեսության կթվորուհի Անիկ Շաբոյանը իր խնամած 12 կովից անցյալ տարի ստացել է 12 հորթ։ Նա կոլտնտեսության միջինից 350 կիլոգրամով ավելի կաթ է ստացել ամեն մի կովից։ Ազիզլու գյուղի կոլտնտեսության հովիվ, կոմունիստ Բ. Նաջաֆովը

միշտ գերակատարում է անասնաբուծական մըթերքների արտադրության առաջադրանքը։ Անցյալ տարի Նաջաֆովը 100 մաքիից միջին հաշվով ստացավ 107 գառ, յուրաքանչյուր ոչխարից՝ 4,2 կիլոգրամ բուրդ։

Վերջին տարիներս որոշակի գործ է կատարված անասնապահական ֆերմաների աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ։ Այժմ հարթավայրերում խոտը հնձվում է մեքենաներով։ Կովաբուծական բազմաթիվ ֆերմաներում ավտոմատացվել են անասուններին ջրելու, կերակրելու, աղբը թափելու աշխատանքները, հիմնականում կիրառվում է էլեկտրախուզը։ Կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները փորձով համոզվում են, որ արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը խոշոր չափով նպաստում են աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումը ընդգծեց, որ անասնաբուծության զարգացման, նրա մթերատվության հետագա ավելացման և գլխաքանակի ավելացման հիմնական պայմանը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ մեր տեղական անասուններից ստացված մատղաշները լավագույն խնամքի, կերակրման դեպքում մեկ տարեկան հասակում (180—200 կգ. կենդանի քաշով) կարելի է վաճառել պետությանը, սակայն կերի պակասության դեպքում մատղաշները լավ չեն աճում, պահվում են 3—4 տարի և հանձնվում պետությանը ցածր քաշով։ Այս հանգամանքը խիստ ազդում է ինչպես ինքնարժեքի իջեցման, այնպես էլ մսի որակի բարձրացման վրա։ Ավելին, վատ խնամված երինջները կով են դառնում 4—5 տարի պահելուց հետո և տարեկան տալիս են 800—900 կգ. կաթ. այս հանգամանքն արգելակում է հանրային հոտում կովերի գլխաքանակի ավելացմանը։

Անասնապահության զարգացման նպատակով նախատեսված է 1965 թվականին խոտի արտադրությունն ավելացնել 1,5, սիլոսինը՝ 2 անգամ, ոլոռի և վարսակի խառը ցանքսը, 1964 թվականի համեմատությամբ, պետք է ավելանա մոտ 2000, կորնգանինը՝ 800 հեկտարով. դրա հետ մեկտեղ ավելանալու են ցանովի մյուս խոտաբույսերի ցանքատարածությունները։ Հատուկ ջանք է գործադրվելու բնական խոտհարքների մշակության, հատիկաֆուրաժային կերի ավելացման ուղղությամբ։

Կերի կայուն բազայի ստեղծման հետ միասին պարտիական կազմակերպությունները լուրջ աշխատանք պետք է ծավալեն անասնացեղի բարելավման ուղղությամբ։ Այդ նպատակով շրջանում ստեղծված է պետական սերմնավորման կայան, իսկ կոլտնտեսություններում պայմաններ են ստեղծվել անասունների արհեստական սերմնավորումը ճիշտ կազմակերպելու և անցկացնելու համար։

Կազմակերպվել են տոհմային ֆերմաներ Կալինինոյից և Ռուսաստանից բերված երինջներով։ Շրջանի 6 կոլտնտեսություններում ստեղծված են տոհմային կովաբուծական ֆերմաներ, որոնք հետագայում կդառնան մյուս տնտեսություններում ևս տոհմային ֆերմաների կազմակերպման բազա։

Անասնապահության զարգացման, մթերատվության ավելացման, տոհմային գործի պատշաճ կազմակերպման համար անհրաժեշտ է կառուցել անասնապահական-արտադրական շենքեր՝ մեքենայացման բարձր մակարդակով։ Սակայն մեր շրջանում խիստ դանդաղ է ընթանում այդ գործը։ Չնայած 1964 թվականին կառուցվել և շահագործման են հանձնվել կովանոցներ 2360 գլխի, հորթանոցներ՝ 400, ոչխարանոցներ՝ 15410 գլխի համար, բայց շրջանի կոլտնտեսություններում անասնաբուծության պատշաճ կազմակերպման համար անհրաժեշտ է մոտակա տարիներին կառուցել նոր կովանոցներ՝ 2000, հորթանոցներ՝ 600, ոչխարանոցներ՝ 20 հազար և թռչնանոցներ 10 հազար գլխի համար։ Այս ուղղությամբ մեծ անելիքներ ունեն շրջանի պարտիական, տնտեսական, ինչպես և ռեսպուբլիկական համապատասխան կազմակերպությունները։

Անասնապահության զարգացման գործում մեծ նշանակություն ունի ճիշտ մասնագիտացումը։ Այդ նպատակով նախատեսված է շրջանի Գյունեյի ենթաշրջանի կոլտնտեսություններում զարգացնել ոչխարաբուծությունը։ Մոտակա 2—3 տարիներում այդ կոլտնտեսությունների մասնագիտացման միջոցով ոչխարների գլխաքանակը կարելի է ավելացնել մեկ ու կես անգամ։

Չնայած վերջին երկու տարիների ընթացքում կովերի գլխաքանակը շրջանում ավելացել է 22 տոկոսով, սակայն նախատեսված է շրջանի Ազիզլու, Ջառքենդ, Բասարգեչար, Ակունք, Դաշքենդ, Ջախըլու, Թուսկուլու, Մ. Մազրա, Նորակերտ գյուղերի կոլտնտեսություններում և Կարճաղբյուրի սովխոզում ստեղծել կաթնաապրանքային խոշոր ֆերմաներ։ Դրա համար անհրաժեշտ է մոտակա տարիներում կովերի գլխաքանակն ավելացնել մոտ 1,6 անգամ։

Բասարգեչարի շրջանի պայմաններում բավարար հնարավորություններ կան նաև մեղվաբուծության զարգացման համար, սակայն պետք է ասել, որ այդ հնարավորությունները դեռևս լրիվ չեն օգտագործվում։ Հաշվի առնելով տնտեսության այդ ճյուղի եկամտաբեր լինելը, նախատեսված է մոտակա երկու տարվա ըն-



թացքում շրջանի մի շարք կոլտնտեսություններում ստեղծել տոհմամեղվաբուծական տնտեսություններ, ինչպես նաև խոշորացնել առանձին կոլտնտեսություններում եղած փոքր մեղվաբուծական տնտեսությունները։

Եռամսյակը մեկ անգամ շրջանի առաջավոր անասնապահների հավաքում ստուգվում, քննարկվում են սոցիալիստական մրցության արդյունքները և շրջանային կոմիտեի ու արտադրական վարչության փոխանցիկ դրոշը հանձնվում է այն կոլտնտեսությանը, որը բարձր ցուցանիշների է հասել անասունների գլխաքանակի պահպանման և մթերքների արտադրության ու վաճառքի գործում։ Բասարգեչարի Կարմիր Նոյեմբերի անվան կոլտնտեսությունը երկու եռամսյակ է, ինչ իր ձեռքում է պահում այդ դրոշը։ Բացի այդ, շրջանի կոլտնտեսություններում սահմանվել են նաև ներկոլտնտեսային փոխանցիկ դրոշներ, որոնք ամիսը մեկ անգամ, արդյունքներն ամփոփելուց հետո, հանձնվում են ավելի բարձր ցուցանիշներ ձեռք բերած ֆերմաներին։ Փոխանցիկ դրոշների հանձնման հետ միասին կոլտնտեսականներին տրվում են նաև դրամական պարգևներ։

Շրջանում լայն թափ է ստացել կոմունիստական աշխատանքի շարժումը։ Ավելի քան 10 անասնապահական ֆերմաներ պայքարում են կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչման արժանանալու համար։ Պարտիական կազմակերպությունները զգալի գործ են արել աշխատանքի կազմակերպման, արտադրական նորմաների կատարելագործման, ինչպես նաև անասնապահների նյութական շահագրգռվածության բարձրացման ուղղությամբ։

Գաղափարական-մասսայական աշխատանքն իր ոլորտն է առել և անասնապահների աշխատանքի առաջավոր փորձի պրոպագանդան։ Ուսումնասիրվել ու տարածվել է Ազիզլուի կոլտնտեսության անվանի հովիվ Բահման Նաջաֆովի առաջավոր փորձը, որը հարյուր մայր ոչխարից ստացել է 110 գառ և մեկ ոչխարի բրդատվությունը հասցրել է 4,7 կգ-ի։ Շատ բան է արվում անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացման, առաջավոր փորձի տարածման ու արմատավորման ուղղությամբ։ Բասարգեչարի կոլտնտեսության անվանի կթվորուհիներ՝ Անիկ Շարոյանը և Անիկ Բարսեղյանը առաջին անգամ կիրառելով ավտոմատ կիթը, մեկ ֆուրաժային կովից ստացան 300—400 կիլոգրամով ավելի կաթ, քան չմեքենայացված կթի դեպքում։ Այդ անվանի կթվորուհիների աշխատանքի փորձը տարածվում է շրջանի մյուս կոլտնտեսություններում։

Ամփոփելով 1964 թվականի անասնապահության բնագավառի սոցիալիստական մրցության արդյունքները, պարտավորվել ենք 1965 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, կովերի գլխաքանակն ավելացնել 10, ոչխարներինը՝ 5, հավերինը՝ 10, մսի արտադրությունը՝ 12, բրդինը՝ 5, կաթինը՝ 10, ձվինը՝ 10 տոկոսով։ Անասնապահության զարգացման ուղղությամբ ստանձնած մեր պարտավորությունները կկենսագործվեն, եթե լիովին օգտագործենք մեր հնարավորություններն ու ռեզերվները, եթե մեզ հարկ եղած օգնությունը ցույց տան ռեսպուբլիկական համապատասխան կազմակերպությունները։ Անասունների ցեղի բարելավման համար լուրջ նշանակություն ունի արհեստական սերմնավորման կազմակերպումը, սակայն երկրորդ տարին է, ինչ գյուղատնտեսության մինիստրությունը Բասարգեչարում բացել է Մարտունու կայանի ֆիլիալը, բայց դեռևս նրա համար աշխատանքի պայմաններ չեն ստեղծվել։ Մինիստրության համապատասխան բաժինը պետք է հունի մեջ դնի այս ֆիլիալի գործունեությունը։

Անասնացեղի բարելավման նպատակով մինիստրությունն ամեն տարի տոհմային տնտեսություններից ստանում և շրջաններին է վաճառում 1500—2000 գլուխ ցեղական երինջ, սակայն բաշխումը ճիշտ չկազմակերպելու հետևանքով, ամեն մի շրջանին հատկացված է 40—50 գլուխ ցեղական անասուն, որոնց պահպանման համար տեղերում պայմաններ չեն ստեղծում և դրանք դառնում են ցածրորակ։ Նպատակահարմար է ստացված այդ ցեղական երինջներն ամեն տարի բաշխել մեկ կամ երկու շրջանի վրա, ստեղծելով դրանց համար խնամքի և պահպանության նորմալ պայմաններ։ Այդպիսով հնարավոր կլինի 10—15 տարվա ընթացքում ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում լուծել տոհմաբուծության հարցը։

Ռեսպուբլիկայի առանձին կազմակերպություններ չեն հոգում յայլաղներում անասնապահների համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու, նրանց արտահագուստով, արդյունաբերական և սպառման ապրանքներով, շարժական յայլաղային տնակներով ժամանակին ապահովելու մասին։

Ռեսպուբլիկայում, ինչպես և Բասարգեչարի շրջանում, խնդիր է դրված արագ զարգացնել թռչնաբուծությունը, բայց որոշակիորեն դեռ լուծված չէ, թե որտեղ և որ կազմակերպությանը պետք է հանձնվի թռչունի միսը։ Մսի կոմբինատի շրջանից հեռու գտնվելը բացասաբար է անդրադառնում մսի որակի ու քաշի վրա, որի հետևանքով ինչպես կոլտնտեսությունները, այնպես էլ պետությունը հսկայական նյութական վնաս են կրում։ Նման վիճակից դուրս գալու համար անհրաժեշտ է կառուցել մսի կոմբինատ կամ սպան-

կազմակերպումը, որը երկրին տալու է 25 այդպիսի նոր մեքենաներ։ Այդ մեծ քննություն է գործարանի բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների համար, գործարանի հետագա պրոֆիլը վերջնականապես ճշտելու ճանապարհին։ Գործարանի համար նորություն է նաև ՍՄ—89 և ԿԱԳ—2 քարհատ մեքենաների արտադրությունը։ Այս նոր մեքենաներն ունեն տնտեսական մեծ առավելություններ անցյալ տարի արտադրվող ՍՄ—518 և ՍՄ—418 քարհատների համեմատությամբ։ Այդ է պատճառը, որ վերջիններիս արտադրությունն այս տարի պլանից հանված է։

Շահագործման հանձնելով հղկող հաստոցների գործարանի նոր կորպուսները, այստեղ նույնպես զգալի փոփոխություններ կմտնեն արտադրության մեջ։ 3բ12 ՍՄ մոդելի ունիվերսալ հղկող հաստոցների արտադրությունն անցյալ տարվա 50 հատից կհասնի 600-ի։ Բնականաբար կոլեկտիվին խիստ կմտահոգի արտադրանքի որակը ժամանակակից ստանդարտների մակարդակին հասցնելու խնդիրը։ Այստեղ էլ հենց մեծ անելիքներ ունի գործարանի սկզբնական պարտիական կազմակերպությունը, քանի որ ամենից կարևորն այսօր որակի բարձրացումն է։ Գործարանը կարող է և պետք է լարի իր բոլոր ուժերը՝ լուծելու այդ խնդիրը, նամանավանդ որ այդ գործարանում յուրաքանչյուր 6-րդ աշխատողը ռացիոնալիզատոր է։

Տեխնիկական առաջադիմության հարցերը մի քանի անգամ քննարկվել են մանվածքային ֆաբրիկայի պարտիական կազմակերպության կողմից, մշակվել են պլաններ, որոնց համաձայն անցած մեկ տարվա ընթացքում ֆաբրիկայում տեղադրվել են 50-ից ավելի սանրող, մանող, ոլորող և այլ նոր, բարձր արտադրողականությամբ մեքենաներ, որոնց տնտեսական օգուտը կազմեց ավելի քան 70 հազար ռուբլի։ Ռացիոնալիզատորների ջանքերով ֆաբրիկան ստացել է 36 հազար ռուբլու տնտեսական օգուտ։ Այս ամենը հնարավորություն ընձեռեցին՝ բարձրացնելու արտադրողականությունը և իջեցնելու ինքնարժեքը։ Իսկ ինչպիսի՞ հեռանկարներ կան այս տարի։

Պարտիական կազմակերպությունը, տնտեսական ղեկավարության հետ միասին, արդեն մշակել է միջոցառումներ աշխատանքային պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման համար։ Այս տարի շարք կմտնեն նաև ֆաբրիկայի նոր, հսկա կորպուսներ՝ կենցաղային բաժիններով։ Նոր տարվա նախօրյակին ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը (քարտուղար ընկ. Մ. Թովմասյան) կրկին անդրադարձավ տեխնիկական առաջադիմության հարցերին, նորանոր պարտավորություններ դրեց տնտեսական և տեխնիկական ղեկավարության առաջ։ Որոշվեց 1965 թվականին ավտոմատացնել խոլոստի տեղափոխումը գզող բաժնից դեպի սանրող մեքենաները, մեքենայացնել պատրաստի թելի տեղափոխման աշխատատար պրոցեսը, ավտոմատացնել պարաֆինե օղակների թափման աշխատանքը և այլն։ Այդ որոշումը հավանության արժանացավ ֆաբրիկայի մասնագետների կողմից. նախնական հաշվումներով այդ միջոցառումների շնորհիվ տարեկան կստացվի 27 հազար ռուբլու տնտեսական օգուտ։

Պարտիան այժմ նոր խնդիրներ է դնում արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կազմակերպությունների առջև։ Ներկայումս կարևորը, ինչպես այդ մասին նշվեց ՍՍՌՄ Գերագույն սովետի հինգերորդ սեսիայում, ձեռնարկության շահութաբերության և արտադրանքի որակի բարձրացումն է։ Այս ուղղությամբ Լենինականի կոմունիստները և աշխատավորները ձեռք են բերել զգալի հաջողություններ, բայց և ունեն առավել մեծ խնդիրներ։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, մեծ աշխատանք կատարեցին ձեռնարկությունների շահութաբերությունը բարձրացնելու ուղղությամբ։ Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի, գուլպայի ֆաբրիկայի, դարբնոցամամլիչային սարքավորումների, էլեկտրատեխնիկական, սարքաշինական, «Ստրոմմաշինա» և այլ գործարանների պարտիական կազմակերպություններն ու կոլեկտիվները առաջիններից էին, որ, ուսումնասիրելով իրենց ներքին հնարավորությունները, Մոսկվայի 15 ձեռնարկությունների հայրենասիրական նախաձեռնության օրինակով ստանձնեցին նոր պարտավորություններ՝ արտադրանքի բոլոր տեսակներն առանց վնասի արտադրելու նպատակով։ Արդյունքը եղավ այն, որ նշված ձեռնարկություններն այժմ արդեն աշխատում են օգուտով։

Տեխնիկական առաջադիմության, աշխատանքի և մեքենասարքավորումների արտադրողականության բարձրացման, անարտադրողական ծախսերի կրճատման, հումքի տնտեսման շնորհիվ տեքստիլ կոմբինատի գործվածքային և ներկման վերամշակման ֆաբրիկաներն աշխատում են օգուտով։ Դարբնոցամամլիչային սարքավորումների գործարանում թողարկվող երեք տեսակի արտադրանքից մեկը՝ մետաղահատ մկրատը, անցած տարվա առաջին կիսամյակում թողարկվում էր վնասով։ Սակայն պարտիական կազմակերպության, կոմունիստների և ողջ կոլեկտիվի ձեռնարկած միջոցների շնորհիվ հետագայում յուրաքանչյուր մետաղահատ մկրատի հումքը տնտեսվեց 900 կիլոգրամով, ձեռքի աշխա-



տանքը դարձավ կիսավտոմատ, աշխատատարությունը կրճատվեց մոտ 40 տոկոսով և մկրատն էլ սկսեցին արտադրել օգուտով։

Սարքաշինական գործարանում որոշ սարքեր. օրինակ՝ ՇՏ—1-ը, ԻՊՏ—1-ը արտադրվում էին վնասով։ Գործարանի կոմունիստների ջանքերով այդ հարցը ևս ժամանակին լուծվեց։

Տեխնիկական առաջադիմության խնդիրը մշտապես գտնվում է պարտիայի քաղաքային կոմիտեի ուշադրության կենտրոնում։ Վերջերս քաղկոմի բյուրոն կրկին անդրադարձավ այդ կարևոր խնդրին և նշեց, որ քաղաքի արդյունաբերական մի քանի ձեռնարկություններում արտադրանքի որոշ տեսակներ դեռևս արտադրվում են վնասով. օրինակ, կենցաղային սառնարանների գործարանը միակն էր, որ անցած տարի չկատարեց թողարկվող արտադրանքի պլանը և աշխատում է վնասով։ Չնայած այս հարցը մի քանի անգամ բարձրացվել է ռեսպուբլիկայի ժողտնտխորհի և նրա համապատասխան վարչության առջև, սակայն մինչև այժմ լուծված չէ։ Կամ «Լենկոշ» ֆաբրիկայում թողարկվող յոթ տեսակ արտադրանքից չորսի ինքնարժեքի իջեցման պլանը չի կատարվել։ Քաղաքային կոմիտեն մշակեց կոնկրետ միջոցառումներ՝ այս տարվա սկզբից արտադրանքի յուրաքանչյուր տեսակ առանց վնասի արտադրելու, անարտադրողական ծախսերը կրճատելու և ձեռնարկությունների շահութաբերությունն ավելի բարձրացնելու նպատակով։

Արդյունաբերության մեջ աշխատող կոմունիստները պայքար են սկսել արտադրանքի որակական ցուցանիշները բարելավելու համար։ Նրանք լավ գիտեն, որ Սովետական Միության ձեռնարկությունների պիտակը կրող արտադրանքը՝ լինի այն հաստոց, մեքենա, սարքավորում, կոշիկ կամ գործվածք, պետք է աչքի ընկնի ճաշակով, լինի գեղեցիկ հարդարված, դիմացկուն, հուսալի և երկարակյաց։

Արձագանքելով Մոսկվայի և Լենինգրադի արդյունաբերական ձեռնարկությունների հայրենասիրական կոչին՝ Լենինականի աշխատավորները վճռել են առաջիկա 3—4 տարում արտադրանքի որակի գծով հասնել համաշխարհային ստանդարտների մակարդակին։ Քաղաքի արդյունաբերական շատ ձեռնարկություններում որոշակի քայլեր են արվում արտադրանքի որակի բարելավման, ասորտիմենտի ընդլայնման և մեծ պահանջարկ ունեցող ապրանքների նոր տեսակների յուրացման համար։ Պարտիական կազմակերպությունները ամենուրեք այս հարցն էին քննարկում։ Կոմունիստները խորհրդակցեցին, մշակեցին կոնկրետ միջոցառումներ։ Այժմ թողարկվում են նոր տեսակի, ավելի ճաշակով հարդարված գործվածքներ, որոնք ունեն հաճելի գույն ու գեղեցիկ նախշեր։ Ընդլայնվել է բնական և քիմիական թելախառնուրդից պատրաստվող առարկաների արտադրությունը։ Մշակվել և արտադրության մեջ արմատավորվել են տրիկոտաժեղենի, հագուստեղենի և կոշկի շատ տեսակներ։ Քաղաքացիները հաճույքով են գնում գուլպայի ֆաբրիկայի արտադրած էլաստիկ, գեղեցիկ հարդարված տղամարդու գուլպաները, կանացի գուլպաների առանձին տեսակներ, տրիկոտաժի ֆաբրիկայի նորաձև ներքնահագուստները, «Մասիս» ֆիրմայի Լենինականի կոշկի ֆաբրիկայի արտադրած կոշիկները և այլ ապրանքներ։

Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատում, գուլպայի, տրիկոտաժի ֆաբրիկաներում վերը նշված միջոցների շնորհիվ կատարվում և գերակատարվում է առաջին տեսակի արտադրանքի թողարկման պլանը։ Այսպես՝ տեքստիլ կոմբինատի ներկման-վերամշակման ֆաբրիկան անցյալ տարի նախատեսված 88-ի փոխարեն փաստացի տվեց 88,8 տոկոս առաջին տեսակի արտադրանք, գուլպայի ֆաբրիկան՝ 77-ի փոխարեն՝ 79,1 տոկոս։

Ձեռք բերված հաջողությունները դեռևս բավարար համարվել չեն կարող։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ կան լուրջ թերություններ, որոնց վերացումը պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է։ Դեռևս մեծ է պատվիրատուներից և առևտրական կազմակերպություններից ստացվող բողոքների թիվը, առանձին տնտեսական ղեկավարներ, ձգտելով կատարել միայն համախառն արտադրանքի պլանները, անտեսում են հիմնականը՝ որակը։ «Ստրոմմաշինա» գործարանի կոլեկտիվը սիստեմատիկաբար կատարում է պետական առաջադրանքները։ Բայց ո՞ւմ են պետք այդ ցուցանիշները, երբ որակի հարցում գործարանը կաղում է։ Այն միջոցառումները, որոնք իրականացվում են գործարանում արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ, դեռևս բավարար համարել չի կարելի։ Սկզբնական պարտիական կազմակերպությունը պետք է մոբիլիզացնի գործարանի ողջ կոլեկտիվի ուժերը, որպեսզի կատարվեն մշակված բոլոր միջոցառումները և արմատապես բարելավվի թողարկվող մեքենաների որակը։

Քաղաքի թեթև արդյունաբերության որոշ ձեռնարկություններում երբեմն խախտվում են ստանդարտները, չի ապահովվում արտադրանքի տեսականության պլանի կատարումը, անտեսվում է սպառողների պահանջարկը։ Կոշկի № 2 ֆաբրիկայում անցած տարի ստացվել են 40-ից ավելի բողոքներ, ետ է վերադարձվել ավելի քան 900 զույգ զանազան տեսակի կոշկեղեն։

Ձեռնարկությունը վճարել է 5000 ռուբլուց ավելի տուգանք։ Գուլպայի ֆաբրիկան բողոքներ է ստանում արտադրանքի առանձին տեսակների ցածր որակի մասին։ Անհրաժեշտ է, որ այդ ձեռնարկությունների կոմունիստներն ավելի ակտիվացնեն կոլեկտիվի պայքարը տեխնիկական առաջադիմության հարցերը լուծելու, բարձրորակ արտադրանք ապահովելու համար։

Տեխնիկական առաջադիմության հարցերը քիչ են հուզում կենցաղային սառնարանների գործարանի հեծանիվի ցեխի կոմունիստներին և տեխնիկական ղեկավարներին։ Այստեղ տարիներ շարունակ արտադրանքի որակի բարձրացման ուղղությամբ գործնական քայլեր չեն արվել։ Եվ պատահական չէ, որ ապրանքների որակի գծով ռեսպուբլիկական պետական տեսչությունը մի քանի անգամ արգելել է ձեռնարկության արտադրած մանկական հեծանիվների վաճառքը։ Ցավալին այն է, որ, չնայած պլանների զգալի կրճատմանը, գործարանում մնում են հազարավոր մանկական հեծանիվներ, որոնք իրենց որակով չեն բավարարում սպառողների պահանջը։ Արտադրանքի որակի նկատմամբ նման անպատասխանատվությունը մեծ վնաս է հասցնում պետությանը։ Այստեղ տեղին է նշել նաև Երևանի ավտոպահեստամասերի և ռետինատեխնիկական իրերի գործարաններից ստացվող դետալների ու դողիկների ցածր որակի մասին։

Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կողմից թողարկվող արտադրանքի որակը բարելավելու համար պարտիայի քաղաքային կոմիտեն և սկզբնական պարտկազմակերպությունները ամեն բան անում են, որ յուրաքանչյուր աշխատող, առաջին հերթին, յուրաքանչյուր կոմունիստ հարգի իր և ընկերոջ աշխատանքը, բարձր պահի գործարանի, ֆաբրիկայի պատիվը։ Նրանք ձգտում են բարձրացնել ամեն մի աշխատողի պատասխանատվությունը գործի հանդեպ, քննադատության կրակն ուղղել խոտանարարների, բոլոր նրանց դեմ, ովքեր անփույթ են իրենց գործում։

Պարտիայի քաղաքային կոմիտեն, սկզբնական պարտկազմակերպությունները և տնտեսական ղեկավարները այսուհետև էլ ձեռնարկելու են բոլոր միջոցները՝ ապահովելու քաղաքի արդյունաբերության տեխնիկական առաջադիմությունը, ոչ մի րոպե չմոռանալով մեծ Լենինի ցուցումները, թե՝ «...տնտեսագետը միշտ պետք է նայի առաջ, տեխնիկայի առաջադիմության կողմը, այլապես նա անհապաղ ետ կմնա, որովհետև ով չի ուզում նայել առաջ, նա թիկունքով շրջվում է դեպի պատմությունը. միջինը այստեղ չկա և չի կարող լինել» (Երկեր, հատ. 5, էջ 184)։

Ռ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ

ՀԿՊ Լենինականի քաղկոմի քարտուղար

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը երիտասարդ սոցիալիստական ռեսպուբլիկայի հիմնական խնդիրներից մեկը համարեց աշխատավորների լայն ներգրավումը պետության և երկրի կառավարման գործում։ Իլյիչի այդ պատգամն առանձնապես կենսահաստատ է մեր օրերում՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար մղվող պայքարի արդի ժամանակաշրջանում։

Ներկայումս ավելի ու ավելի մեծ թվով սովետական մարդիկ են մասնակցում ժողովրդատնտեսական, պետական և հասարակական կարևորագույն հարցերի պրակտիկ լուծմանը։ Հասարակական հիմունքներով աշխատանքն ավելի է տարածվում պարտիական կազմակերպություններում։ Այսպես, Հրազդանի շրջանի սկզբնական պարտիական կազմակերպությունների լավագույն և անմիջական օգնականներն են՝ հասարակական հիմունքներով գործող քաղլուս կաբինետները, գաղափարական աշխատանքների հանձնաժողովները, պարտիայի շարքերում ընդունվողների և կոմունիստների անձնական գործերի նախնական քննարկման հանձնաժողովը, տնտեսական վերլուծության և տեխնիկական նորմավորման խորհուրդները։

Ծաղկաձոր ու Լուսակերտ ավաններում և Լուսավան քաղաքում գործող քաղլուս կաբինետները դարձել են ազգաբնակչության շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կենտրոններ։ Լուսավանի քաղլուս կաբինետը տեղավորված է կուլտուրայի տանը։ Քաղաքի ագիտատորներին, պրոպագանդիստներին ու դասախոսներին օգնելու նպատակով կազմակերպված է մեթոդ խորհուրդ։ Վերջերս այդ խորհրդի անդամների միջոցով ուսումնասիրվեց քաղաքական ուսուցման վիճակը քաղաքում և ստուգման արդյունքները քննարկվեցին մեթոդ խորհրդի նիստում։

Պլանավորված ու արդյունավետ աշխատանք է ծավալել ավանի ազգաբնակչության շրջանում Ծաղկաձորի հասարակական հիմունքներով գործող քաղլուս կաբինետը, որի ուշադրության կենտրոնում են ազգաբնակչության ինտերնացիոնալ դաստիարակության հարցերը։ Քաղլուս կաբինետը և շրջկոմի գաղափարական բաժինը կոորդինացված աշխատանք են տանում այդ ուղղությամբ։ Նրանք պարբերաբար կազմակերպում են գիտաաթեիստական, հարց ու պատասխանի երեկոներ, տարբեր ազգությունների ներկայացուցիչների հավաքներ, որոնք տալիս են դրական արդյունք։

Լուսավան քաղաքում կան Գիտելիք ընկերության 10 խմբեր՝ 198 անդամով։ Այդ խմբերի աշխատանքների կոորդինացման համար Լուսավանում ստեղծված է Գիտելիք ընկերության Հրազդանի շրջանային կազմակերպության բաժանմունք՝ հասարակական հիմունքներով։ Բաժանմունքի նախագահ, Լուսավանի միջնակարգ դպրոցի ուսմասվար Ի. Հայրապետյանին հաջողվել է պատշաճ ձևով կազմակերպել Գիտելիք ընկերության խմբի աշխատանքը։

ՀԿՊ Հրազդանի շրջկոմի գաղափարական հանձնաժողովը նիստեր է ունենում երկու ամիսը մեկ անգամ՝ քննարկելով գաղափարական բնագավառի տարբեր հարցեր։ Վերջին նիստերից մեկում (փետրվարին) քննարկվեց քաղաքական դաստիարակչական աշխատանքների վիճակը միկրոշրջանում բնակվող հայրենադարձների շրջանում։

Շրջկոմի գաղափարական աշխատանքի հանձնաժողովի գործունեությունն ակտիվացնելու նպատակով մեզ մոտ ստեղծվել են նաև երկու ենթահանձնաժողովներ՝ Լուսավանում և միկրոշրջանում։

Գաղափարական հանձնաժողովի նիստերում քննարկվում են նաև համաքաղաքային նշանակություն ունեցող հարցեր։ Այսպես, 1964 թվականի նոյեմբերին Լուսավանում քննարկվեց հասարակական կարգի պահպանման հարցը. պարզվեցին որոշ թերություններ։ Հանձնաժողովը նպատակահարմար չգտավ ընկերական դատարաններ ունենալ առանձին կազմակերպություններում. որոշվեց դրանք վերացնել, փոխարենը ստեղծելով մեկ՝ քաղաքային ընկերական դատարան։ Փորձը ցույց տվեց, որ առաջարկությունը տեղին էր։ Այժմ քաղաքի ընկերական դատարանը լայն ճանաչում է գտել, վայելում է մեծ հեղինակություն ազգաբնակչության շրջանում։ 1964 թվականի սեպտեմբերից մինչև 1965 թվականի հունվար ամիսը ընկերական դատարանը քննարկել է 37 գործ։ Ընկերական դատարանն ակտիվ աշխատանք է կատարում հանցագործությունների կանխման և պրոֆիլակտիկ միջոցառումների անցկացման ուղղությամբ։

Հանձնաժողովն անտարբեր չմնաց նաև այնպիսի մի քաղաքական կամպանիայի նկատմամբ, ինչպիսին 1965 թվականի թերթերի և ամսագրերի բաժանորդագրությունն էր։ Նրա օգնությամբ այդ գործը պսակվեց հաջողությամբ։

Գաղափարական հանձնաժողովի նախաձեռնությամբ 3 ամիսը մեկ անգամ հրավիրվում է Լուսավանի սկզբնական պարտիական կազմակերպությունների համաքաղաքային ժողով, ուր քննարկվում են աշխատավորությանը հուզող ամենաբազմազան հարցեր։ Վերջերս, այդ ժողովներից մեկում քննարկվեց աշխատավորության կոմունիստական դաստիարակության հարցը և ընդունվեցին գործարար որոշումներ այդ աշխատանքի բարելավման ուղղությամբ։

Գաղափարական հանձնաժողովի նախաձեռնությամբ կազմակերպված է երկու մշտական գործող ագիտ կետ՝ հայրենադարձների շրջանում քաղաքական դաստիարակչական աշխատանքներ կազմակերպելու նպատակով. Լուսավանում գործում են նաև ծնողական համալսարանը և լեկտորիումը։

Յուրաքանչյուր ամիս Լուսավանում կազմակերպվում է հարց ու պատասխանի երեկո։ Բացի դրանից պատին փակցված է ՀԿՊ Հրազդանի շրջկոմի հարցարկղը, որը բացվում է ամեն ամսի մեկին՝ շրջկոմի քաղլուս կաբինետի վարիչի կողմից և առաջադրված հարցերի պատասխանը տրվում է տվյալ ամսի 10-ին։

Գաղափարական հանձնաժողովի նախաձեռնությամբ Լուսավան քաղաքում լույս է ընծայվում Հարդուկ ամենամսյա երգիծական թերթը, որի խմբագրական կոլեգիան հաստատված է քաղաքի սկզբնական պարտիական կազմակերպությունների միացյալ ժողովում։ Թերթում տպագրված հոդվածներում բարձրացված հարցերը համապատասխան կազմակերպությունների կողմից ժամանակին ստանում են իրենց լուծումը։

Քաղաքի գաղափարական հանձնաժողովն իր ակտիվ գործունեությամբ նվաճել է Լուսավանի աշխատավորության հարգանքը։ Նրանք հարցերով դիմում են հանձնաժողովին և գոհացուցիչ պատասխան ստանում։

Գաղափարական հանձնաժողովի անդամներ են՝ քաղաքի սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարները, արտահաստիքային քաղլուս կաբինետի վարիչը, Գիտելիք ընկերության քաղաքային բաժանմունքի վարչության նախագահը և կուլտուրայի տան դիրեկտորը։ Գաղափարական հանձնաժողովի նիստերին մասնակցում են նաև հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները։

Գաղափարական հանձնաժողովի 1964 թվականի սեպտեմբեր ամսվա նիստում ներտաշ հաստոցների գործարանի սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղար Գ. Ավե-

տիսյանը քաղաքի սկզբնական պարտիական կազմակերպություններին քննադատեց այն բանի համար, որ նրանք պատշաճ ուշադրություն չեն դարձնում բարոյական խրախուսանքների վրա։ Դրանից հետո ուսումնասիրությունը ցույց տվեց, որ մի քանի սկզբնական պարտիական կազմակերպություններում պատշաճ վերաբերմունք չկա բարոյական խրախուսանքի և, առանձնապես, պատվո տախտակի նկատմամբ։ Հաճախ շքեղ ձևավորված պատվո տախտակները ոչինչ չէին ասում. փակցված է դիմանկար, իսկ նրա տակ ընդամենը երկու-երեք բառ՝ «Փականագործ Ս. Սարգսյան» կամ «Խառատ Հակոբյան», իսկ թե նրանք ինչով են արժանացել պատվո տախտակին, նրանցից ինչ պետք է սովորեն մյուսները, այդ մասին ոչինչ չի ասվում։ Առաջավոր, օրինակելի աշխատողին այս ձևով ներկայացնելը քիչ է։

Բարոյական խրախուսանքի ձևերից կարևոր է պատվոգրերի հանդիսավոր հանձնումը. բայց երբեմն գործարանի դիրեկտորը կամ արհմիութենական կոմիտեի նախագահը այն հանձնում էին առանց հանդիսավորության, առանց ջերմ խոսքերի... Այս հարցի քննարկումը լուրջ տեղաշարժեր առաջացրեց և քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում արդեն կիրառվում են բարոյական խրախուսանքի մի շարք արդյունավետ ձևեր։

Լրացել էր Լուսավանի երկաթ-բետոնե կոնստրուկցիաների գործարանի վաստակավոր բանվոր Արամայիս Սարգսյանի աշխատանքային գործունեության 25 տարին։ Կազմակերպվեց նրա մեծարման երեկո։ Գործարանի դիրեկտոր Մ. Եսայանը հանգամանորեն պատմեց ընկ. Սարգսյանի աշխատանքի, նրա կողմից երիտասարդ բանվորական կադրերի պատրաստման մասին։ Մեծարման երեկոյին մասնակցում էին նաև հարևան գործարանների ու շինարարական կազմակերպությունների ներկայացուցիչներ, որոնք ողջունեցին և հուշանվերներ հանձնեցին հոբելյարին։

Ձեռնարկության կոլեկտիվի անդամների նըկատմամբ իսկական հոգատարություն է ցուցաբերում նաև ներտաշ հաստոցների գործարանի դիրեկտոր Ս. Ավանյանը, որը ոչ միայն հիմնարկի պետ է, այլև իսկական դաստիարակ ու խորհրդատու։ Որքա՜ն հաճելի էր, երբ գործարանի երիտասարդ լավագույն բանվորների ծնողները խրախուսանքի ու դրվատանքի ջերմ խոսքերով լի նամակներ ստացան գործարանի դիրեկտորի, պարտիական կազմակերպության քարտուղարի և գործարկոմի նախագահի ստորագրությամբ։ Այդ նամակներում տրված էր նըրանց աշխատանքի բնութագիրը և շնորհակալություն էր հայտնվում ծնողներին՝ այդպիսի քաղաքացիներ դաստիարակելու համար։

Բարոյական խրախուսանքների կիրառման գործում, սակայն, դեռևս կան թերություններ։ Շրջանի որոշ պարտիական ու հասարակական կազմակերպությունների գործունեությունից ցայսօր չի վերացել պաշտոնական, չոր, անհոգության հասնող ձևական մոտեցումը մարդու, աշխատավորի հանդեպ։ Մեր պարտիական և սովետական կազմակերպություններն այս ուղղությամբ մեծ անելիքներ ունեն։

ՀԿՊ Հրազդանի շրջկոմի գաղափարական հանձնաժողովի որոշմամբ միկրոշրջանում վերջերս կազմակերպված է ենթահանձնաժողով, որի խնդիրն է՝ կոորդինացնել միկրոշրջանի պարտիական կազմակերպությունների գործունեությունը՝ բնակչության կոմունիստական դաստիարակության ուղղությամբ։ Հունվարի 26-ին տեղի ունեցավ այդ հանձնաժողովի անդրանիկ նիստը, որտեղ որոշվեց միկրոշրջանում կազմակերպել ժողովրդական դրուժինա, ընկերական դատարան, լույս ընծայել երգիծական թերթ և մշակվեց 1965 թվականի փետրվար ամսվա աշխատանքի պլանը։ Այսպես, իր առաջին քայլերն սկսեց հասարակական հիմունքներով գործող մի նոր հանձնաժողով ևս։

Շրջանի սկզբնական պարտիական կազմակերպությունների տարած գաղափարական աշխատանքներում դեռևս կան շատ թերություններ և շատ տեղերում էլ ծավալված չէ հասարակական հիմունքներով աշխատանքը։ ՀԿՊ Հրազդանի շրջկոմը ջանում է կարճ ժամկետում վերացնել այդ թերությունները, ծավալել աշխատավորության դաստիարակության արդյունավետ գործունեություն, հաջողությամբ լուծելու համար տնտեսական ու կուլտուրական շինարարության այն մեծ խնդիրները, որ առաջադրել է ՍՄԿՊ XII համագումարը։

Մ. ՊՈՂՈՍՅԱՆ

ՀԿՊ Հրազդանի շրջկոմի քարտուղար

# ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

## ԲԱՑԱՍՈՒՄԻ ԲԱՑԱՍՄԱՆ ՕՐԵՆՔԸ ՆՅՈՒԹԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔՈՒՄ

Ա. ՄԻՆԱՍՅԱՆ

բնագիտությունը հսկայական առաջընթաց քայլ է կա-
Ժամանակակից բնագիտությունը բացահայտման ճանապարհին։ Մեծ են, հատտարել բնության գաղտնիքների բացահայտման ճանապարհին։ Մեծ են, հատկապես, նրա նվաճումները մատերիայի կառուցվածքի ուսումնասիրման աս-
կապես, նրա նվաճումները մատերիայի կառուցվածքի ուսումնասիրման ասպարեզում։ Այդ հարցերի պարզաբանմամբ զբաղվող ֆիզիկան և քիմիան իրենց բազմաթիվ ճյուղերով, բավականին փաստական նյութ են կուտակել մատերիայի տարբեր մասնիկների՝ «տարրական» մասնիկների, միջուկի, ատոմի, մոլեկուլի կառուցվածքի և հատկությունների վերաբերյալ։ Այդ մասնիկների ներքին օրինաչափությունների բացահայտումը, մի կողմից, հնարավորություն է տալիս ընդհանուր պատկերացում կազմելու մատերիայի որակապես տարբեր մասնիկների միջև եղած փոխադարձ կապի և պայմանավորվածության մասին, իսկ մյուս կողմից, հարուստ նյութ է մատակարարում մարքսիստական փիլիսոփայությանը՝ անօրգանական աշխարհի դիալեկտիկայի խոր ըմբռնման և նրա սպեցիֆիկ առանձնահատկությունների բացահայտման համար։

Մատերիալիստական դիալեկտիկայի օրենքները, լինելով ընդհանուր բնության դիալեկտիկայի օրենքները, փոխում են իրենց դրսևորման ձևերը ո՛չ միայն վանդակ տիեզերքի համար, փոխում են իրենց դրսևորման ձևերը ո՛չ միայն մեկ բնագավառից մյուսին անցնելիս, այլև միևնույն բնագավառի վերջինիս մեկ բնագավառից մյուսին անցնելիս, այլև միևնույն բնագավառի ներսում, նրա ստորին աստիճաններից բարձրին անցնելիս։ Այս հանգամանքը պարտավորեցնում է ուշադիր հետևել և մարքսիստական փիլիսոփայության դիրքերից ընդհանրացնել ժամանակակից բնագիտության և, հատկապես, նրա այնպիսի ճյուղերի նվաճումները, որոնք չտեսնված բուռն զարգացում են ապրում և այդ պատճառով էլ արժեքավոր նյութ են բերում բնության դիալեկտիկայի նոր կողմերի և մոմենտների բացահայտման համար։ Սույն հոդվածում մենք աշխատել ենք ֆիզիկայի և քիմիայի տարբեր բնագավառների կոնկրետ նյութի ընդհանրացման ճանապարհով վեր հանել բացասումի բացասման օրենքի դրսևորման մի քանի առանձնահատկություններ մատերիայի տարբեր տեսակի մասնիկներում։

***

Բնագիտության առաջավոր ճյուղերը՝ ֆիզիկան ու քիմիան, իրենց բազմաթիվ ենթաբաժիններով, խորացրել են մեր պատկերացումները մատերիայի

կառուցվածքի մասին։ Մարդկային միտքն անցում է կատարել միջուկից դեպի «տարրական» մասնիկները։ «Տարրական» մասնիկների ֆիզիկան մեր դարի ծնունդն է։ Այն զբաղվում է, ըստ էության, նյութի կառուցվածքի արմատական հարցերով։ Գիտության ներկա տվյալները խոսում են այն մասին, որ նյութի այժմ հայտնի բոլոր տեսակները, վերջին հաշվով՝ բաղկացած են «տարրական» մասնիկներից, որոնց կազմությունը դեռևս չի պարզաբանված։ Այդ մասնիկները հանդես են գալիս որպես յուրատեսակ «ատոմներ»։ Անցումը մոլեկուլից ատոմին, ատոմից միջուկին, միջուկից «տարրական» մասնիկին, հնարավորություն է տվել կլասիֆիկացիայի ենթարկելու ներկայումս հայտնի նյութական մասնիկների տարբեր տեսակներն՝ իրենց բնական կապի և փոխազդեցության մեջ։

Տարբեր տեսակի մասնիկների իմացությունը տեղի է ունեցել ավելի բարդ մասնիկներից ավելի պարզին անցնելու ճանապարհով, որի հիմքում ընկած է եղել մատերիայի կառուցվածքի ատոմիստական պատկերացումը։ Իրականում մատերիայի զարգացման պրոցեսը, նշված հատվածում, ընթանում է հակառակ ուղղությամբ՝ ավելի պարզ մասնիկներից բարդին անցնելու ճանապարհով։ Եվ, իրոք, «տարրական» մասնիկներից՝ պրոտոնից և նեյտրոնից գոյանում է ատոմի միջուկը, միջուկից և էլեկտրոնից՝ չեզոք ատոմը, իսկ չեզոք ատոմներից՝ մոլեկուլը։ Այդ մասնիկների միջև եղած օրինաչափ կապի բացահայտումը հնարավորություն է տալիս հետամուտ լինելու նրանց զարգացման պրոցեսին։ Սակայն միջուկի կազմության մեջ կան ոչ բոլոր «տարրական» մասնիկները, այլ նրանցից միայն երկուսը՝ պրոտոնը և նեյտրոնը։

Գիտության ժամանակակից տվյալների համաձայն ներկայումս հայտնի տարբեր տեսակի նյութական մասնիկների զարգացման «ստորին» աստիճանում կանգնած են «տարրական» մասնիկները, որոնց թիվն անցնում է երեսունից։ Այդ մասնիկների բնորոշ առանձնահատկություններից մեկը նրանց փոխարկումն է, որի ժամանակ մի տեսակի մասնիկները բացասվում են, իսկ նրանց փոխարեն առաջ են գալիս նոր մասնիկներ, որոնք մինչ այդ պատրաստի ձևով գոյություն չունեին բացասվող մասնիկների մեջ։ Այսպես, օրինակ, էլեկտրոնը և պոզիտրոնը ընդհարվելով իրար հետ՝ վերածվում են երկու-երեք լույսային քվանտի, կամ ֆոտոնի։ Լույսային քվանտները պատրաստի ձևով գոյություն չունեն էլեկտրոնների և պոզիտրոնների մեջ, նրանք ծագում են միայն վերջիններիս փոխադարձ ոչնչացման, բացասման ժամանակ։ Երբ լույսի քվանտները ձեռք են բերում մեկ միլիոն և ավելի էլեկտրավոլտ էներգիա, իրենց հերթին, ատոմի էլեկտրամագնիսական դաշտում վերածվում են էլեկտրոնների և պոզիտրոնների։ Ինչպես էլեկտրոնի և պոզիտրոնի մեջ պատրաստի ֆոտոններ չկան, այնպես էլ վերջիններիս մեջ պատրաստի պոզիտրոններ և էլեկտրոններ չկան։ «Տարրական» մասնիկներին հատուկ այս կարգի փոխբացասումների ժամանակ բացասվողի և բացասողի միջև եղած կապը դրսևորվում է այն ընդհանուր հատկությունների պահպանման ձևով, որոնք հատուկ են այդ բոլոր մասնիկներին։ Այդպիսի հատկություններից են «տարրական» մասնիկների երկակի՝ ալիքային և մասնիկային բնույթը, նրանց մատերիականությունը, փոխադարձ վերածման ունակությունը և այլն։ Սակայն այդ ընդհանուր հատկությունների պահպանությունը չի բացառում փոխադարձ վերածման պրոցեսում նրանց այլ բնութագրերի՝ լիցքի, մաս-



սայի, սպինի և ուրիշ հատկությունների փոփոխությունները, որոնցով և պայմանավորվում են վերջիններիս որակական տարբերությունները։



«Տարրական» մասնիկները կարող են բացասվել ո՛չ միայն փոխարկման ճանապարհով, այլև իրար հետ միանալով սկիզբ դնել մատերիայի մեկ այլ, նրանցից որակապես տարբեր աստիճանի՝ միջուկին։ Միջուկի որակական փոփոխությունը հիմնականում պայմանավորված է նրա մեջ պարունակվող պրոտոնների քանակական փոփոխությամբ։ Սակայն դրանից չի կարելի հանգել սխալ եզրակացության, թե իբր միջուկի կազմության մեջ մտնող նեյտրոնները ոչ մի դեր չեն խաղում վերջինիս «կյանքում»։ Հետագայում ցույց կտրվի, որ միջուկի կազմության մեջ մտնող պրոտոնների և նեյտրոնների տարբեր հարաբերություններ առաջ են բերում տարբեր կայունությամբ միջուկներ։ Անցումը քիմիական մեկ էլեմենտի միջուկից մյուսին կարելի է իրականացնել երկու եղանակով՝ միջուկում եղած պրոտոնների թիվը մեկով ավելացնելու կամ պակասեցնելու ճանապարհով։ Առաջին դեպքում բացասման հետևանքով առաջացած միջուկն ավելի բարդ է, քան բացասվողը, դրա համար էլ նա վերջինիս նկատմամբ կանգնում է մի խումբ աջ էլեմենտների պարբերական սիստեմում, իսկ երկրորդ դեպքում հակառակը՝ բացասող էլեմենտի միջուկը ավելի պարզ է, քան բացասվողը, դրա համար էլ նա պարբերական սիստեմում տեղափոխվում է վերջինիս նկատմամբ մի խումբ ձախ։ Միջուկների վերածման տարբեր եղանակները պայմանավորված են միջուկային մասնիկների ավելցուկով։ Այսպես, օրինակ, նեյտրոնի ավելցուկ ունեցող միջուկները վերածվում են մեծ մասամբ էլեկտրոն անջատելով, իսկ պրոտոնի ավելցուկ ունեցողները՝ պոզիտրոնի անջատումով։ Այժմ որակապես տարբեր 104 հայտնի միջուկներն իրենցից ներկայացնում են անօրգանական աշխարհի զարգացման մի յուրատեսակ շղթա, որի սկզբում տեղավորված է ջրածինը, իսկ վերջում՝ 104-րդ էլեմենտը։ Տեսականորեն այդ բոլոր էլեմենտների միջուկները կարելի է ստանալ ջրածնից, հաջորդաբար մեկ պրոտոն և համապատասխան թվով նեյտրոններ ավելացնելու ճանապարհով։ Այստեղից պարզ է դառնում, որ քիմիական էլեմենտների միջուկների առաջացման պրոցեսը կարելի է դիտել որպես հաջորդական բացասման մի յուրատեսակ շղթա։

Բացասման պրոցեսի սպեցիֆիկ առանձնահատկությունը միջուկում, ի տարբերություն «տարրական» մասնիկների, կայանում է նրանում, որ նախորդ միջուկում եղած պրոտոնների ու նեյտրոնների քանակը և դասավորությունը պահպանվում ու փոխանցվում է հաջորդին։ Բացասող միջուկում կատարելագործվում է բացասվողը՝ մեկ պրոտոն և համապատասխան թվով նեյտրոններ ավելացնելու ճանապարհով։ Այլ կերպ ասած, ամեն մի միջուկային անցում ուղեկցվում է նախորդի լրիվ պահպանմամբ՝ հաջորդում։

Թեև մինչև այսօր էլ մարդկային միտքը չի կարողացել լրիվ բացահայտել միջուկի կառուցվածքի գաղտնիքը, սակայն կուտակված հսկայական փաստական նյութերը հիմք են տալիս հաստատապես պնդելու, որ միջուկի կառուցվածքն ունի իր որոշակի օրինաչափությունները, որոնք դրսևորվում են միջուկային պարբերականության ձևով։ Միջուկային պարբերականությունը համեմատաբար թույլ է արտահայտված, քան ատոմայինը, սակայն կասկածից

վեր է, որ միջուկի առաջացման և տրոհման էներգիան, իզոտոպների տարածվածությունը երկրի կեղևում, միջուկի մագնիսական և սպինային մոմենտներն ու այլ հատկություններ ունեն որոշակի արտահայտված պարբերական բնույթ։

Միջուկի կառուցվածքի վերաբերյալ առաջադրվել են տարբեր մոդելներ՝ դրանցից նշենք կաթիլային և թաղանթային մոդելները։ Թեև միջուկի ժամանակակից պատկերացման հիմքում դրվում է թաղանթային մոդելը, սակայն այդ չի խանգարում միջուկային որոշ երևույթներ բացատրելիս օգտագործել մյուս մոդելները։

Միջուկի կառուցվածքի վերաբերյալ եղած թաղանթային մոդելը շատ բանով հիշեցնում է ատոմի էլեկտրոնային թաղանթի մոդելը։ Այդ մոդելի դեպքում միջուկային մասնիկների՝ պրոտոնների և նեյտրոնների դասավորությունը միջուկում փորձում են նմանեցնել ատոմի էլեկտրոնային թաղանթում էլեկտրոնների դասավորությանը՝ ըստ որոշ էներգետիկ մակարդակների։ Այդ էներգետիկ մակարդակների լրացումը միջուկային մասնիկներով՝ պրոտոններով ու նեյտրոններով, հիշեցնում է ատոմի էլեկտրոնային թաղանթի էներգետիկ մակարդակների լրացումը ատոմային էլեկտրոններով։ Դրա համար էլ կարելի է սպասել, որ պրոտոններով և նեյտրոններով միջուկի թաղանթի էներգետիկ մակարդակների աստիճանական լրացումը պետք է հանգեցնի միջուկի հատկությունների պարբերական կրկնության, կամ միջուկային պարբերականության։ Միջուկային պարբերականության փորձնական բացահայտումը լուրջ փաստարկ է միջուկի թաղանթային մոդելի օգտին, թեև այդ պարբերականության ֆիզիկական իմաստը մինչև օրս էլ մնում է չպարզաբանված։ Միջուկային պարբերականությունն, ըստ երևույթին, որոշակի ազդեցություն ունի միջուկի համարյա բոլոր հատկությունների վրա։

Միջուկի թաղանթային մոդելի և ատոմի էլեկտրոնային թաղանթի մոդելի միջև ենթադրվող արտաքին նմանությունը չի կարող ժխտել միջուկի կառուցվածքի բարդությունը էլեկտրոնային թաղանթի նկատմամբ։ Դա պայմանավորված է, մի կողմից, միջուկի համեմատաբար փոքր ծավալով և մեծ խտությամբ, իսկ մյուս կողմից՝ նրա թաղանթի էներգետիկ շերտերի կառուցմանը մասնակցող երկու տարբեր տեսակի մասնիկների՝ պրոտոնների և նեյտրոնների փոխազդեցությամբ, միջուկային ուժերի սպեցիֆիկ բնույթով։ Միջուկային պարբերականությունը հանդիսանում է բացասումի բացասման օրենքի դրսևորման կոնկրետ եղանակը մատերիայի նշված դիսկրետ ձևում։ Ամենայն հավանականությամբ, միջուկային պարբերականության էությունը կայանում է նրանում, որ միջուկի, պրոտոնների և նեյտրոնների շարունակվող ավելացումը հանգեցնում է նրան, որ միջուկի կառուցվածքի հաջորդական զարգացումն ընթանում է պարբերաբար, վերադարձ կատարելով դեպի նման պրոտոնա-նեյտրոնային կառուցումները։ Այդ կառուցումների պարբերական կրկնությունն էլ հանգեցնում է միջուկային պարբերականությանը։ Միջուկային պարբերականության ֆիզիկական իմաստի բացահայտումը հնարավորություն կտա ըմբռնելու ո՛չ միայն բացասման կոնկրետ եղանակները տվյալ բնագավառում, այլև բացատրելու, թե միջուկի զարգացման բարձր աստիճաններում, նոր հիմքի վրա ինչպես են կրկնվում նրա ստորին աստիճանի առանձին կողմերը, գծերը։

Միջուկի բնագավառում բացասումի բացասման օրենքի դրսևորման մյուս



եղանակը կայանում է նրանում, որ թեթև և անկայուն միջուկները բացասվում են միջին և կայուն միջուկների կողմից, իսկ վերջիններս իրենց հերթին բացասվում են ծանր և անկայուն միջուկների կողմից, միայն այն տարբերությամբ, որ թեթև միջուկները տենդենց ունեն իրար հետ միանալու և առաջացնելու համեմատաբար ծանր միջուկներ, իսկ ծանր միջուկները՝ բաժանվելու և առաջացնելու միջին միջուկներ։

Անցումը «տարրական» մասնիկներից՝ պրոտոնից և նեյտրոնից միջուկին, նշանակում է մատերիայի նախորդ աստիճանի բացասում հաջորդի կողմից։ Այս բացասման շնորհիվ ատոմի միջուկի կազմության մեջ մտնող պրոտոնները և նեյտրոնները չեն ոչնչացվում, այլ հանդես են գալիս որպես միջուկի բաղադրիչ մասեր, որոնց առկայությունը հիմք է հանդիսանում մատերիայի տվյալ տեսակի հետագա բարդեցման համար։ Միջուկը, որպես պրոտոնի և նեյտրոնի բացասում, որակապես տարբերվում է դրանցից։ Թեև պրոտոններն ու նեյտրոնները շարունակում են պաշտպանել իրենց գոյությունը ատոմի միջուկում, սակայն շնորհիվ միջուկի կառուցվածքի ներքին օրինաչափությունների, նրանք միջուկում ձեռք են բերում նոր հատկություններ, տարբերվում են ազատ պրոտոններից ու նեյտրոններից։ Այսպես, օրինակ, ազատ նեյտրոնները ռադիոակտիվ են, նրանք ենթարկվում են ինքնաբերաբար տրոհման այն դեպքում, երբ միջուկի նեյտրոնները կայուն են։ Այդ հանգամանքը խոսում է այն մասին, որ ատոմի և նրա բաղադրիչ մասերի միջև գոյություն ունի դիալեկտիկական փոխազդեցություն, որը պրոտոններից և նեյտրոններից միջուկին անցնելիս այդ մասնիկները միաժամանակ և՛ պահպանվում են, և՛ բացասվում։ Եվ, իրոք, եթե տարրական մասնիկների մի տեսակից մյուսին անցնելիս տեղի է ունենում առաջինի անհետացում, և երկրորդի առաջացում, ապա միջուկի գոյացման ժամանակ նրա բաղադրիչ մասերը՝ պրոտոններն ու նեյտրոնները, չեն անհետանում, այլ միջուկի ներսում անցնում են ազատ վիճակից հատուկ ձևով իրար հետ կապված վիճակի։ Այլ կերպ ասած, միջուկի գոյացման ժամանակ պրոտոնները և նեյտրոնները բացասվում են որպես ազատ մասնիկներ, բայց շարունակում են գոյություն ունենալ նոր պայմաններում, որտեղ նրանք ո՛չ միայն փոխադարձաբար կապված են իրար հետ, այլ ենթարկվում են միջուկի կառուցվածքին հատուկ սկզբունքներին։ Այստեղից որոշակի երևում է, որ պրոտոնների և նեյտրոնների բացասումը միջուկի կողմից չի նշանակում վերջինների ոչնչացում, այլ նրանց պահպանումը նոր պայմաններում, նոր բազայի վրա, որը հանգեցնում է նոր որակի առաջացման, որտեղ պահպանվում են այդ մասնիկների էներգիան, լիցքը, սպինը և այլ հատկություններ։

***

Մատերիայի հետագա բարդացման պրոցեսը հանգեցնում է միջուկի բացասման, որի շնորհիվ գոյանում է մատերիայի որակապես նոր մասնիկ՝ ատոմը։ Այժմ հայտնի բոլոր քիմիական էլեմենտների հիմքում ընկած են 104 որակապես տարբեր միջուկներ։ Ինչպես այդ միջուկները, այնպես էլ նրանցից առաջացած էլեմենտներն օրգանապես կապված են իրար հետ, պայմանավորում են միմյանց, ընդ որում անցումը քիմիական մի էլեմենտից մյուսին իրականացվում է միջուկի դրական լիցքերի և էլեկտրոնային թաղանթի էլեկտրոնների թվի մեկ միավոր փոփոխությամբ։ Էլեկտրոնային թաղանթի կա-

ռուցվածքը պայմանավորում է ատոմի հատկությունները, ինչպես նաև ատո-
մային պարբերականությունը: Ատոմային պարբերականությունը բացասումի
բացասման օրենքի դրսևորման եղանակներից մեկն է մատերիայի զարգաց-
ման տվյալ աստիճանի համար: Քիմիական էլեմենտների պարբերական սիս-
տեմը հնարավորություն է տալիս խոր թափանցելու զարգացման էության
մեջ, հասկանալու բացասումի բացասման օրենքի իսկական բնույթը տվյալ
բնագավառում: Պարբերական սիստեմն իրենից ներկայացնում է տարբեր
քիմիական էլեմենտների զարգացման մեկ միասնական շղթա: Այդ շղթայում
իրականացվող բոլոր անցումներն իրենցից ներկայացնում են բացասման պրո-
ցեսներ, որոնք բնութագրվում են ո՛չ միայն ընդհանուր, այլև սպեցիֆիկ հատ-
կություններով: Պարբերական սիստեմում հանդիպող բացասման կոնկրետ
եղանակների ուսումնասիրությունը փայլուն կերպով հաստատում է էնգելսի
միտքն այն մասին, որ բացասման եղանակը որոշվում է, նախ՝ տվյալ պրո-
ցեսի ընդհանուր բնույթով, երկրորդ՝ այդ պրոցեսի հատուկ բնույթով: Թեև
բոլոր պարբերություններում էլ անցումը նախորդ էլեմենտից հաջորդին իրա-
կանացվում է միջուկին մեկ դրական լիցք և համապատասխանաբար էլեկ-
տրոնային թաղանթին մեկ էլեկտրոն ավելացնելու ճանապարհով, սակայն
այդ ընդհանուր բացասման պրոցեսը տարբեր ձևերով է դրսևորվում տարբեր
կոնկրետ պայմաններում: Ատոմի էլեկտրոնային շերտերի կառուցվածքի ու-
սումնասիրությունն առանձին պարբերություններում հնարավորություն է տա-
լիս վեր հանելու բացասման եղանակն ամեն մի կոնկրետ դեպքի համար:
Մինչդեռ միջուկի կառուցվածքին անծանոթ լինելը հնարավորություն չի ըն-
ձեռում բացահայտելու միևնույն քիմիական էլեմենտի սահմաններում կա-
տարվող համեմատաբար փոքր բացասումների՝ մի իզոտոպից մյուսին անց-
նելու սպեցիֆիկ առանձնահատկությունները: Այդ բացասումներն իրենց իս-
կական բացատրությունը կստանան միջուկի կառուցվածքի գաղտնիքի մեջ
թափանցելուց հետո:

Ատոմի էլեկտրոնային թաղանթի կառուցվածքի իմացության շնորհիվ բա-
ցահայտվել է պարբերականության օրենքի ֆիզիկական իմաստը, հնարավոր է
դարձել պարզաբանել ատոմի էլեկտրոնային շերտերի կառուցման հաջորդա-
կանությունը և լրացման կարգը: Դա միաժամանակ հանգեցրել է բացասման
եղանակի իմացության՝ յուրաքանչյուր կոնկրետ դեպքում:

Ըստ էլեկտրոնային թաղանթում ավելացվող հերթական էլեկտրոնի գրա-
ված տեղի, ատոմի կառուցվածքում կարելի է տարբերել բացասման երեք հիմ-
նական եղանակ. առաջին՝ ավելացվող հերթական էլեկտրոնը տեղավորվում է
արտաքինից հաշված երրորդ էլեկտրոնային շերտում, երկրորդ՝ երկրորդ էլեկ-
տրոնային շերտում, և երրորդ՝ արտաքին էլեկտրոնային շերտում: Վերը նըշ-
ված բոլոր դեպքերում միջուկին ավելացվում է մեկ պրոտոն, սակայն ավելաց-
վող պրոտոնի տեղը մինչև այժմ էլ մնում է չբացահայտված:

Լանտանոիդների ընտանիքում բացասումի բացասումը կապված է էլեկ-
տրոնների քանակական կուտակման հետ՝ արտաքինից հաշված երրորդ էլեկ-
տրոնային շերտում: Բացասման եղանակը տվյալ դեպքում որոշում է նաև
բացասման խորությունը նշված ընտանիքում. էլեկտրոնների քանակական կու-
տակումը, արտաքինից հաշված երրորդ էլեկտրոնային շերտում, ինչպես ցույց
է տալիս պրակտիկան, համեմատաբար թույլ ազդեցություն է ունենում էլե-
մենտների ֆիզիկա-քիմիական հատկությունների վրա, դրա համար էլ բոլոր



լանտանոիդները բնութագրվում են շատ մոտ քիմիական հատկություններով,
կազմում են մեկ ընտանիք: Մեկ լանտանոիդից մյուսին անցնելիս, պահպան-
վում է էլեկտրոնային շերտերի ընդհանուր թիվը, միաժամանակ անփոփոխ է
մնում էլեկտրոնների քանակը բոլոր էլեկտրոնային շերտերում, բացառու-
թյամբ արտաքինից հաշված երրորդ շերտի: Ամեն մի բացասում, տվյալ կոնկ-
րետ դեպքում, պահպանում է այդ ընդհանուր կառուցվածքը, միաժամանակ
նրա մեջ մտցնելով համապատասխան փոփոխություններ, կատարելագործե-
լով այն, արտաքինից հաշված երրորդ էլեկտրոնային շերտին մեկ էլեկտրոն,
իսկ միջուկին մեկ պրոտոն ավելացնելու ճանապարհով: Բացասման նման
եղանակի մենք հանդիպում ենք նաև պարբերական սիստեմի այլ էլեմենտնե-
րի՝ ակտինոիդների մոտ:

Ակտինոիդների մոտ էլ լրացվում է նույնպես արտաքինից հաշված եր-
րորդ էլեկտրոնային շերտը: Դրա համար էլ ակտինոիդները համարվում են
լանտանոիդների անալոգները: Այդ երկու ընտանիքի էլեմենտներն էլ ունեն
նման էլեկտրոնային կառուցվածք: Սակայն ատոմի նման էլեկտրոնային կա-
ռուցումները միշտ չէ, որ միատեսակ ազդեցություն են ունենում նրա ֆիզիկա-
քիմիական հատկությունների վրա: Թեև լանտանոիդների և ակտինոիդների
ընտանիքների մեջ մտնող էլեմենտները ծագում են մեկը մյուսից՝ բացասման
միևնույն եղանակով, սակայն լանտանոիդներն այնքան մոտ են իրենց հատ-
կություններով, որ կազմում են մեկ ընտանիք և զբաղեցնում մեկ տեղ պար-
բերական սիստեմում: Ինչ վերաբերում է ակտինոիդներին, ապա վերջիններս
իրենց ֆիզիկա-քիմիական հատկություններով տարբերվում են ինչպես մեկը
մյուսից, այնպես էլ պարբերական սիստեմի երրորդ խմբի էլեմենտներից, դրա
համար էլ չի կարելի ակտինոիդները տեղավորել երրորդ խմբի մեկ տեղում:
Դա բացատրվում է ակտինոիդների և լանտանոիդների էլեկտրոնային շեր-
տերի տարբերությամբ: Ակտինոիդների մոտ գոյություն ունի յոթ, իսկ լան-
տանոիդների մոտ վեց էլեկտրոնային շերտ: Կառուցվող էլեկտրոնային շերտը
ակտինոիդների մոտ ավելի հեռու է միջուկից, քան լանտանոիդների մոտ:
Ըստ երևույթին, որքան կառուցվող շերտը հեռու է ընկած միջուկից, այնքան
ավելի ուժեղ է ազդում ատոմի հատկությունների վրա: Թեև լանտանոիդների
և ակտինոիդների մոտ տեղի է ունենում արտաքինից հաշված երրորդ էլեկ-
տրոնային շերտի կառուցումը, բացասման եղանակը միևնույնն է, բայց ակ-
տինոիդների մոտ այդ շերտն ընկած է միջուկից ավելի հեռու, քան լանտա-
նոիդների մոտ: Դրա շնորհիվ էլ բացասման պրոցեսն ակտինոիդների մոտ
ավելի խորն է գնում: Այս երկու ընտանիքների համեմատությունից որոշա-
կիորեն երևում է, որ բացասման միևնույն եղանակը տարբեր կոնկրետ պայ-
մաններում տալիս է տարբեր արդյունք և հաստատում է մատերիալիստա-
կան դիալեկտիկայի այն թեզը, որի համաձայն բնության մեջ գոյություն չունի
բացարձակ նույնություն, այլ, որպես կանոն, ամեն մի նույնություն պարու-
նակում է տարբերություն և հակառակը: Նշված մեթոդոլոգիական սկզբունքը
կարևոր նշանակություն ունի իրերի և երևույթների իմացության համար, որոնք
իրականում հանդիսանում են նույնության և տարբերության դիալեկտիկական
միասնություն:

Բացասումի բացասման պրոցեսն ավելի խորն է գնում, երբ անցումը մի
քիմիական էլեմենտից մյուսին իրականացվում է միջուկին մեկ դրական լիցք
և համապատասխանաբար արտաքինից հաշված երկրորդ էլեկտրոնային շեր-

տին մեկ էլեկտրոն ավելացնելու ճանապարհով։ Այս դեպքում ամեն մի բացասման ժամանակ պահպանվում են էլեկտրոնային շերտերի ընդհանուր թիվը և էլեկտրոնային շերտերում եղած էլեկտրոնների քանակը. բացառությամբ արտաքինից հաշված երկրորդ շերտից, բացասման պրոցեսն իրականացվում է արտաքինից հաշված երկրորդ էլեկտրոնային շերտին մեկ էլեկտրոն և միջուկին մեկ պրոտոն ավելացնելու ճանապարհով։ Բացասման նշված եղանակի դեպքում գործ ունենք ավելի խոր փոփոխությունների հետ, քան նախորդ դեպքերում։ Նման ճանապարհով ստացված քիմիական էլեմենտներն իրենց հատկություններով որոշակիորեն տարբերվում են մեկը մյուսից, Մենդելեևի պարբերական սիստեմում գրավում են տարբեր տեղեր։

Հաջորդ ավելի խոր բացասումը կապված է էլեկտրոնների թվի քանակական փոփոխությունների հետ արտաքին էլեկտրոնային շերտում։ Այս դեպքում էլեկտրոնային թաղանթի կառուցվածքը բոլոր էլեկտրոնային շերտերում մնում է անփոփոխ, բացառությամբ արտաքինից։ Այստեղ իրականացվող բացասման պրոցեսի ժամանակ այդ ընդհանուր կառուցվածքը և՛ պահպանվում է, և՛ կատարելագործվում։ Այդ կատարելագործումը կապված է արտաքին էլեկտրոնային շերտի աստիճանական կառուցման հետ։ Այսպես, օրինակ, երկրորդ պարբերությունում, սկսած լիթիումից և վերջացրած ֆտորով, բացասման պրոցեսներն ունեն համարյա միևնույն խորությունը։ Այդ արտահայտվում է տվյալ պարբերության հարևան էլեմենտների ոչ սուր տարբերությունների մեջ։ Այդ էլեմենտները կարող են ստացվել մեկը մյուսից միջուկին մեկ դրական լիցք և համապատասխանաբար էլեկտրոնային շերտին մեկ էլեկտրոն ավելացնելու ճանապարհով։ Սակայն բացասման խորությունն արմատապես փոխվում է, երբ ավելացվում է հերթական ութերորդ էլեկտրոնը։ Այդ էլեկտրոնով ավարտվում է արտաքին էլեկտրոնային շերտի կառուցումը և իրականացվում է անցում քիմիապես ակտիվ էլեմենտից՝ ֆտորից, քիմիական անգործունյա էլեմենտին՝ նեոնին։ Քանի որ արդեն ավարտված է նեոն էլեմենտի արտաքին էլեկտրոնային շերտի կառուցումը, դրա համար էլ ավելացող հերթական էլեկտրոնը չի կարող տեղավորվել այդ շերտում, այլ պետք է առաջացնի նոր էլեկտրոնային շերտ։ Հենց այդպես էլ իրականացվում է անցումը նեոնից նատրիումին։ Եթե ֆտորից նեոնին անցնելիս տեղի է ունենում թռիչք քիմիապես ակտիվ էլեմենտից դեպի անգործունյա էլեմենտը, ապա նեոնից նատրիումին անցնելիս տեղի է ունենում հակառակը։ Այս կարգի բացասումներն ատոմի կառուցվածքում տեղի ունեցող ամենախոր բացասումներն են։ Նեոնից նատրիումին անցնելիս, ավարտված արտաքին էլեկտրոնային շերտը բացասվում է նոր էլեկտրոնային շերտով, սակայն այդ բացասման ժամանակ գոյություն ունեցող էլեկտրոնային շերտերը ո՛չ միայն մի կողմ չեն նետվում, այլ ամբողջովին պահպանվում և անցնում են բացասողի մեջ, որտեղ ստեղծվում է նոր էլեկտրոնային շերտ։ Այդ շերտում էլ տեղավորվում է ավելացվող հերթական էլեկտրոնը։ Իսկ դա նշանակում է ատոմի էլեկտրոնային թաղանթի հետագա կատարելագործում վերընթաց գծով։

Պարբերական սիստեմում բացասումի բացասման օրենքի գործողությունն ուսումնասիրելիս պարզվում է, որ հաջորդ պարբերության էլեմենտները կրկնում են նախորդի հատկությունները, սակայն նոր հիմքի վրա։ Անցումը նախորդ պարբերությունից հաջորդին ուղեկցվում է ատոմի կառուցվածքի հետագա բարդացմամբ, որը կյանքի է կոչում յուրատեսակ որակական փոփոխու-



թյուններ։ Եվ, իրոք, ամեն մի հաջորդ պարբերության գլխավոր ենթախմբի էլեմենտները, ամբողջությամբ վերցրած, ունեն ավելի արտահայտված մետաղական հատկություններ, քան նախորդինը։ Այդ ապացուցում է, որ էլեմենտների զարգացման բարձր աստիճաններում կրկնվում են ցածրի հատկությունները, միայն նոր հիմքի վրա, որը, տվյալ դեպքում, արտահայտվում է մետաղական հատկությունների օրինաչափ ուժեղացմամբ։

Բացասման պրոցեսները տարբեր ձևերով են դրսևորվում պարբերական սիստեմի խմբերում և պարբերություններում, թեև երկու դեպքում էլ նրանք կապված են միջուկին մեկ պրոտոն, իսկ էլեկտրոնային թաղանթին մեկ էլեկտրոն ավելացնելու հետ։ Եթե բացասումի բացասման պրոցեսը պարբերություններում կապված է էլեկտրոնների քանակի փոփոխման հետ միևնույն էլեկտրոնային շերտում, ապա խմբում այն կապված է էլեկտրոնային շերտի քանակական փոփոխության հետ։ Եվ, իրոք, միևնույն խմբի մեջ մտնող էլեմենտները տարբերվում են մեկը մյուսից իրենց էլեկտրոնային շերտերի թվով։ Սակայն այդ տարբերությունը չի բացասում, այլ ենթադրում է տվյալ խմբի էլեմենտների արտաքին էլեկտրոնային շերտերի նմանությունը։ Այդ նմանությունն էլ պայմանավորում է միևնույն խմբի էլեմենտների ֆիզիկա-քիմիական հատկությունների ընդհանրությունը։ Էլեմենտների հատկությունների կրկնությունը խմբի ներսում կատարվում է ոչ թե անփոփոխ ձևով, այլ որոշակի օրինաչափությամբ։ Այնպես, որ խմբի առաջին անդամից վերջինին անցնելիս խումբը բնութագրող որոշ հատկություններ օրինաչափորեն ուժեղանում են, իսկ մյուսները՝ թուլանում։ Հատկությունների նման փոփոխությունը որոշվում է գլխավորապես էլեմենտների շառավղի մեծացմամբ, որն, իր հերթին, կապված է էլեկտրոնային շերտերի թվի աճի և ատոմի կառուցվածքի օրինաչափ կատարելագործման հետ։

Պարբերական սիստեմում բացասումի բացասման օրենքի դրսևորման կոնկրետ ձևերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ քիմիական էլեմենտների փոփոխման պրոցեսը կատարվում է վերընթաց գծով՝ պարզից բարդին անցնելու ճանապարհով, որ ատոմի կառուցվածքում կատարելագործման և զարգացման պրոցեսը տեղի է ունենում պարբերաբար վերադարձ կատարելով դեպի նման էլեկտրոնային կառուցումները, միայն նոր հիմքի վրա, իսկ դա սպիրալաձև զարգացման կլասիկ օրինակ է անօրգանական աշխարհի նյութական մասնիկներից մեկի՝ ատոմի կառուցվածքի փոփոխման և կատարելագործման բնագավառում։ Այդ սպիրալաձև զարգացումը հանգեցնում է ո՛չ միայն քիմիական էլեմենտների հատկությունների պարբերական կրկնման, այլև նրանց օրինաչափ փոփոխմանը այս կամ այն որոշակի ուղղությամբ։ Էլեմենտների հատկությունների հենց այդ պարբերական կրկնությունն ու օրինաչափ փոփոխությունն էլ հանդիսանում է բացասումի բացասման օրենքի գործողության կոնկրետ եղանակը մատերիայի տվյալ դիսկրետ ձևում։

Մենդելեևի պարբերական սիստեմի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ քիմիական էլեմենտների կատարելագործումն ու զարգացումն ունեն վերընթաց սպիրալաձև բնույթ, որ ատոմի կառուցվածքի օրինաչափ զարգացումը հանգեցնում է նման էլեկտրոնային կառուցումների պարբերական կրկնման, կամ, այլ կերպ ասած՝ տեղի է ունենում ատոմային ստրուկտուրայի ստորին ստադիաների արտաքին էլեկտրոնային շերտերի կառուցումների կրկնություն

բարձր ստադիաներում, որը և հիշեցնում է վերադարձ իբրև թե հինը, միայն նոր բազայի վրա, բացասման բացասում։ Պարբերական սիստեմի էլեմենտների տարբեր խմբերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ստորին աստիճանների առանձին կողմերի և մոմենտների կրկնությունը բարձր աստիճաններում չի ճանաչում և չի էլ կարող ճանաչել ինչ-որ մեկընդմիշտ տրված անփոփոխ սխեմա, ինչպես հեգելյան տրիադան։ Իրական աշխարհի զարգացման հարուստ բազմազանությունը Հեգելը փորձում է տեղավորել իր մտացածին եռաստիճան զարգացման սխեմայի՝ տրիադայի մեջ, որի համաձայն զարգացման երրորդ աստիճանում կրկնվում են առաջին աստիճանի որոշ կողմեր, գծեր՝ նոր հիմքի վրա։ Իրական աշխարհի փոփոխման և զարգացման դիալեկտիկան գործնականում հերքում է մտացածին ամեն մի սխեմա զարգացման վերաբերյալ, այդ թվում նաև տրիադան։ Կասկածից վեր է, որ զարգացման բարձր աստիճաններում կրկնվում են զարգացման ստորին աստիճանների առանձին կողմեր, գծեր, սակայն այդ կրկնման հաջորդականությունը, բացասումի բացասման օրենքի գործողության մեխանիզմը կապված է ուսումնասիրվող բնագավառի և նրա զարգացման սպեցիֆիկ առանձնահատկությունների հետ։ Դրա փայլուն հաստատումն է էլեմենտների պարբերական սիստեմը։ Երբ ուշադիր ուսումնասիրում ենք պարբերական սիստեմի խմբերը, նախ և առաջ պարզվում է, որ դրանց մեծ մասը կազմված է երկու ենթախմբից՝ գլխավոր և ոչ գլխավոր, կամ երկրորդական։ Թեև այդ երկու ենթախմբի էլեմենտներն էլ բնութագրվում են մի շարք ընդհանուր հատկություններով՝ վալենտականությամբ, միացությունների տիպով և այլն, որոնք հիմք են տալիս վերջիններիս միացնել մի խմբում, բայց իրենց հատկություններով իրար ավելի մոտ են կանգնած միևնույն ենթախմբի էլեմենտները։ Ինչպես միևնույն խմբի էլեմենտների մոտ, որտեղ չկա ենթախմբերի բաժանում (օրինակ, զրոյական խմբում), այնպես էլ երկու ենթախմբերից կազմված խմբերում, վերից վար անցնելիս նկատվում է խումբը բնութագրող հատկությունների օրինաչափ փոփոխություն։ Այդ խմբերում գտնվող էլեմենտներն, ըստ էության, հանդես են գալիս որպես մատերիայի տվյալ տեսակի զարգացման միասնական սպիրալի յուրատեսակ «հանգույցներ»։ Հենց այդ հանգույցներն էլ, որոշ իմաստով, կարելի է անվանել բացասումի բացասման հանգույցներ, կամ սպիրալի այնպիսի կետեր, որտեղ վերադարձ է կատարվում դեպի հինը, տեղի է ունենում բացասումի բացասում։ Քիմիական էլեմենտների հատկությունների կրկնությունը կամ բացասումի բացասումը պարբերական սիստեմի առաջին խմբի էլեմենտների գլխավոր ենթախմբում տեղի է ունենում մեկ, երեք, տասնմեկ, տասնինը, երեսունյոթ, հիսունհինգ և ութսունյոթ տեղերում կամ աստիճաններում, իսկ զրոյական խմբում երկու, տասը, տասնութ, երեսունվեց, հիսունչորս և ութսունվեց տեղերում։ Այլ հաջորդականությամբ են կատարվում կրկնությունները պարբերական սիստեմի մյուս խմբերում։ Բացասումի բացասման պրոցեսը խմբերում բարդանում է նրանով, որ ամեն մի հաջորդ էլեմենտ կրկնում է ոչ թե իրեն անմիջապես նախորդող էլեմենտի, այլ իրեն նախորդող բոլոր էլեմենտների հատկությունները, դրա համար էլ բացասումի բացասման ընդհանուր սպիրալում նա հանդես է գալիս որպես տվյալ խմբի իրեն նախորդող բոլոր էլեմենտների անալոգ։ Քիմիական էլեմենտների հատկությունների ընդհանուր կրկնությունը տեղի է ունենում 3, 8, 18, 32 և այլ աստիճաններում։ Պարբերական սիստեմում հանդիպող նշված կրկնու-



թյունները խոսում են այն մասին, որ բացասումի բացասման օրենքի դրսևորման ձևը և բացասումի բացասման ինտերվալը փոփոխվում են ո՛չ միայն մի բնագավառից մյուսին անցնելիս, այլև միևնույն բնագավառում, զարգացման շղթայի ստորին հատվածներից բարձրին անցնելիս։



«Տարրական» մասնիկների, միջուկի և ատոմի կառուցվածքների ասպարեզներում գիտության ձեռք բերած նվաճումների ոչ լրիվ ընդհանրացումը ցույց է տալիս, որ բացասումի բացասման օրենքը գործում է նշված բոլոր բնագավառներում։ Քանի որ «տարրական» մասնիկների կառուցվածքը մինչև այժմ չի պարզաբանված, դրա համար էլ այս բնագավառում կարելի է խոսել բացասումի բացասման օրենքի մասին միայն շատ ընդհանուր ձևով։ Ինչ վերաբերում է միջուկին, այստեղ բացահայտված է միջուկային պարբերականությունը, որը, միաժամանակ, հանդիսանում է բացասումի բացասման օրենքի արտահայտման կոնկրետ եղանակը։ Այդ օրենքը օրինաչափ կապ է հաստատում միջուկի զարգացման տարբեր աստիճանների միջև, ցույց է տալիս բացասումի բացասման պարբերական բնույթը։ Միջուկում կատարվող բացասման պրոցեսների առանձնահատկությունը կայանում է նրանում, որ բացասվողն ամբողջությամբ անցնում է բացասողի մեջ։ Այստեղ դեռ մնում է միջուկի չպարզաբանված կառուցվածքը, իսկ այդ հնարավորություն չի տալիս վեր հանելու ո՛չ բացասման կոնկրետ ձևերը, և ոչ էլ բացասումի բացասման օրենքի գործողության մեխանիզմը։

Մարդկային միտքը է՛լ ավելի խոր է թափանցել ատոմի էլեկտրոնային թաղանթի կառուցվածքի մեջ։ Այդ հնարավորություն է տվել բացահայտելու ատոմային պարբերականության ֆիզիկական իմաստը, որպես բացասումի բացասման օրենքի դրսևորման սպեցիֆիկ եղանակի, վեր հանել ինչպես բացասման առանձին պրոցեսների, այնպես էլ բացասումի բացասման օրենքի գործողության մեխանիզմը։ Պարբերական սիստեմը հանդիսանում է մատերիայի տարբեր ձևի զարգացման յուրատեսակ սպիրալ, որն իր մեջ է առնում ինչպես բացասման տարբեր ձևեր, տարբեր խորության բացասումներ, այնպես էլ բացասումի բացասման տարբեր ինտերվալներ, մի կողմ նետելով զարգացման վերաբերյալ եղած մտացածին սխեմաները և բացարձակ նույնության պատկերացումը։ Ինչպես միջուկում, այնպես էլ ատոմում կատարվող բացասումների բնորոշ առանձնահատկությունն այն է, որ բացասողի և բացասվողի միջև եղած կապը լրիվ է ու ակնհայտ, որովհետև բացասվողն ամբողջությամբ, առանց մնացորդի փոխանցվում է բացասողի մեջ։ Իսկ այդ բացասման դրսևորման նոր եղանակ է։

## Սոցիալիստական ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱՅՈՒՄ

Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը Հարավսլավիան ագրարային և տնտեսապես թույլ զարգացած երկիր էր: Արդյունաբերության տեսակարար կշիռը կազմում էր ընդամենը 26 տոկոս: Երկրի բնակչության մոտ 75 տոկոսն զբաղվում էր գյուղատնտեսությամբ: Այս բոլորը բացասաբար էր անդրադառնում երկրի զարգացման տեմպերի վրա:

1923—1939 թթ. ընկած ժամանակաշրջանում ազգային եկամուտը մեկ տարում ավելանում էր միջին հաշվով 2,48, իսկ արդյունաբերական արտադրանքի արտադրությունը՝ 3,8 տոկոսով: Նույն ժամանակաշրջանում կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը ազգային եկամտում հասնում էր միջին հաշվով 4 տոկոսի: Ավելին, 1930—1934 թթ. ժամանակաշրջանում ամորտիզացիոն մասհանումների գումարը գերազանցում էր կապիտալ ներդրումների ծավալը:

Երկրորդ համաշխարհային պատերազմից անմիջապես հետո Հարավսլավիային անհրաժեշտ էր վերացնել ո՛չ միայն հետամնացությունը ժողովրդական տնտեսության ասպարեզում, այլև վերականգնման մեծ աշխատանքներ կատարել:

Սկսած 1947 թվականից Հարավսլավիայի Ֆեդերատիվ Սոցիալիստական ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ ընդհանրապես և կապիտալ շինարարության մեջ մասնավորապես տարբերվում էին երկու ժամանակաշրջան:

Առաջինը (1947—1952 թթ.) բնորոշ էր կապիտալ ներդրումների մեծ ծավալով, որոնք ուղղվում էին արդյունաբերության վերականգնմանն ու հետագա զարգացմանը: Այդ ներդրումների հիմնական մասը իրականացվում էր կենտրոնացված կարգով, պետական բյուջեի հաշվին.

Երկրորդ ժամանակաշրջանն սկսվեց 1953 թվականից և շարունակվում է մինչև այժմ: Այն բնորոշ է բանվորական ինքնավարության կիրառմամբ, որն առաջացրեց կապիտալ ներդրումների ֆինանսավորման ապակենտրոնացում: Փոխվում է ժողովրդական տնտեսության ճյուղերի մասնակցության հարաբերակցությունը պետության ազգային եկամտի ստեղծման գործում: Նախնական տվյալներով 1962 թվականին արդյունաբերության մասնակցությունը ազգային եկամտի ստեղծմանը կազմում էր 40,2, իսկ գյուղատնտեսությանը՝ մոտ 27 տոկոս:

Տնտեսավարության նոր ձևը փոխում է նաև կապիտալ ներդրումների ֆինանսավորման սիստեմը: Բյուջեն, որը մինչև 1953 թվականը կապիտալ ներդրումների ֆինանսավորման համարյա միակ աղբյուրն էր, կորցնում է իր առաջնակարգ նշանակությունը և գրավում վերջին տեղերից մեկը:

Որպես ֆինանսավորման հիմնական աղբյուրներ, պետական բյուջեի փոխարեն, հանդես են գալիս տարբեր տեսակի ֆոնդերը, վարկերը և տնտեսական ձեռնարկությունների սեփական միջոցները:

Երկրորդ համաշխարհային պատերազմը հսկայական վնաս հասցրեց Հարավսլավիայի ժողովրդական տնտեսությանը. ավերվեցին բազմաթիվ ֆաբրիկաներ ու գործարաններ, հատկապես վնասվեցին տրանսպորտը և էներգետիկ օբյեկտները: Այդ ամենի վերականգնումից բացի, պետք է նկատի ունենալ, որ ՀՖՍՌ-ի ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական խնդիրներից մեկը սեփական ինդուստրիայի ստեղծումն է, որի շնորհիվ միայն հնարավոր կլիներ ապահովել երկրի ներքին պահանջները: Ելնելով այս խնդրից արդյունաբերությանը հատկացվող կապիտալ ներդրումների ծավալը սիստեմատիկորեն անում է:

Կապիտալ ներդրումների ծավալի մեծացման հետ ավելանում է նաև շինարարական աշխատանքների ծավալը, որը վերջին յոթ տարիների ընթացքում ավելացել է 3,5 անգամ:

ՀՖՍՌ-ի ուշադրության կենտրոնում է գտնվում երկրի էլեկտրիֆիկացումը: Երբ 1939 թվականին արտադրվել էր ընդամենը 1173 միլիոն կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, ապա 1963 թվականին այն հասավ 13.600 միլիոն կիլովատ ժամի, կամ անեց ավելի քան 11,5 անգամ: Ներկայումս երկրի էլեկտրիֆիկացման քաղաքականությունը շարունակվում է, կառուցվում են խոշոր հիդրո և ջերմաէլեկտրակայաններ:

Դանուբ-Տիսա-Դանուբ խոշորագույն հիդրոսիստեմի շինարարությունը սկսվել է 1957 թվականին: ԴՏԴ ջրանցքի հիմնական ցանցի երկարությունը պետք է հասնի 573 կմ, հողային աշխատանքների ծավալը կկազմի 128 միլիոն խորանարդ մետր (Սուեզի ջրանցք—75 միլիոն $м^3$, Պանամայի ջրանցք—220 միլիոն $м^3$): Բացի հողային աշխատանքից նախագծով նախատեսվում է կառուցել 17 ամբարտակ՝ ջրանցքի ջրի մակերեսը կարգավորելու համար, 13 նավարկելի ջրարգելակներ, 3 պոմպակայաններ, 75 երկաթ-բետոնե և պողպատյա՝ 30-ից մինչև 180 մ. թռիչք ունեցող կամուրջներ, 106 տարբեր բնույթի շենքեր և շատ այլ կառուցվածքներ: 1963 թվականի վերջին կատարված էր նախատեսված ամբողջ աշխատանքների ծավալի ավելի քան 80 տոկոսը: Շինարարության ընդհանուր նախահաշվային արժեքը կազմում է 52 միլիարդ 700 միլիոն դինար (1957 թ. գներով): ԴՏԴ հիդրոսիստեմի շինարարության մասին օրենքով նախատեսվում է աշխատանքներն ավարտել 1966 թվականին, այսինքն՝ 10 տարում: Անհրաժեշտ է նշել, որ այդ շինարարության վրա լայնորեն օգտագործվում է սովետական տեխնիկան. այսպես՝ սովետական են հողային աշխատանքների վրա օգտագործվող 61 էքսկավատորներից 26-ը, 35 սկրեպերներից՝ 33-ը, 68 բուլդոզերներից՝ 34-ը և այլն:

Հարավսլավիայում շինարարական-մոնտաժային աշխատանքները հիմնականում իրականացվում են պետական շինարարական ձեռնարկությունների միջոցով, որոնք ինքնուրույն են և իրենց տնտեսական ու ֆինանսական գործունեությունը կազմակերպում են տնտեսական հաշվարկի և ինքնավարության հիմունքներով:

Ինքնավարության մասին կանոնադրության համաձայն բ ա ն վ ո ր ա կ ա ն խ ո ր հ ու ր դ ը պետք է ապահովի այս սկզբունքի կենսագործումը: Այդ խորհուրդը լուծում է շինարարական ձեռնարկության տնտեսական ու ֆինանսական գործունեության հետ կապված բոլոր հիմնական խնդիրները, որոնք կենսագործվում են այդ ձեռնարկության վարչության միջոցով: Տվյալ ձեռնարկության բանվորական խորհուրդը իրավունք ունի սահմանելու՝ բանվորների անձնական եկամուտների չափը (տարիֆային դրույքներ), ծառայողների աշխատավարձի չափը, տարիֆները բեռներ տեղափոխելու համար, վերադիր ծախսերի մակարդակը և այլն: Այս ամենի հետևանքով տարբեր է լինում տարբեր շինարարական ձեռնարկությունների կողմից միևնույն օբյեկտի համար հաշվարկված նախահաշվային արժեքը:

Նշված սիստեմը թույլ է տալիս պատվիրատուներին կատարող շինարարական կազմակերպություններ ընդունել՝ ըստ իրենց առաջարկվող շինարարության արժեքի:

Պատվիրատուն կատարող կազմակերպություններ է ընտրում բաց կոնկուրսի միջոցով:

Շինարարությունը հանձնելու համար բաց կոնկուրսը անց է կացվում թերթում տպագրված հայտարարության հիման վրա: Կոնկուրսին կարող են մասնակցել երկրի բոլոր շինարարական կազմակերպությունները՝ անկախ պրոֆիլից և շինարարության տեղի տերիտորիալ հեռավորությունից: Կոնկուրսի վերաբերյալ հայտարարության մեջ նշվում են՝ օբյեկտի հանձնման պայմանները, նրա նախահաշվային արժեքը, տեխնիկական փաստաթղթերով ապահովելը, շինարարության ժամկետն ու տեղը, շինարարական կազմակերպությունների կողմից առաջարկությունների ներկայացման ժամկետը: Այս ամենից բացի պատվիրատուն կարող էր լրացուցիչ, կոնկուրսի մասնակիցներից պահանջել տվյալներ շինարարական մեքենաների և մեխանիզմների տեսակների ու քանակի մասին, տեղեկանք ֆինանսական դրության և աշխատանքային բեռնվածության մասին, շինարարական կազմակերպությունն ապահովել մասնագետներով:

Կոնկուրսի մասնակիցներն իրենց առաջարկությունները ներկայացնում են փակ ծրարներում, որոնք բացվում են հայտարարության մեջ նշված ժամկետում միայն: Այսպիսով, տարբեր շինարարական կազմակերպությունների՝ կոնկուրսին ներկայացրած առաջարկությունները մնում են գաղտնի, նույնիսկ կոնկուրսի հանձնաժողովի համար: Առաջարկությունների ծրարները բացելուց հետո կոնկուրսին մասնակցող ոչ մի շինարարական կազմակերպություն իրավունք չունի մտցնելու որևէ փոփոխություն կամ լրացումներ կատարելու: Նույնը պետք է ասել նաև պատվիրատուի վերաբերյալ. եթե պատվիրատուն որևէ բան փոխում է կոնկուրսի հայտարարությունում նշված պայմանների մեջ, ապա դա դիտվում է որպես հայտարարություն նոր կոնկուրսի մասին:

Շինարարական կազմակերպությունները կառուցվելիք օբյեկտի նախահաշվային արժեքը որոշում են կատարվելիք աշխատանքների տեսակների ցուցակի և դրանց ծավալների հիման վրա, որոնք ներկայացվում են այն կազմակերպությանը, որը մշակել է տվյալ շինարարության նախագծային փաստաթղթերը: Նշված տվյալները որպես հիմք ընդունելով և կիրառելով իրենց միավորների վարձաչափերը, շինարարական կազմակերպությունները որոշում են

շինարարության նախահաշվային արժեքը։ Շինարարական ու նախագծային կազմակերպությունների կողմից որոշված նախահաշվային արժեքների միջև լինում է մեծ տարբերություն։ Առանձին դեպքերում այս տարբերությունը կազմում է ավելի քան 20 տոկոս։ Նշված տարբերությունը բացատրվում է նրանով, որ Հարավսլավիայում կայուն չեն նախահաշվային գները և հաճախ փոփոխվում են ինչպես բանվորների տարիֆային դրույքները, այնպես էլ նյութերի համար սահմանված բացթողնման գները։

Բացի շինարարության ժամկետից ու նախահաշվային արժեքից շինարարական կազմակերպությունների ներկայացրած առաջարկությունների մեջ անպայման պետք է նշվի նաև, այսպես կոչված, գործակիցը (կամ գործոնը), որի օգնությամբ հաշվի են առնվում վերադիր ծախսերը (ռեժի)։

Կոնկուրսների ժամանակ շինարարական կազմակերպությունների առաջարկած գործակիցները խաղում են որոշ դեր, որովհետև գործակիցներով է բնորոշվում վերադիր ծախսերի մակարդակը և, ինչքան մեծ լինի առաջարկված գործակիցը, այնքան մեծ կլինի վերադիր ծախսերի գումարը և շինարարական կազմակերպությունն այնքան քիչ հավակնություն կունենա շահելու կոնկուրսում և ստանալու շինարարության պատվերը։ Դրա համար բոլոր շինարարական կազմակերպությունները կոնկուրսին ներկայացվող առաջարկություններում աշխատում են հնարավորին չափ կրճատել վերադիր ծախսերը և ներկայացնել ամենափոքր գործակիցը։

Խոսելով շինարարության հարցերի մասին՝ չի կարելի շրջանցել այնպիսի հարց, ինչպիսին է աշխատավարձի ընդհանուր գումարի որոշումը, կամ աշխատավարձի ֆոնդի պլանավորումը։

Հարավսլավիայի յուրաքանչյուր շինարարական ձեռնարկություն մինչև շինարարությունն սկսելը մշակում է աշխատանքների կատարման ամենամանրամասն նախագիծ։ Մի շարք հարցերի լուծման հետ միասին այս նախագծում որոշվում է նաև շինարարական-մոնտաժային աշխատանքների պլանային ինքնարժեքը՝ ծախսերի էլեմենտներով։ Ընդ որում այս պլանային ինքնարժեքը հիմք չի ծառայում պատվիրատուի և կապալառուի միջև հաշվարկներ կատարելու համար և օգտագործվում է միայն կազմակերպության ներսում։

Բանվորների աշխատավարձի ամբողջ գումարը որոշվում է միավորների վարձաչափերի հիման վրա և հանդիսանում է տվյալ օբյեկտի համար հաշվարկված բանվորների աշխատավարձի ֆոնդը, որի համեմատ հետագայում որոշվում է բանվորների աշխատավարձի գծով տնտեսում կամ գերածախս։ Երբ ծախսերի տվյալ էլեմենտի գծով տեղի է ունենում գերածախս, ապա այդ գերածախսը կարող է փակվել ինքնարժեքի մնացած ծախսերի էլեմենտների գծով առաջացած տնտեսումների հաշվին (շինարարական նյութերի կամ վերադիր ծախսերի հաշվին)։ Երբ աշխատավարձի գծով գերածախսն առաջացել էր աշխատանքները վատ կազմակերպելու հետևանքով կամ որևիցե այլ սուբյեկտիվ պատճառով և գերազանցում էր պլանով նախատեսված չափի 10 տոկոսը, ապա շինարարության ղեկավար անձնակազմի աշխատավարձն իջեցվում էր համապատասխան չափով։

Սակայն, տվյալ շինարարության վրա զբաղված բանվորների աշխատավարձի պլանային գումարը վերջնականապես որոշված գումար չէ, քանի որ այդ մեծությունը կարող է որոշվել միայն ամբողջ շինարարական ձեռնարկության համար տարեկան հաշվետվությունը կազմելուց հետո։ Բայց քանի որ աշխատավարձը տրվում է ամբողջ տարվա ընթացքում, այն էլ ամիսը մեկ անգամ, շինարարական ձեռնարկությունն ամսվա համար դուրս գրված աշխատավարձի գումարը հետագայում ճշտում է ընթացիկ հաշվետվության տվյալներով, իսկ վերջնական ճշտումը կատարում տարեկան հաշվետվության հիման վրա։ Դրա համար տարվա ընթացքում տրվող աշխատավարձը վերջնական չէր կարող համարվել և կրում էր ավանսի բնույթ։

«Տնտեսական կազմակերպությունների եկամուտներից ներդրումների մասին» օրենքի համաձայն, երբ ձեռնարկությունն իր մաքուր եկամուտների հաշվին չի կարողանում փակել աշխատողների անձնական եկամուտների երաշխավորված չափը, ապա կազմակերպության եկամուտներից կատարվող ներդրումների գումարը պակասեցվում է երաշխավորված աշխատավարձի վճարման համար չբավականացնող գումարի չափով։ Միութենական գործադիր վեչեն տնտեսական գործունեության չորս խմբի կազմակերպությունների համար սահմանել է անձնական եկամուտների երաշխավորված գումարը։

Սրանք են Հարավսլավիայում կապիտալ շինարարության հետ կապված մի քանի հիմնական հարցերը։

Բնորոշն այն է, որ այստեղ շինարարական կազմակերպությունների ապակենտրոնացման շնորհիվ կառուցողների նախաձեռնությանը, համեմատաբար, լայն ասպարեզ է տրվում։

Ռ. ԲՈՒՌՆԱԶՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ԳԼԽԱՎՈՐԸ ՆՈՐԻ ԳՈՐԾՆԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴՈՒՄՆ Է

*Մենք հաճախ ենք ասում՝* նոր, առաջավոր *և այս հասկացությունների իմաստը սահմանափակում արտադրության ոլորտով, անտեսելով կյանքի մյուս բնագավառները։*

*Սակայն նորը, առաջավորը ամենուրեք է, մարդու գործունեության բոլոր ասպարեզներում, մարդկային բարդ ու նուրբ փոխհարաբերությունների բազմերանգ հյուսվածքի մեջ, կենցաղում, սովորույթներում, վարքագծի և բնավորության մեջ։ Հենց այս տեսակետից էլ ցույց տանք, թե ինչպես են պրոպագանդում նորն ու առաջավորը* Արագած *և* Արարատ *միջշրջանային թերթերը։*

### ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*«Գիտությունը՝ գյուղատնտեսությանը» ընդհանուր խորագրի տակ թերթերը պարբերաբար հրապարակում են նոր լուրեր հայրենական գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների մասին։ Այդ լավ է, բայց հաղորդումները դառնում են ինքնանպատակ, երբ թերթերը չեն հետևում, թե գիտության ու տեխնիկայի նորություններից ո՞րն է ներդրվել արտադրության մեջ և ինչպե՞ս։*

Արարատ *թերթը, օրինակ, «Այգուտները կանաչին են տալիս» ինֆորմացիայում պատմում է, որ Արմաշի սովխոզի աշխատավորները հարյուրավոր հեկտար խոպան հողերի վրա այգիներ են հիմնել և ձեռնամուխ եղել 300 հեկտար աղուտների յուրացմանը։ Այդ նպատակով օգտագործում են «նորագույն տեխնիկան, արտադրության մեջ ներդնում են գիտության նվաճումները և առաջավոր փորձը»։ Իսկ թե գիտության որ նվաճումները ի՞նչ ձևով են ներդրվում աղակալող հողերը յուրացնելիս, չի ցույց տրվում։*

Արարատը *և* Արագածը *զգալի տեղ են հատկացնում աշխատատար պրոցեսների մեքենայացմանն ու ռացիոնալիզատորական առաջարկների պրոպագանդմանը։ Սակայն ցավալի է, որ հաճախ այդ արվում է վերացականորեն։ Այսպես,* Արագած *թերթից իմանում ենք, որ Համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական փորձակայանում մեքենայացված են ծխախոտի սածիլումը և այլ աշխատատար պրոցեսներ, ինչպես, օրինակ, ծխախոտով բեռնված շրջանակների տեղաշարժն ու տեղափոխումը էլեկտրական հոսանքի միջոցով։ Թերթը խորհուրդ է տալիս ընդօրինակել այդ «առաջավոր փորձը»։ Ինչ խոսք, անհամեմատ շատ ֆիզիկական աշխատանք կլանող այդ կուլտուրայի մշակության մեքենայացումը հրատապ խնդիր է, և ծխախոտագործները սիրով կցանկանային կիրառել այն։ Բայց նրանք իրավացիորեն կըհարցնեն՝ ի՞նչ է իրենից ներկայացնում այդ մեքենան, ինչպե՞ս են օգտագործում կամ ի՞նչ էլեկտրական սարքի միջոցով է կատարվում շրջանակների տեղափոխումը. պետք է բացատրել, ցույց տալ օրինակելին։*

Արարատ *թերթի մի հոդվածից իմանում ենք, որ Արարատ գյուղի կոլտնտեսության մեխանիզատոր Տ. Ռոստոմյանը այնպես է վերակառուցել ունիվերսալ կուլտիվատորը, որ բոստանային կուլտուրաների և պոմիդորի մշակության կարևոր պրոցեսները կատարում է մեքենան՝ արագ ու որակով։ Անհրաժեշտ էր ոչ թե անցողիկ նշել, այլ առանձին հոդվածով, համապատասխան իլյուստրացիաներով պարզ ու հստակ պատկերացում տալ նորարարության մասին, որպեսզի ցանկացողներն ի վիճակի լինեն կիրառել այն իրենց տնտեսություններում։*

*Նորի, առաջավորի պրոպագանդման լուրջ թերությունները դրսևորվում են նաև աշխատանքի կազմակերպման ռացիոնալ ձևերը մասսայականացնելիս։ Երբեմն հանրահայտ ագրոմիջոցառումների ճիշտ ու ժամանակին կիրառումը, արդյունքների մասին թվական տվյալների հաղորդումը թերթերը հրամցնում են որպես առաջավոր փորձ։ Մինչդեռ փորձն առաջավոր է, երբ այն նոր բան է ավելացնում մարդու կենսափորձին, իմացությանը, հեշտացնում նրա գործելակերպը, օգնում ավելի խոր յուրացնելու արտադրության առավել արդյունավետ եղանակներն ու մեթոդները։*

*«Եղեգնաձորի հարուստ հեկտարները» վերնագրի տակ* Արագածը *հաղորդում է, որ Եղվանի կոլտնտեսության դաշտավարները ճակնդեղի և եգիպտացորենի բարձր բերք են ստա-*

## ՍՊԻՐԱԼՆԵՐԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ

Վ. ՌԻԺԿՈՎ

ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ

*Միայն մոլեկուլային բիոլոգիայի հանդես գալով հույս ծագեց կյանքի մասին ստեղծելու այնպիսի գիտություն, որը նրա ամենաէական դրսևորումները կդիտեր մեկ միասնական տեսության մեջ, գիտություն, որի համար կյանքի յուրաքանչյուր դրսևորում կլիներ մեկ միասնական օրինաչափության սոսկ մասնակի մի դեպք։*

*Մոլեկուլային բիոլոգիայի հայտնագործությունների շնորհիվ պարզ դարձավ, թե ինչպես է ժառանգական ինֆորմացիան հաղորդվում սերնդից սերունդ. պարզվեց, որ դեզօքսիռիբոնուկլեինային թթվի (ԴՆԹ) թելիկի մեջ ասես թե «գրված են» ապագա օրգանիզմի սպիտակուցների հատկությունները։ Սակայն մենք պատասխան չստացանք մյուս, չափազանց կարևոր այն հարցին, թե ինչպես է ընթանում սաղմնային զարգացման պրոցեսը։ Չէ որ մեկ բջիջն (ձուն) է ելակետ ծառայում բջիջների ու հյուսվածքների ապշեցուցիչ բազմազանություն ունեցող ամբողջ բազմաբջիջ էակի զարգացման համար։ Երբ այդ բջիջը կիսվում է, դուստր բջիջներին են անցնում ԴՆԹ-ի բոլոր թելիկները, որոնք դուստր բջիջներում ունենում են հենց նույն, իրենց հատուկ, մայրական բջջի կարգավորումը։ Այդ հետևանք է այն բանի, որ ԴՆԹ-ի մեկ թելիկը առաջացնում է ճիշտ նույնպիսի կառուցվածք ունեցող մի ուրիշ թելիկ։ Եվ ահա հարց է ծագում. եթե բոլոր բջիջները կրում են մայրական բջջից ստացվող միևնույն ինֆորմացիան, ապա ինչպե՞ս է առաջանում բջիջների բազմազանությունը։*

*Այժմ արդեն մենք խիստ մոտեցել ենք այդ պրոցեսի ըմբռնմանը։ Երկար ժամանակ գերազանցապես ուսումնասիրվում էր այն, թե ԴՆԹ-ի թելիկներ պարունակող քրոմոսոմները ինչպե՞ս են ազդում օրգանիզմի զարգացման, և նրա ժառանգական հատկությունների վրա։ Իսկ այժմ հնարավոր է դարձել ուսումնասիրելու և այն, թե ինքը՝ զարգացող օրգանիզմը, ինչպե՞ս է ազդում քրոմոսոմների ԴՆԹ-ի թելիկների վրա։ Այդ դյուրատեսակ «հետադարձ կապ» է։ Բերենք շատ կոնկրետ մի օրինակ։*

*Թրթուրի կերպարանափոխվելը հարսնյակի և ապա՝ հասունացած միջատի կարգավորում են քիմիական նյութերը՝ հորմոնները։ Նրանց գործունեության մեխանիզմը երկար ժամանակ քիչ հասկանալի էր։ Այժմ մենք գիտենք, որ էկդիզոն կոչվող հատուկ հորմոնը,*



*որը վերահսկում է թրթուրի կերպարանափոխումը հարսնյակի, յուրահատուկ ձևով է ազդում միջատների քրոմոսոմների վրա։ Պարզվեց, որ էկդիզոնը հատուկ ակտիվություն է հարուցում քրոմոսոմի որոշակի մասերում։ Քանի դեռ թրթուրը զարգանում է, քրոմոսոմի մերթ մեկ, մերթ մյուս մասն է դառնում ակտիվ, իսկ մնացած մասերի գործունեությունը հերթականությամբ մարում է։ Այսպիսով, մի կողմից քրոմոսոմի գենետիկական ապարատն առաջացնում է գեղձերի զարգացում, որոնք հորմոններ են արտադրում, իսկ մյուս կողմից՝ այդ հորմոններն արդեն, իրենց հերթին ներգործում են քրոմոսոմների վրա։*

*Այսպես է իրականացվում հետադարձ կապը։ Այն, անկասկած, կարգավորում է սաղմնային զարգացման պրոցեսը։ Ավելացնենք միայն, որ վերջին ժամանակներս հայտնաբերվել են էկդիզոն հորմոնի գործունեության որոշ մանրամասնություններ ևս. էկդիզոնը ոչ թե անմիջականորեն է ազդում թքագեղձի քրոմոսոմների վրա, այլ փոխում է կորիզի թաղանթի թափանցելիությունը կալիումի և նատրիումի համար։ Եվ հենց կալիումի ու նատրիումի իոնների հարաբերակցությունն է որոշում, թե քրոմոսոմի որ մասերն են անցնում գրգռված վիճակի։*

*Այսպես, ուրեմն, բջիջների բազմազանությունը կախված է նրանից, որ յուրաքանչյուր տվյալ հյուսվածքում գործուն վիճակում են գտնվում ոչ թե քրոմոսոմների ողջ ապարատը, այլ նրա առանձին մասերը, այն մասերը, որոնց աշխատանքն անհրաժեշտ է տվյալ բջջային հյուսվածքի տարբերակման համար։*

Իսկ ինչպե՞ս է ծագում *քրոմոսոմի առանձին մասերի ակտիվացումը, ինչպե՞ս են նրանք անգործունյա վիճակի բերվում։ Այս հարցի վերջնական պատասխանն առայժմ չունենք, բայց որոշ տվյալներ կարելի է բերել։ Քրոմոսոմն իրենից ներկայացնում է մի շատ երկար, բարակ թելիկ, որը կարող է ոլորվել, կամ, ինչպես ասում են, սպիրալի ձև ստանալ։ Ոլորված քրոմոսոմներն անգործունյա են։ Մարմնի բջիջներում քրոմոսոմներն ունեն շատ բարակ թելիկների ձև, բայց նրանց առանձին մասերը կարող են սպիրալացվել։ Նշանակում է քրոմոսոմի առանձին մասերը, գեների առանձին խմբերը «խլացնել» կարելի է սպիրալացմամբ։ Բացի այդ, տվյալներ կան, որ որոշ պարզ ալկալիական սպիտակուցներ, կապի մեջ մտնելով քրոմոսոմի ԴՆԹ-ի հետ, նույնպես կարող են ակտիվազրկել նրա առանձին մասերը։ Հնարավոր է, որ այդ երկու պրոցեսները համընկնում են և քրոմոսոմի թելիկի առանձին մասեր սպիրալացված վիճակում են պահվում հենց հիմնական սպիտակուցների օգնությամբ։*

*Այդ մեխանիզմն առայժմ ուսումնասիրված է միայն քիչ դեպքերի համար, սակայն այն ցույց է տալիս, որ քրոմոսոմները շատ մեծ մասնակցություն են ունենում սաղմնային զարգացման պրոցեսին։ Ընդ որում նրանց աշխատանքն արտահայտվում է այնպիսի շարժումներով, ինչպիսին սպիրալի ձև ստանալու պրոցեսն է կամ, հակառակը, այն պրոցեսը, երբ քրոմոսոմի առանձին մասերն ուռչում են և նրանց մակերևույթի վրա խիստ բարակ թելիկներ են դուրս գալիս (այդ դեպքում կարելի է խոսել քրոմոսոմի առանձին մասերի գործունյա վիճակի մասին)։*

*Վերջին ժամանակներում կատարվեց ևս մի շատ համարձակ փորձ՝ ցույց տալու համար հասունացած օրգանիզմի գործունեության կապը քրոմոսոմային ապարատի հետ։ Կարելի էր կարծել, որ քրոմոսոմները միայն հաղորդում են ինֆորմացիան, որ նրանք յուրատեսակ ճարտարապետներ են, իսկ վերջինիս հետագա գործունեությանը*

արդեն չեն մասնակցում։ Սակայն այդպիսի պատկերացումը շատ քիչ հավանական է։ 1963 թվականին Մոսկվայում լույս տեսավ Ց. Ջ. Մեերսոնի «Բջջի ֆիզիոլոգիական ֆունկցիայի և գենետիկական ապարատի փոխկապակցության մասին» շատ հետաքրքրական գիրքը։ Այնտեղ փորձնական տվյալների հիման վրա ցույց է տրված, որ հասունացած օրգանիզմի այնպիսի պրոցեսներ, ինչպես, օրինակ, սրտի աշխատանքը, նույնպես կախված են քրոմոսոմների գործունեությունից։ Գենետիկական ապարատն այժմ մեզ չի ներկայանում միայն ինֆորմացիա փոխանցողի դերում։ Այն միաժամանակ մեր օրգանիզմի յուրաքանչյուր բջջի ամենօրյա գործիչն է։

Արդյոք գենետիկական ապարատը որևէ չափով մասնակցո՞ւմ է ուղեղի աշխատանքին։ Այդ հարցին փորձեց պատասխանել շվեդացի գիտնական Խ. Խիդենը, քննարկելով հիշողության պրոցեսը ուղեղի բջիջներում կատարվող նուկլեինային փոխանակման տեսանկյունից։ Պետք է ասել, որ ուղեղի բջիջները, ի տարբերություն օրգանիզմի բազմաթիվ այլ բջիջների, բազմանում են միայն սաղմնային զարգացման ժամանակ։ Հետևաբար նորածին երեխայի մոտ ներվային բջիջներն ավելի շատ են, քան տարեց մարդու մոտ. չէ որ կյանքի ընթացքում ուղեղի բջիջների մի մասը մահանում է։ Բայց, չնայած ուղեղի բջիջները չեն կիսվում, դրանց գրգռելիս նրանցում տեղի է ունենում սպիտակուցների առատ սինթեզ, որին նախորդում է նուկլեինային թթուների սինթեզը։ Եթե գրգռումը խիստ մեծ է, ինչպես, օրինակ, ջղաձգական թույներով թունավորվելուց հետո, ապա երբ սինթեզի պրոցեսները պակասում են, կարող է վրա հասնել հյուծման պահը։ Երբ ներվային բջջում տեղի է ունենում գրգռում, փոխվում է կալիումի և նատրիումի իոնների հարաբերակցությունը նրա մեջ։ Եվ Խիդենը ենթադրեց, թե այդ փոփոխությունները, որոնց ընթացքում առաջանում է էլեկտրական հոսանք, կարող են նպաստել նուկլեինային թթուների թելիկներում առանձին հիմքերի փոխանակմանը։ Այդ հանգեցնում է մուտացիաների, այսինքն՝ ժառանգական փոփոխությունների, որոնք էլ հենց մեր հիշողության պաշարն են։

Այս հոդվածի հեղինակը համակարծիք չէ Խիդենին. շատ քիչ է հավանական առանձին հիմքերի փոխանակումը այնպիսի, համեմատաբար մեղմ, ներգործությունների ազդեցության տակ, ինչպիսին կալիումի և նատրիումի իոնների հարաբերակցության փոփոխությունն է։ Այլ բան է, որ կալիումի և նատրիումի իոնների հարաբերակցության փոփոխությունը շատ ուժեղ ազդեցություն է ունենում ԴՆԹ-ի թելիկների սպիրալացման վրա. այդ արդեն մեզ հայտնի է։ Եվ, կարելի է կարծել, որ մտածողության պրոցեսը, ներվային գրգռման ամեն մի պրոցես, կապված է ո՛չ միայն ներվային բջջի ցիտոպլազմայում տեղի ունեցող փոփոխությունների հետ, այլև զուգակցվում է ԴՆԹ-ի թելիկների որոշակի կծկումներով, որոնց հետևանքով քրոմոսոմի որոշ մասեր ակտիվանում, իսկ որոշ մասերն էլ ակտիվազրկվում են։ Եթե քրոմոսոմի այդպիսի վիճակը այս կամ այն կերպ ամրապնդվում է երկար ժամանակով, ապա կստանանք մի յուրատեսակ կոդ՝ նախկին գրգռման հետքերով. դա քրոմոսոմի սպիրալացման և ուղիղ մասերի հերթափոխման փոփոխությունն է։ Այսպիսին է մեր հիշողության մեխանիզմը, այսպես ենք մենք հիշում։

Այս հիպոթեզը մենք առաջադրում ենք Խիդենի հիպոթեզի փոխարեն։ Երկու ենթադրությունների միջև ընդհանուրն այն է, որ ներվային բջիջների գործունեության պրոցեսը կապվում է



հենց գենետիկական ապարատի գործունեության պրոցեսի հետ. ինֆորմացիան սերնդից սերունդ հաղորդող այն նույն ապարատը ուղեղի բջիջներում ինֆորմացիա է կուտակում նաև անհատական կյանքի ընթացքում։

Կարելի է ասել, որ գլխուղեղի կեղևում մենք կրում ենք այնպիսի վիթխարի գրադարան, որտեղ գրի են առնըված մեր անցած կյանքի բոլոր ապրումները։ Ինչպիսի՞ն է այդ գրադարանի մեծությունը։ Փորձենք այսպիսի մոտավոր հաշվումներ անել։ Ինֆորմացիայի մեկ միավորը, ինչպես հայտնի է, կոչվում է «բիտ»։ Մարդու սեռական բջիջը, որի մեջ քրոմոսոմների միայն մեկ հավաքածու կա, իր մեջ պարունակում է մոտավորապես $6\times10^9$ բիտ։ Մարմնի բջիջը, որի քրոմոսոմների հավաքածուն կրկնակի է, պետք է պարունակի արդեն երկու անգամ ավելի բիտ։

Ըստ երևույթին, քրոմոսոմների շատ հավաքածուներ կան հսկայական ներվային բջիջների կորիզներում։ Գլխուղեղների կեղևում ներվային բջիջների քանակը, որոնցից կախված է մեր հոգեկան կյանքը, տարբեր հեղինակների կողմից հաշվվում է 10—18 միլիարդ։ Հիշենք, որ ԱՄՆ-ի կոնգրեսի գրադարանի բոլոր գրքերում, իսկ այն շատ մեծ գրադարան է, ամփոփված է մոտ $10^{13}$—$10^{14}$ բիտ։ Պարզ է, որ մեր ուղեղը իր մեջ կրում է բացառիկ մեծության մի գրադարան և ընդունակ է իր մեջ տեղավորելու ԱՄՆ-ի կոնգրեսի գրադարանի նման միլիոնավոր մեծ գրապահոցներ։

Մի երևույթ ևս, որին մշտապես հանդիպում ենք բարձրագույն կենդանիների օրգանիզմն ուսումնասիրելիս, կարող է բացատրվել հիշողությանը տրված մեր բացատրության նման։ Մենք նկատի ունենք ձեռքբերովի իմունիտետը։ Հայտնի է, որ որոշ ինֆեկցիոն հիվանդություններ կրելուց հետո օրգանիզմն արտադրում է հակամարմիններ, նյութեր, որոնք ընդունակ են այս կամ այն ձևով վնասելու կամ ոչնչացնելու տվյալ միկրոբը։ Առեղծվածային է այն, որ հիվանդությունը կրելուց հետո ձեռք բերված իմունիտետը շատ երկար ժամանակ, երբեմն ամբողջ կյանքում պահպանվում է։ Եթե խոսքը հակամարմինների մեկ անգամ կատարվող կուտակման մասին լիներ, ապա դրանք վաղ թե ուշ կծախսվեին ու կսպառվեին, բայց ինչպես է, որ հակամարմինները կուտակվում են ամբողջ կյանքի ընթացքում։ Ըստ երևույթին, միակ հնարավոր բացատրությունն այն է, որ օրգանիզմում կան բջիջներ, որոնք մեկ անգամ հանդիպելով օտարածին սպիտակուցի, արդեն ամբողջ կյանքում հակամարմին արտադրելու ունակություն են ձեռք բերում։ Եվ, իսկապես, այդպիսի բջիջներ գտնվել են. դրանք աճում են ողնաշարավորների, այդ թվում և մարդու մոտ, ոսկրուղեղում և ավշային հանգույցներում։ Դրանք կոչվում են ավշանման բջիջներ։

Բայց առեղծվածայինն այն է, թե ինչո՞ւ բջիջները ձեռք են բերում հենց տվյալ սպիտակուցի դեմ գործող հակամարմիններ արտադրելու ունակություն։

Մեր կարծիքով շատ հնարավոր է, որ ավշանման հյուսվածքի բջիջները հիշելու որոշակի ունակություն ունեն (եթե հիշողություն ասելով հասկանանք մի ինչ-որ ավելի լայն բան, քան մտածողությամբ ուղեկցվող ուղեղի աշխատանքի պրոցեսը)։ Այդ դեպքում կարելի է ընդունել, որ ավշանման հյուսվածքի որոշ բջիջների քրոմոսոմների առանձին մասերի գրգռումը կամ ակտիվազրկումը այնպիսի խոր հետք է թողնում, որ նրանք ընդունակություն են ձեռք բերում արտադրելու այս կամ այն հակամարմինը։

Մենք քննարկեցինք մի ամբողջ շարք հարցեր և տեսանք, որ կենդանի էակի

ֆունկցիայի հիմքում ընկած են շատ նման կառուցվածքներ և այդ կառուցվածքների շատ նման գործունեություն: Այս օրինակը պետք է ցույց տա, որ շատ հեռու չէ այն ժամանակը, երբ, հավանաբար, կհաջողվի բոլոր կենսական պրոցեսները հանգեցնել համեմատաբար ոչ մեծ թվով օրինաչափությունների: Այդ մեզ հնարավորություն կտա ստեղծելու տեսական բիոլոգիա, որը կարող է, օգտվելով ընդհանուր օրենքներից և ընդհանուր ֆորմուլաներից, լավագույն ձևով ըմբռնել կյանքի այնքան բազմազան դրսևորումների բոլոր հիմնական մասնակի դեպքերը:

«Неделя» № 11, 1965 г.

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ՕՐԱՑՈՒՅՑԻՑ

Լենինգրադցի ինժեներ Ա. Մ. Սորոկինը մի խումբ մասնագետների հետ ստեղծել է ունիկալ ռադիոապարատ–ռադիոհաբ: Հիվանդի կուլ տված ռադիոհաբը անցնում է ստամոքսի և աղիքների միջով՝ ռադիոինֆորմացիա հաղորդելով քննության ենթակա օրգանների և նրանցում տեղի ունեցող պրոցեսների մասին: Հատուկ անտենայի միջոցով ազդանշանները կլանում են ընդունող-վերլուծող սարքերը: Բժիշկը կարող է անսխալ որոշել միկրոռադիոկայանի տեղը: Կատարելով իր գործը, այն «կհեռանա օրգանիզմից»:

Այդ նոր, ռադիոհեռուստաչափիչ սիստեմը մեծ հնարավորություններ է ընձեռում սննդամարսողական ապարատի ֆունկցիաները հետազոտելու, ճշգրիտ ու օբյեկտիվ անալիզներ կատարելու, աղեստամոքսային հիվանդությունները ախտորոշելու, ինչպես և մարդու օրգանիզմի վրա դեղորայքի ու սննդի տարբեր տեսակների ներգործությունն ուսումնասիրելու շատ այլ նպատակների համար:

Բացի բժշկությունից ու ֆիզիոլոգիայից, նոր ռադիոհեռուստաչափիչ սիստեմը կկիրառվի գիտության ու տեխնիկայի տարբեր բնագավառներում:

### ՈՒՂՂՈՒՄ

*Մեր ամսագրի № 4-ի 94-րդ էջի վերևից 19-րդ տողից պետք է կարդալ «Կադրերի հարաճուն պահանջը բավարարելու և տնտեսագետների մաթեմատիկական պատրաստությունը բարձրացնելու նպատակով Լենինգրադի և Նովոսիբիրսկի համալսարանների օրինակով Երևանի պետական համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետում ստեղծվել է էկոնոմիկա-մաթեմատիկական ամբիոն», նույն համարի 111-րդ էջի II սյունի վերևից 17-րդ տողում՝ «...ապրել հեշտ...» ու այնուհետև ինչպես տեքստում:*

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Լ. ԽՈՒԴՈՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24*

ՎՖ 05222 Պատվեր 808 Տիրաժ 9350 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 3/V 1965 թ.:

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

ՄԱՍԼՈՎ Ն. Ն.— Լենինը որպես պարտիայի պատմաբանը: *Լ. Լենհրատ. 200 էջ:*

*Լենինի աշխատությունների և այլ գրականության հիման վրա հեղինակը ցույց է տալիս, որ իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների ժամանակաշրջանում Իլյիչը ո՛չ միայն մարքսիզմը շարունակել ու զարգացրել է, այլև քննության է ենթարկել ժամանակաշրջանի տնտեսական, սոցիալական, քաղաքական, կուլտուրական, գիտական և պատմական կարևորագույն խնդիրները՝ կապված պարտիայի կազմակերպման համար մղված պայքարի հետ, ցույց է տվել բանվոր դասակարգի և նրա պարտիայի ղեկավարությամբ Ռուսաստանում հեղափոխության հաղթանակի անխուսափելիությունը: Հեղինակը բազմաթիվ տվյալներով արտացոլել է, որ Վ. Ի. Լենինը պարտիայի ստեղծողն ու ղեկավարը լինելով, միաժամանակ նրա պատմության առաջին շարադրողն է:*

ԿՐԱՊՊ Հ.—Մարքսը և էնգելսը ուսուցումը արտադրողական աշխատանքի և պոլիտեխնիկ կրթության հետ զուգակցելու մասին *(Թարգմ. գերման.* Ն. Բ. Տեր-Հակոբյանի): *Մ., «Պրոսվեշչենիե» հրատ. 265 էջ:*

*Հեղինակը շարադրել է Մարքսի և էնգելսի հայացքները բազմակողմանիորեն զարգացած մարդու դաստիարակության մասին: Դրա համար անհրաժեշտ է, գտնում էին նրանք, ուսուցումը զուգակցել արտադրողական աշխատանքի և պոլիտեխնիկ կրթության հետ:*

ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆՑ Շ. Մ.—Վլադիմիր Իլյիչի գրադարանը: *Մ., Քաղհրատ, 1965, 111 էջ:*

*Հեղինակը (ՍՄԿՊ անդամ 1918 թ.) գրում է այն ժամանակաշրջանի պատմությունը, երբ ինքը եղել է Վ. Ի. Լենինի գրադարանի վարիչը (1920 թ. մարտի 14-ից—1924 թ. հունվար). բազմաթիվ օրինակներով ցույց է տալիս Վ. Ի. Լենինի խստապահանջությունը գրականության օգտագործման, պահպանման, հրատարակման և մասսայականացման գործում:*

ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ—ԱՌԱՋԻՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻ ՆԱԽՈՐԴԸ *(Փաստաթղթերի հավաքածու); Մ., «Միսլ» հրատ. 1965, 422 էջ:*

*Ժողովածուում զետեղված են Կոմունիստների Միության պատմությանը վերաբերող փաստաթղթերը (որոնց մեծ մասը հրապարակվում է առաջին անգամ), զանազան քաղվածքներ՝ Կ. Մարքսի և Ֆ. էնգելսի ու այլ հեղափոխական գործիչների աշխատություններից, ճառերից ու նամակներից: Ժողովածուն բաղկացած է վեց բաժիններից. դրանք են՝ Կոմունիստների Միության նախորդները. Կոմունիստական թղթակիցների կոմիտեները. Կոմունիստների Միության հիմնադրումը. Կոմունիստների Միությունը 1848—1849 թթ. հեղափոխության ժամանակաշրջանում. Կոմունիստների Միության վերակազմումը. Կոմունիստների Միության պառակտումը. Կոմունիստների Քյոլնի դատավարությունը:*

ՍԵՐԳԵԵՎ Ս. Դ.—Սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցությունը և փոխադարձ օգնությունը: *Մ., Արտառևտրհրատ. 1965: 416 էջ:*

*Հեղինակն սկզբում համառոտակի շարադրում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի տնտեսական, քաղաքական, գաղափարական համագործակցության ծագման, զարգացման պատմությունը, ապա վերլուծում է տնտեսական համագործակցության և փոխադարձ օգնության ձևերը և դրանց դերը սոցիալիզմի-կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման գործում: Առանձին գլուխներ նվիրված են սոցիալիստական երկրների ինդուստրացմանը և գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցմանը:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՎԻՏԱՄԻՆՆԵՐԸ ԲՈՒԺՈՒՄ ԵՆ ԳՐՔԵՐԸ

Պարզվել է, որ վիտամիններն անհրաժեշտ են ո՛չ միայն կենդանի օրգանիզմներին, այլև հին գրքերին ու ձեռագրերին: Իտալացի բիոքիմիկ Մարիո Պինցուտին փորձերով ապացուցել է, որ կարելի է վիտամինները հաջողությամբ կիրառել հին փաստաթղթերի վերականգնման ու պահպանման համար: Շպրիցի օգնությամբ նա վերականգնման ենթակա փաստաթղթերի մեջ սրսկել է վիտամինային բաղադրություններ:

## ԷԼԵԿՏՐԱԿԹԻՉ՝ ՄԵՂՈՒՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վաղուց հայտնի է, որ մեղվաթույնը կարևոր բուժիչ միջոց է: Սակայն մինչև այժմ դրա ստացումը խիստ թանկ էր նստում: Ամենաչնչին քանակության թույնի ստացումը մեղվի համար կյանք արժեր: Վերջերս ստեղծվել է մինիատյուր մեղվաէլեկտրակթիչ: Այն հաջողությամբ փորձարկվել է պրակտիկայում: Էլեկտրակթիչի օգնությամբ թույնի ստացումը բոլորովին անվնաս է ո՛չ միայն մեղվի կյանքի, այլև նրա գործունեության համար. մեղրի և մեղրամոմի քանակը չի պակասում:

## ԷԼԵԿՏՐԱԼԱՄՊԸ՝ «ՍԱՆԻՏԱՐ»

Այն ֆերմաներում, որտեղ վառվում են այդ լուսատուները, միկրոբները ոչնչանում են: Այդ ոչ սովորական լամպերի փափուկ, հավասարաչափ տարածվող լույսը ո՛չ միայն լուսավորում է շենքը, այլև առողջացնում է օդը: Էլեկտրականությունից ծնված ճառագայթների մեջ միկրոբները ոչնչանում են: «Սանիտարի» պաշտոնում հանդես է գալիս էրիտեմային լամպով լուսատուն: Անասնապահական ֆերմաների համար օգտակար այդ նորույթը ծնվել է Արդատովյան լուսատեխնիկական գործարանում:

## ՄԵՔԵՆԱՅԱՑՎԱԾ ՄՐԳԱՀԱՎԱՔ

Արևելյան Բեռլինի Հումբոլտի անվան համալսարանի լաբորատորիայում նախագծվել է վիբրատոր՝ մրգի հավաքման համար: Տրակտորի վրա դրված և ծառի բնին ամրացված մեխանիզմը մի վայրկյանում կատարում է 900 ցնցում: 5 վայրկյանում, առանց ծառը վնասելու, կարելի է նրա վրայից բոլոր մրգերը թափել ծառի տակ դրված ցանցի մեջ:

## ՆԵՐՄԱՇԿԱՅԻՆ ՄԱՆՐԱԴԻՏԱԿ

Ամերիկյան բժիշկ Ջարլզ Լոնգը նախագծել է ներմաշկային մանրադիտակ, որի օգնությամբ կարելի է հետազոտել կենդանի օրգանիզմի ներքին հյուսվածքները: Սարքի սիրտը երկու բարակ փնջեր են, որոնցից յուրաքանչյուրն ունի հազար ապակեթել: Այդ փնջիկները լցված են մանրադիտակին միացվող հատուկ ասեղի մեջ, որի միջոցով մտցվում են մաշկի տակ: Փնջիկներից մեկով լուսային ճառագայթը մաշկի տակ է մտցվում, իսկ մյուսով այդ հյուսվածքից արտացոլված լույսը ուղղվում է դեպի մանրադիտակը, որտեղ պատկերը մեծացվում է հարյուրավոր անգամ: Ապարատը հնարավորություն է տալիս ուսումնասիրելու արյունատար անոթները և անատոմիական այլ կառուցվածքներ, առանց մաշկը ճեղքելու կամ հյուսվածքից նմուշ վերցնելու:

## ԿԱԹ՝ ԱՌԱՆՑ ԿՈՎԻ

Անգլիական գիտնականների մի խումբ ստեղծել է առանց կովի կաթ արտադրող մի մեքենա: Մեքենան մշակում և վերամշակում է խոտը, գազարը, սիսեռը, մի խոսքով՝ այն ամենը ինչ ուտում է կովը: Բայց կովի կաթն ունի ընդամենը կերի մեջ գտնվող սպիտակուցների 18 տոկոսը, իսկ մեքենայինը՝ 80 տոկոս: «Անկով» կաթը զերծ է նաև մի քանի այնպիսի տարրերից, որոնք վնասակար են երեխաների և [illegible]րերի համար: